# ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ՎԱՐՈՒՑ

## ՅՈՎԱՍԱՓՈՒ ՈՐԴԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՆԴԿԱՑ

Գրեալ

ՅՈՀԱՆՆՈՒ ԿՐԱՒՆԱՒՈՐԻ

Աշխատասիրեց

ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ

Միաբան Ս. Էջմիածնի.

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ

1898

# ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՀՈԳԵՒՈՐ ՎԱՐՈՒՑ

## ՅՈՎԱՍԱՓՈՒ, ՈՐԴՒՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՆԴԿԱՑ



Գ ր ե ա լ

ՅՈՀԱՆՆՈՒ ԿՐԱՒՆԱՒՈՐԻ



*Ա շ խ ա տ ա ս ի ր ե ց*

*ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ*

*Միաբան Ս. Էջմիածնի.*



Հ Ր Ա Մ Ա Ն Ա Ւ

Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Ա Մ Ե Ն Ա Յ Ն Հ Ա Յ Ո Ց



ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ

1897

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԲԱՐՂԱՄՈՒ ԵՒ ՅՈՎԱՍԱՓՈՒ

## Ա.

Այս հռչակաւոր պատմութեան՝ կամ աւելի ուղիղ վէպի համառօտութիւնը հայերէն լեզուով գտնում ենք մի շարք ձեռագիր Յայսմաւուրքների վերջում գրած և յայտնի էր Եւրոպացի բանասէրներին Փրանսիացի հայագէտ Բրոսէի աշխատութիւններից։[1]

1892 թ. երբ ես ուսանում էի Վիեննայում, ծանօթացայ պատկառելի հայագէտ Ֆրիդրիխ Միւլլերի հետ. նա ինձ առաջարկեց ուսումնասիրել վէպի հայերէն բնագիրը, բաղդատել յունարէն

---

1. M. Brosset, Bulletin de l'Académie Impérial de Saint-Pétersbourg t. XXIV թ. 564 և Mélanges Asiatiques t. VIII թ. 538 St. Peters.

և ուրիշ բնագրերի հետ և սահմանել հայերէնի գիրքը գոյութիւն ունեցող խմբագրութիւնների շարքում։ Յարգելի պրոֆեսորը այն կարծիքի էր. թէ եթէ հիմնովին ուսումնասիրուի հայերէնը, կարելի կլինի մի քանի գրական—պատմական խնդիրների լուծումն օգնել, որոնք կապուած են վէպի ծագման հետ և դժուարութեամբ են լուծւում։ Բրոսէն և նրան հետևելով ուրիշները[1] հայերէնը յունարէնից թարգմանութիւն են համարել, դիտաւորեալ համառօտութիւններով, հետևապէս նոր բան նրանից չէ կարելի սովորել. մինչդեռ Պրոֆեսոր Միւլլերը ասում էր. դա ենթադրութիւն է և լաւ ու հիմնովին չէ պարզաբանուած։

Իմ առաջի գործը եղաւ վէպը արտագրել կայսերական մատենադարանի Ցայսմաւուրք ձեռագրից[2] և համեմատել Վիեննայի Մխիթարեան մատենադարա-

---

1. Տես Zotenberg, Notice sur le livre de Barlaam et Ioasaph, Paris, 1886 էջ 93—95.

2. Տես Յ. Տաշեան, Ցուց. Հայ. Ձեռ. կայս. Մատ. ի Վիեննա, 1891 էջ 24—26.

նի մի ձեռագրի հետ, որը ինձ ծանօթ համառօտ օրինակների մէջ անպայման ամենալաւն է և քիչ աղաւաղուած, թէև ունի մի քանի թերի մասեր։[1] Յունարէն ձեռագրեր շատ շատ են, բայց մինչև այսօր միայն մի հրատարակութիւն կայ, որը երկրորդ անգամ առանց որև է փոփոխութեան արտատպուել է.[2] Հայերէնը բաղդատելով դրա հետ, համոզուեցի որ Բրոսէի կարծիքը հիմնաւոր է, և որ իմ աշխատութիւնովը մի նոր բան չպիտի կարողանամ տալ, անուշադիր մի կողմ ձգեցի արդէն կատարած գործը։

Բարեբախտաբար անցեալ՝ 1896 թ. Մայր Աթոռիս ձեռագրերի լիակատար ցուցակը կազմելու վրայ աշխատելիս, անսպասելի կերպով գտայ ձեռագիր մի նոր օրինակ, որ ներկայացնում է վէպը անկրճատ և սկզբնական թարգմանու-

---

1. Տես Յ. Տաշեան, Ցուց. Հայ. Ձեռ. Մատ. Մխիթ. ի Վիեննա, 195 էջ 47—48։

2. Boissonade, Anecdota Graeca t. IV, Paris. 1832, արտատպուած Migne, Patralogia Graeca. t. xc IV.

թեամբ։ Բարղամ ու Յովասափի վէպով մասնագէտ պարապողներ և հետաքրքրուողներ շատ շատ են, դոցա համար նրա հայերէն բնագրի անկրճատ օրինակի գիւտը շատ ցանկալի է լինելու, իսկ Հայոց Թարգմանական գրականութեան համար նոր հարստութիւն է. և կարող է միևնոյն ժամանակ ապացոյց ծառայել, որ մեր նախնիքների մեծ ջանքով գրած և բաւական խնամքով անկորուստ պահպանուած ձեռագրերի պաշարում դեռ շատ գանձեր կան թաղնուած և երևան կգան, եթէ Հայոց հին գրականութեամբ պարապող անձանց թիւը աւելի շատ լինի։

Բ.

Նշանաւոր վէպի բովանդակութիւնը կազմում է Հնդկաց Աբեններ թագաւորի՝ Յովասափ որդու հեթանոսութիւնից քրիստոնէութեան դարձը Բարղամ ճգնաւորի ձեռքով։ Շատ պարզ նիւթ է. բայց ինչպիսի գեղեցիկ կերպով, ինչպիսի հարուստ երևակայութեամբ նկարագրուած է երկու կրօնական աշխարհա-

հայեցողութեան մրցումը, նոցա տարբերութիւնները, քրիստոնէութեան յաղթանակը: Եթէ ազգերի ընդհանուր գրականութեան մէջ կան անմահ և յարատեւող ճանաչուած գրական երկեր, որ թարգմանուելով բազմաթիւ քաղաքակիրթ ազգերի լեզուներով, սեփհականացուել իւրացուել են իւրաքանչիւրից, եթէ կան գրքեր և պատմութիւններ հետաքրքիր բովանդակութեամբ, բարոյախօսական յատկութիւններով, կրթիչ դաստիարակիչ բազմահարուստ օրինակներով, դոցա կարգին պիտի դասել Յովսափի վէպը: Սկսուած Փրկչի ութներորդ դարից, երբ մօտաւորապէս գրուած է համարւում, նա թարգմանուել է շատ ազգերի լեզուներով, կրճատուել, ընդարձակուել, չափական գրուածների, մանր պատմութիւնների, քարոզչութեան նիւթ մատակարարել. նա հետաքրքիր է մասնագէտների համար, ընթերցող բազմութեան ընթերցանութեան սիրելի գիրք էր: Իրաւ է, վէպը իւր նախնական, հընացած աշխարհահայեցողութեամբ, իւր դաւանաբանական երկար բաղադրութիւններով, այժմ միայն պատմական

նշանակութիւն ունի և այլ ևս չէ կարող ամբողջ ընթերցանութեան նիւթ լինել, եթէ դրա վրայ նաև աւելացնենք հայերէնի գրաբառ լեզուն, [1] բայց այսօր էլ դեռ թարմ և հետաքրքիր են նրա հրաշալի կերպով պատմած առակները։

Հնդկաստանում ապրում է մի զօրեղ թագաւոր, Աբեններ անունով. նա սաստիկ հալածում է քրիստոնեաներին, հովանաւորում պաշտպանում հեթանոսներին։ Նրա երկրային երջանկութիւնը խանգարում է այն, որ արու զաւակ չունի. աստուածները այդ բախտին էլ են արժանացնում։ Հաւաքւում են աստղաբաշխներ, իմաստուն մարդիկ և գուշակում. թէ մանուկը ապագայում իւր փառքով ու հռչակով կգերազանցի իւր նախնիքներին, միայն թէ ընդունելու է քրիստոնէից հաւատը։ Որդեսէր հայրը այդ վտանգի առաջն առնելու համար շինում է մի փառահեղ պալատ, ամենատեսակ բարիքներով լցնում և որդուն այնտեղ փակում։ Նա պիտի

---

[1] Գերմաներէն և ուրիշ լեզուներով նոր թարգմանութիւններ կան։

մեծանար հեռու աշխարհային հոգսերից, նեղութիւններից. չպիտի իմանար թէ ինչ է կեանքի փոփոխութիւնը՝ ցաւ, վիշտ, ծերութիւն, հիւանդութիւն, մահ. չպիտի իմանար թէ կայ աղքատութիւն, կարօտութիւն, հոգսեր: Թագաւորի կարծիքով ժառանգը ապրում է երջանիկ և հեռու է արտաքին ազդեցութիւնից. բայց նա մեծանալով տեղեկանում է իր շրջապատողների անզգոյշ ակնարկներից, պատմութիւններից, թէ դուրսը, պալատից հեռու մարդիկ ապրում են տարբեր վիճակով. նա ցանկանում է տեսնել ծանօթանալ այդ կեանքի հետ. հայրը զիջանում է որդու թախանձանքին և թոյլ տալիս ցանկացած ժամանակ ելևմուտ անել, նախապէս հրաման արձակելով, զարդարուել և զարդարել տներն ու փողոցները, հեռացնել հիւանդներին, որբերին, աղքատներին և ուրախանալ:

Ծառաների անզգուշութիւնից գահաժառանգը հէնց առաջի շրջագայութեան ժամանակ հանդիպում է մի կոյրի, խեղանդամի. տեսնում է մի ծեր մարդ և հարցեր առաջարկելով ծառա-

ներին, տեղեկանում է որ բոլոր մարդիկ հաւասարապէս բախտաւոր չեն, որ կայ երկրիս վրայ ցաւ, հիւանդութիւն, ծերութիւն, մահ: Պատանու կաշկանդուած միտքը զարթնում է. Նրա գըլխում մէկը միւսի ետևից սկսում են ծագել մարդուս գոյութեան հիմք կազմող հարցեր. ինչո՞ւ է ծնուել մարդ էակը, ի՞նչ է կեանքի նպատակը, ի՞նչից են առաջ գալիս հիւանդութիւնները, ծերութիւնը, մահը, ի՞նչ է լինում մարդուս վերջը: Նա անընդհատ սուզուած իւր մտքի մէջ, կորցրած հանգստութիւնն ու անդորրութիւնը, որոնում է պատասխաններ այդ բազմադիմի հարցերին և չէ գտնում:

Այդպիսով հանգամանքները նրան նախապատրաստում են և աստուածային նախախնամութիւնը օգնութեան է հասնում: Անսպասելի գալիս է Բարղամ անունով մի ճգնաւոր, որ իւր ընկերակիցների հետ ապաստանել էր Թագաւորի հալածիչներից. վաճառականի շորով մտնում է իշխանի պալատը, ծառաներին խաբելով՝ թէ մի թանգագին մարգարիտ ունի վաճառելու, և նրան

ընդունել տալիս քրիստոնէութիւնը: Բարղամը Յովասափի հետ սկիզբը առակներով է խօսում, որոնք մէկի գոհարներն են կազմում, և երբ բաւականչափ հասկացնում է իւր մարգարտի ինչ լինելը (քրիստոնէական կրօնը) և իւր ով լինելը, յայտնում է ամէն ինչ պարզորէն, պատմում քրիստոնէութեան պատմութիւնն ու էութիւնը և ջրով մկրտելով նրան, հեռանում: Վէպի ամենաընդարձակ մասն այս է: Վերջում պատմուած է թէ ինչպէս թագաւորը լսելով իւր որդու դարձը հեթանոսութիւնից, սաստիկ զայրանում է, զանազան կեղծ միջոցների է դիմում նրան ուրանալ տալու քրիստոնէութիւնը և ի վերջոյ ինքը և իւր բոլոր աշխարհը ընդունում են քրիստոնէութիւնը: Աբեններից Բարղամի և Յովասափի մահուան նկարագրութեամբ վերջանում է վէպը:

«Քրիստոնէական[1] կեանքի այս ջերմ ջատագովութեան էստետիքական արժա-

1. Տես. Karl Krumbacher. Geschichte der Byzantinischeu Litteratur, München 1891 Թ. էջ 466.

նիքը՝ որտեղ ամենահամոզեցուցիչ կեր-
պով նկարագրուած է մարդու մղած
պատերազմը աշխարհային զուարճու-
թեան դէմ, ամեն մի կասկածանքից
բարձր է։ Նկարագրութեան ամբողջ կազ-
մը աննման է. մարդկանց՝ տիրող հան-
գամանքների և մտածմունքների հակա-
սական և իրար դէմ մղող կողմերը գը-
նահատուած են և որոշուած ամենա-
փայլուն կերպով։ Ուստի այդ գիրքը Եւ-
րոպայի (նաև Ասիայի կաւելացնենք մենք)
հաւատացեալ ժողովուրդների վրայ պէտք
է որ խորը տպաւորութիւն թողնէր։
Բայց չնայած դրան գիրքը քրիստոնէա-
կան ծագում չունի . . . Հեղինակը վէպի
պատմական մասը չնչին բացառութեամբ
վերցրել է Բուդդայի կենսագրութիւնից,
իսկ իւր կողմից աւելացրել է միայն քը-
րիստոնէական-դաւանանական մասը։ »

Փրանսիացի Լաբուլէ[1] գիտնականն
էր որ առաջին անգամ անհերքելի փաս-
տերով ցոյց տուեց վէպի հնդկական ծա-
գումը և ապացուցեց՝ որ Հնդկաց թա-

---

1. Տես Laboulaye, Journal de Débats, 26 Jul, 1859 Թ.

գաւորի Յովասափ որդին և Բուդդայական կրօնի մեծ հիմնադիրը նոյն անձն է։ Համեմատութիւնը աւելի առաջ տանելով, Գերմանացի Փելիքս Լիբրեխտը [1] հաստատեց Լաբուլէի կարծիքը, գտնելով ոչ միայն պատմած դէպքերի, այլ նաև գործող անձանց անունների նոյնութիւն, թէև այդ անունները Հնդկաստանից Յունաստան, հնդկական լեզուից յունականը անցնելով, մեծ փոփոխութեան են ենթարկուել և կարելի է նոյնութիւնը գըտնել ոչ այնքան հեշտութեամբ։

Գ.

Ե՞րբ ո՞ւմ ձեռքով է Բուդդայի կեանքը քրիստոնէական վարքի նիւթ ծառայել, և ի՞նչ լեզուով ամենից սկիզբը։ Շատ յայտնի մասնագէտներ աշխատել են, և դեռ բոլորովին լուծուած չեն կարող համարուել այդ հարցերը։ Դժուարութիւնը առաջ է գալիս նրանից, որ մի քանի բնագրեր ունենք և այն էլ բաւական չափով տարբեր միմեանցից։ Ջանա-

1. Տես Felix Liebrecht, Die Quelle des Barlaam und Josaphat, Jahrbuch für romantische und englische Litteratur, II Թ. 314-334 (1860).

-ղան լեզուներով եղած բոլոր բնագրերը այժմ բաժանում են երկու խմբագրութիւնների՝ Արաբերէն-Վրացերէն և Յունարէն. առաջի խմբին պատկանում են՝ արաբերէն՝ մահմետական վերսիա, վրացերէն՝ քրիստոնէական վերսիա, եբրայեցերէն՝ մովսիսական վերսիա. երկրորդ խմբին պատկանում են՝ յունարէն, հայերէն, արաբերէն՝ քրիստոնէական վերսիա, որանից է թարգմանուած եթովպերէնը. յունարէնից է թարգմանուած լատիներէնը և որանից բոլոր գերմանական և սլաւոնական լեզուների թարգմանութիւնները։ Այս խմբակցութիւնները ընդունում են համարեա բոլոր մասնագէտները, տարբերւում են նոցա կարծիքները, երբ պէտք էր լինում ցոյց տալ խմբերի մէջի կապը, նոցա որը որից ժամանակով առաջ ու յետ լինելը եւն։

Վէպի մասին ամենալուրջ և ամենալաւ քննական աշխատութիւնները տուել են Փրանսիացի Զոտընբերգ և գերմանացի Կուն գիտականները։ Առաջինը իր աշխատութեան մէջ[1] բազմակողմանի ու-

1. Zotenberg, Notice sur le livre de Barlaam et Ioasaph, Paris 1886.

ուսմունքից Բուասոնադի հրատարակած յունարէն օրինակը և ապացուցեց, հիմնուելով պատմական յիշատակարանների և գրքում շօշափուած դաւանաբանական խնդիրների վրայ, գրքի ժամանակը—ոչ ուշ կամ շուտ քան Փրկչի եւթներորդ դարը. նա միանգամայն հերքեց այն թիւր և ընդհանրացած կարծիքը՝ թէ վէպի հեղինակը ութերորդ դարում ապրող և ծաղկող Յոհան Դամասկացին է եղել,[1] և ի վերջոյ ցոյց տուեց զանազան լեզուներով գոյութիւն ունեցող բնագրերի յարաբերութիւնը։ Զոտընբերգի գիրքը մեծ նշանակութիւն ունեցաւ։ Գրքի վերջին կցած է մի յաւելուած (էջ 96—166) յունարէն, արաբերէն և եթովպերէն բնագրերի հատուածներով. այդպիսի հատուածներ կան նաև աշխատասիրութեան մէջ, ի միջի այլոց հայերէնից մի փոքրիկ հատուած (էջ 93-94)։ Բաղդատութեան համար

1. Եթէ կարող էր Զոտընբերգի ասածների մէջ այս առթիւ որև է կասկած լինել, հայերէն բնագրով վերջնականապէս կփարատուի։

ես ուրիշ բնագիր չունէի, բաւականացել եմ Զոտընբերգի յունարէն հատուածներից, որոնք պարունակում են բոլոր առակները:

Կուհնի[1] աշխատութիւնը աւելի ուշ է լոյս տեսել· նա գործը քննում է մատենագիտական գրական և պատմական տեսակէտից· յիշատակելով և գնահատելով մինչև իր ժամանակը բոլոր լեզուներով հրատարակուած մանր և մեծ աշխատութիւնները և քննելով զանազան անձինքներից յայտնած կարծիքները, հաստատ եզրակացութեան հանելու համար, բաղդատել է արաբական մահմեդական վերսիան, վրացերէնը և յունարէնը· հայերէնի վրայ առանձին ուշադրութիւն չէ դարձրել, որովհետև Բրոսէի և Զոտընբերգի հետ համակարծիք լինելով, ընդունում է, որ կրճատեալ հայերէն օրինակը ուղղակի թարգմանութիւն է յունարէնից:

Այդ մանրակրկիտ բաղդատութիւն-

1· Տես Ernst Kuhn, Barlaam und Ioasaph, eine Bibliogrophisch litteratur—geschichtliche Studie, München 1893.

ների շնորհիւ պէտք է բաւականաչափ պարզուած համարել բնագիրների կապը։ Նախ քան Կունի եզրակացութիւնների արդիւնքը տալը, և որպէս զի հնարաւոր լինի նոր գտնուած հայերէնի մասին էլ որոշ եզրակացութեան գալ, ես թարգմանեցի Կունի բաղդատութեան գլխաւոր մասերը և կցարեմ նրանց նաև հայերէնը և կսահմանեմ սրա ունեցած նշանակութիւնը։

Գ.

1. «Հնդկաստանում ապրում է մի թագաւոր, հպարտ իւր ոյժով և յաղթութիւններով. նա սիրում է աշխարհային վայելչանքներ, պաշտպանում է կռապաշտութիւնը, ատում և հալածում է քրիստոնէութիւնը. անխտիր նեղւում են բոլոր քրիստոնեաները մանաւանդ միայնակեացները։ Թագաւորի անձնական բախտաւորութիւնը կատարեալ չէր, նա չունէր զաւակ, անժառանգ էր։ Մի գիշեր նրա կինը երազում տեսնում է՝ թէ ինչպէս մի սպիտակ փիղ

1. Հայ. էջ 2—3։

օդի միջից ցած է իջնում և մօտենալով կանգնում նրա մարմնի վրայ առանց որևէ վնաս հասցնելու: Նրաք մեկնող-ները դուշակում են թէ Թագաւորի կինը արու զաւակ է ծնելու:»

Արաբերէնում Թագաւորի անունը Ջանայզար է (Ganaisar), Վրացերէնում՝ Եաբեննէս, Յունարէնում ('Αβεννῆρ) Աբե-նէր, Հայերէնում՝ Աբեններէս, Աբեննէր: Թագաւորի բնակած քաղաքի անունը կայ Արաբ. Շուլաբատ կամ Սուլաբատ և Վրաց Բոլատ, Յուն. Հայ. չկայ այդ անունը: Հետաքրքրական է իմանալ որ Վարդան վարդապետի անուամբ յայտնի աշխարհագրութեան մէջ, ուտեղ յի-շուած են Աբեննէր Թագաւորը, Յովա-սափը և Բարղամ ճգնաւորը, կայ նաև մայրաքաղաքի անունը՝ Սինալթան [Սի-նայ փաթանկ]: [1]

Թագուհու երազը կայ միայն Արա-բերէնի մէջ: [2]

2. «Թագաւորը լսում է որ իւր պալատականներից մէկը փախել է և անա-

---

1. Այդ մասին տես ստորև:
2. Տես Kuhn յ. տ. էջ 15—16:

պատում միացել մենակեացների հետ, կանչում է իր մօտ. երկար խօսակցում են. պալատականը սկսում է Թագաւորին քարոզել քրիստոնէական վարդապետութիւնը, սա բարկացած հալածում է նրան իր թագաւորութիւնից:»

Այս մասը ամբողջովին պակասում է վրացերէնում և հայերէնում: [1]

3. «Թագաւորը ունենում է մի որդի, անունը դնում են Յովասափ. աստղաբաշխները գուշակում են, թէ նա իր փառքով բոլոր նախնիքներին կգերազանցի, իսկ մէկը յայտնում է թէ նա ընդունելու է քրիստոնէից հաւատը: Դրա համար Թագաւորը կառուցանում է մի փառաւոր պալատ, որի մէջ պիտի ապրէր իշխանը ապահով խնամակալութեան տակ, մահուան և քրիստոնէական կրօնի մասին մի խօսք չլսելով:» [2]

Վրաց. և Արաբ. անուան ձևը Իւդասափ (Vûdâsaf), Իօդասափ և Բուդասափ է, Յուն. Իօասափ (Ἰωασαφ) (փոխ. Ἰωδασαφ), Հայ. Յովասափ: [3]

---

1. Տես Kuhn էջ 16-17:
2. Տպ. էջ 4-7:
3. Kuhn էջ 17.

4. «Թագաւորի պալատականներից մէկը, որ ծածուկ քրիստոնեայ էր, իւր հակառակորդների մեքենայութիւններից ազատւում է մէկի խորհրդով, որին ինքը որսի ժամանակ վիրաւորուած գտնելով, կարեկցաբար վերցրել խնամել էր: Թագաւորը մի ուրիշ անգամ որսի գնալով հանդիպում է երկու միայնակեցի. խօսակցութեան մէջ է մտնում նոցա հետ և զայրանալով հրամայում է տեղն ու տեղը այրել, և այդտեղից սկսած սաստիկ հալածում է միայնակեցներին:»

Վրաց. դէպքերը տարբեր կարգով յետ ու առաջ են պատմուած. խորհըրդականի անունը Բալավարի է, որ վէպի գլխաւոր գործողի՝ Բարղամի հետ նոյնացրած է: Այդ երկու անձի նոյնացումը միայն վրացերէնումն է:

Հայ. մէջ այդ մասը ամբողջովին պակասում է: [1]

5. «Թագաւորազնը ծնանում է, զգում է իւր փակուած կեանքի ծանրութիւնը. դաստիարակը զիջանելով, յայտնում է նրա փակուելու ամբողջ գաղտ-

1. Kuhn էջ 17:

նիքը։ Իշխանը հօրից թոյլտուութիւն է ստանում պալատից ներս ու դուրս անել և ստանում է։ Զբօսանքի ժամանակ միմեանց հետևից հանդիպում է մի կոյր և մի բորոտի, («մինն ուրուկ՝ այսինքն զոտի եւ կոյր), մի ծերի, մի մեռելի և իւր հետևորդներից տեղեկանում է մարդկանց վիճակը։ Նա իւր դաստիարակից հարցնում է, թէ ով կարող է նրան մխիթարել. և լսում է միայնակեացների մասին որոնք հալածուել են երկրից։»[1]

Դաստիարակի անունը Յուն. և Հայ. դեռ չէ յիշում, Վրաց. յիշում է հէնց սկզբից և է. Զանղանի, Զաղանի։

Հայ. չէ ասուած թէ նա մեռել տեսաւ, այլ թէ ծեր տեսնելով, լսեց որ մարդիկ ծերանալով մեռնում են. Ճըգնաւորների հալածանքի մասին դաստիարակը իշխանին յայտնում է պալատից դուրս գալուց առաջ։[2]

6. «Բարղամ ճգնաւորը վաճառականի շորերով գալիս է արքունիք և իշխանին մի թանգագին մարգարիտ ցոյց

---

1. Հայ. էջ 7-13։

2. Kuhn էջ 17-18. Հայ. էջ 9.

տալու պատրուակաւ մնում է պալատ․ Յովասափի մօտ։ Սա մեծ հրճուանքով ընդունում է և նրանից լսում․[1]

ա․ Երկու ճգնաւորների և Թագաւորի, բ․ մահուան քարոզի,[2] գ․ չորս տուփի[3] և դ․ Աւետարանից վերցրած սերմնացանի[4] առակները։»

Յուն․ և Հայ․ սերմնացանի առակը սկիզբն է գրուած։ Արաբ․ և Վրաց․ ճգնաւորի անունը՝ Բալաւհար, Բիլաւհար կամ Բիլաւհարի է, Հայ․ և Յուն․ Բարղամ, (Βαρλαάμ, Բարղաամ, Բարաղամ Համառ․ օր։

Հայ․ չկայ երկու ճգնաւորի և Թագաւորի առակը։[5]

Է․ «Արաբ․ և Վրաց․ հետևում են․ ա․ մարդը Ջրհորում, բ․ երեք սիրելիների[6] և գ․ տարուայ առակները, որոնք բոլորն էլ ցոյց են տալիս աշխարհի ոչըն-

---

1․ Հայ․ էջ 14-16։
2․ Հայ․ էջ 19։
3․ Հայ․ էջ 20-21։
4․ Հայ․ էջ 17։
5․ Kuhn էջ 18-20։
6․ Հայ․ էջ 52։

չութիւնը․ իսկ յետոյ գալիս է դոցա բացատրութիւնը։ »

Յունարէնը տարբեր է, նման Հայ․ սոցա մէջ համար 6 յիշած առակներից յետոյ, դրուած է քրիստոնէութեան պատմութիւնը և նրա վարդապետութիւնը ըստ Հին և Նոր Կտակարանների,[1] մկրտութեան խորհրդի[2] և հանդերձեալ կեանքի բացատրութիւններով․[3] ապա գալիս է որսորդի և ծնծղուկի առակը,[4] կռապաշտութեան դէմ Բարլաամի ասածները[5] և ի վերջոյ միեղջերուի և երեք սիրելիների առակները։[6]

Հայ․ չկայ տարուայ արքայի առակը։[7]

8․ «Իշխանը հարցնում է իմ հայրըս այդ բոլորից ոչի՞նչ չէ լսել։[8] Բար-

---

1․ Հայ․ էջ 22-32։

2․ Հայ․ էջ 33։

5․ Հայ էջ 34։

4․ Հայ․ էջ 43։

5․ Հայ․ էջ 45։

6․ Հայ․ 50-52։

7․ Kuhn էջ 20-22։

8․ Այսինքն քրիստոնէութեան մասին այս հարցը կայ Վրաց․ և Արաբ․ տես էջ 58։

ղամը պատասխանում է, նրա ժամը չէ հասել, բայց կգայ։ Դրան ապացոյց է հեթանոս արքայի և հաւատացեալ վիզիրի պատմութիւնը. որին կցած է լողացողի և իւր ընկերների պատմութիւնը։ Յովասափը խոստանում է իւր կեանքը անցնել Բարղամի հետ. սա պատմում է հարուստ երիտասարդի առակը որ ամուսնացաւ աղքատ աղջկայ վրայ։[1] Այդ ժամանակ Յովասափը հարցնում է Բարղամի տարիքը և զարմանքով իմանում որ Բարղամը 12 տարեկան է,[2] որովհետև նա իւր հասակի 48 տարին, որ ապրել է աշխարհային կեանքով, չէ հաշւում։ Այս առթիւ ճգնաւորը բացատրութիւններ է տալիս ճշմարիտ կեանքի և մահուան մասին։ Ապա հետևում է որսորդի և ճնճղուկի առակը, կռապաշտների կշտամբութիւնը և վերջանում Բարղամի ուսուցական ու ճարտասանական քարոզով։»

Յուն. և Հայ. շատ են տարբերւում։ Հայ. կայ միայն հարուստ երիտասարդի

1. Հայ. էջ 59։
2. Հայ. էջ 62։

առակը, ապա Յովսափը հարցնում տարիքի մասին և լսում. «Ամաց եմ ես իբրեւ քառասուն եւ հինգ ... եթէ զաւուրս կենաց իմոց ընդ թուով արկանես, առաւել ունիմ քան զութսուն ամ:» Յովսափը հարցնում է նոցա կերակուրների ու հագուստի մասին [1] և կամենում է թողնել պալատը և հետևել Բարղամին. սա ընդդիմանում է և պատմում այծեամի [2] առակը: Հայերէնի մէջ կայ այծեամի փախած լեռան անունը- «եւ գնաց ի լեառն Նուէր» համառօտ օրին. «Նութիւն»:

Յուն. կան վիշապի, լողացողի և աղջկայ առակները, որոնց հետևում է նախընթացում յիշուած քարոզի շարունակութիւնը՝ ճանաչել Աստուած իւր գործերից, և ի վերջոյ Բարղամի տարիքի մասին հարցը: [5]

9. «Նա, ում յանձնուած էր Յովսափի վրայ հոգ տանել,—յուն. Զարդան կոչուած—, [4] յանդիմանում է Յո-

1. Հայ. էջ. 63:
2. Հայ. էջ 66:
3. Kuhn էջ 22-23:
4. Հայ. էջ 74:

վաստփլին Բարզամի հետ յարաբերութիւն ունենալուն համար, և վարագոյրի հետևում թագնուած լսում է վերջինիս քարոզը: Ապա Յովասափը խնդրում է նրան, որ իւր հօրը ոչինչ չպատմէ և ի զուր տեղը նրան տրտմութիւն չպատճառէ:[1]

Յուն. և Հայ. այդ ամբողջը յետոյ է գրուած:[2]

10. «Բարզամը յայտնում է թէ պիտի հեռանայ,[3] Յովասափը ցանկանում է հետևել նրան և լսում է այծեամի առակը. հարցեր է տալիս ճգնաւորների կերակուրների և զգեստների մասին: Բարզամը բացատրում է թէ ինչի համար է իւր զգեստը փոխել (վաճառականի շոր հագել). որը բարձրացնելով, ցոյց է տալիս մարմնի վրայ հագած քուրձը.[4] Նա հրաժեշտ է վերցնում Յովասափից, բայց առաջ տալիս է նրան իւր ճգնաւորական շորերը:»

---

1. Հայ. էջ 79-80:
2. Տես Kuhn էջ 24:
3. Հայ. 76:
4. Հայ. 64-65:

Յունարէնի դասաւորութիւնը տարբեր է, նման հայերէնին (տես վերև): Այստեղ այծեամի առակից յետոյ գալիս է Բարզամի քարոզը, Յովասափի մկրտութիւնը, Զարդանի միջամտութիւնը (տես համար 9) և Բարզամի հրաժեշտը:[1]

11. «Զարդանը մտածելով Յովասափի քրիստոնէութեան մասին, հիւանդութեան պատրուակաւ առանձնանում է իր բնակարանում: Լուրը հասնում է Թագաւորին, որից ուղարկուած բժիշկը իմանում է որ հիւանդութեան պատճառը տխրութիւն է:

Զարդանը լսելով թէ Թագաւորը մտադիր է այցելել իրան, շտապում է ինքը գնալ նրա մօտ և յայտնել ամէն ինչ: Թագաւորը կանչում է իր առաջին խորհրդական Առարշիսին. սա խորհուրդ է տալիս կամ բռնել Բարզամին և տանջանքներով ստիպել և խոստովանեցնել թէ իր քարոզած հաւատը կեղծ է, կամ եթէ Բարզամը ձեռք չընկնի, բերել հեթանոս Նաքովր մենակեցին որ

1. Kuhn էջ 24-25:

առաջինին շատ նման է. սա իբրև պաշտպան քրիստոնէութեան ձևական վիճաբանութեան մէջ կմտնի հեթանոս վարդապետների հետ և իրան յաղթած կըյայտարարի։ Բարղամին որոնելիս գտնում են մի խումբ քրիստոնեայ ճգնաւորներ, որոնց առաջնորդը մահ էր ածում սրբոց ոսկորներ կաշեայ պարկի մէջ. դոցա բերում են թագաւորի մօտ և 17 հոգու նահատակում են։» [1]

Արաբ. մէջ մեծ տարբերութիւն կայ. Վրաց. Յուն. և Հայ. նոյն են։ Վրաց խորհրդատուի անունը Ռաքիս, Ռաքի և Առաքի է, Յուն. Ἀραχής Հայ. Առարշախս եւ Առաշխս Համ. օր. միայնակեցի անունը Ναχώρ Հայ. Նաքովր, Վրաց. Նաքորի։ [2]

12. «Թագաւորը վիճաբանութիւնից առաջ, երկու անգամ տեսնում է որդու հետ. առաջին անգամ հակառակ իւր սովորութեան չէ գրկում նրան, երկրորդ անգամ տաք տաք վիճում են։ Հայրը նախատում է որդուն, որ թողել է իւր հայրերի հաւատը, նա պաշտպանում քրիստոնէական կրօնը. Առարշախսի

1. Հայ. 80-86։
2. Տես Kuhn էջ 25-26։

խորհրդով հայրը մեղմ միջոցի է դիմում դարձեալ անյաջող։ »[1]

Վրաց. նման է Յուն. և Հայ. իսկ Արաբ. նմանութիւնը պահուած է ընդհանուր գծերով։[2]

13. «Տեղի է ունենում սահմանուած վիճաբանութիւնը. սկիզբը խօսում է Թագաւորը, ապա Յովասափը։ Սա սպառնում է Կեղծ-Բարղամին սպանել, լեզուն ու սիրտը հանել և շների առաջը ձգել, եթէ վիճաբանութեան մէջ յաղթուի և ապացուցանի թէ իւր քարոզածը սուտ կրօն է եղել։ Երկիւղից Նաքովրը սկսում է զօրեղ կերպով պաշտպանել և յաղթելով հակառակորդներին, ինքն էլ իսկապէս քրիստոնեայ է դառնում և գնում է անապատ։ »[3]

Արաբերէնի նմանութիւնը դարձեալ ընդհանուր գծերով է։[4]

13. «Թեւդաս կախարդը Թագաւորին խորհուրդ է տալիս իշխանին շրջապատել գեղեցիկ կանանցով, ամենից

1. Հայ. 88-90։
2. Տես Kuhn էջ 26-28։
3. Հայ. էջ 91-100։
4. Kuhn էջ 28։

Լ

գեղեցիկն էր մի թագաւորի գերուած աղջիկ. Յովասափը այս փորձանքին էլ է դիմանում։ Նա գիշերը երազ է տեսնում, թէ ինչպէս երկու սարսափելի էակներ նրան տանում են երջանիկների և դատապարտուածների կացարանները։ Միւս օրը թագաւորը գնում է որդուն տեսնելու։ Սա գանգատւում է իր դէմ գործ դրած խարդաւանքների մասին և պահանջում ազատ թողնել պաշտել իր ընտրած կրօնը։ Հայրը խորը խոցուած վերադառնում է։ Այն ժամանակ Թեւդասը ինքն է գնում նրան համոզելու, բայց դրա փոխարէն ինքն է նրան ենթարկւում և ընդունում քրիստոնէութիւնը։[1]

Վրաց. կախարդը կոչւում է Թեղամ, Թեղմա և Թեղամիս. Յուն. Θεῦδας Հայ. և Թեւղաս Թւղաս Համ. օր. Վրաց. բովանդակութեամբ նման է Յուն. պակասում է այն մեծ քարոզի մի մասը, որ արտասանում է Յովասափը Թեւդասին դարձնելու համար։ Նման է նաև Արաբ. որի մէջ կախարդի անունը Ալ-Տահղամ է։

Շատ բան պակասում է Հայերէ-

---

1. Հայ. էջ 100-108։

նում, որի մէջ կայ միայն Թեւդասի խորհուրդը՝ Յովասափին շրջապատել գեղեցիկ աղջիկներով, որը աղօթելով ազատւում է փորձանքից և հետևեալ օրը Թեւդասին քրիստոնէացնում։[1]

15. «Թագաւորը ստիպուած հեռացնում է Յովասափին և երկրի մի մասի վրայ թագաւոր կարգում։ Այդտեղ ծաղկում է քրիստոնէութիւնը. ինքը Աբենները ընդունում է այդ կրօնը և մեռնելով երջանիկների կարգին դասւում։ Յովասափը երկրի կառավարութիւնը յանձնում է Բարաքիասին, անապատում որոնելով գտնում զառամեալութեան հասած Բարղամին։ Երկուսի մահուան նկարագրութեամբ վերջանում է վէպը։»[2]

Այստեղ էլ տարբերութիւնը միայն Արաբ. մէջ է։[3]

Ահա Կունի բաղդատութեան գլխաւոր կէտերը, որի վրայ հիմնուելով վէպի ծագման մասին այսպիսի ճիւղագրութիւն է կազմում։

1. Kuhn. էջ 28—31։
2. Հայ. 108—վերջը։
3. Kuhn էջ 32։

X (Անյայտ.)

A (Արաբերէն) Y (Անյայտ)

Ge. (Վրացերէն) Gr. (Յունարէն) [1]

Բոլորի նախատիպը X-անյայտ է, որը յայտնի էլ չէ թէ ինչ լեզուով էր գրուած. դրանից ծագել են Արաբերէն, և Y մի ուրիշ անյայտ, որի լեզուն դարձեալ չգիտենք: Y-ից ծագում են Վրացերէնը և Յունարէնը միմեանցից անկախ: Անյայտների լեզուների մասին Կունը ենթադրում է, թէ X-ինը Պեհլուի էր, իսկ Y-ը կամ Ասորերէն և կամ քրիստոնէութիւնը ընդունած Պաղեստինեան գաւառաբառներից մէկը: Առաջին ենթադրութեան հիմքն այս է. պատմութիւնից յայտնի է որ արևելեան Իրանը շարունակ շփւում էր հիւսիսային Հնդկաստանի հետ և հէնց այդ սահմաններում ամենահին ժամանակներում տարածւում է քրիստոնէութիւնը. այդ երկրի մէջ իրար մօտ գտւանում էին զրադաշտական, բուդդայական և քրիստոնէական կրօնները: Դոցա ներ-

---

1. Kuhn էջ 34:

ներկայացուցիչները շարունակ մրցման մէջ էին և ամէն մէկը ձգտում էր գերազանցել միւսին, այդ նպատակի համար սովորում էին միմեանց կրօնները և սովորածը յօգուտ իրենց ծառայեցնում: Կրօններից մէկի մի ներկայացուցիչ նեւթ է առել Բուդդայի կեանքը, փոխել և պատմել իր հետևողներին: Զրադաշտական կրօնի ներկայացուցիչը չէր կարող առանձին հաճոյք զգալ Բուդդայի ճգնական կեանքը վերստին պատմելու,—զրադաշտականի համար անհասկանալի և ատելի էր ճգնակեցութիւնը, չամուսնանալը—, մինչդեռ քրիստոնեան Բուդդայի ճգնական վարքի մէջ կգտնէր շատ խրատական և իր հայեացքներին համապատասխան օրինակներ, ուրեմն վէպի գրողը քրիստոնեայ էր և գրել է պեհլուի լեզուով. այն երկրի լեզուով, որտեղ գրուել է վէպը

Առաջի օրինակը գրած էր շատ պարզ և մօտ էր Բուդդայի իսկական վարքին,—Վրացերէնը հաստատում է այդ կարծիքը,—յետոյ այդ հին օրինակից թեթև փոփոխութիւններով գրուել է Արաբական-մահմետական վերսիան, իսկ Յունարէնը հիմնովին փոփոխած և նո-

խառնուած ծրագրով կազմած խմբագրութիւն է, որի հեղինակը վէպի պատմութեանը կցել է բաւական դաւանաբանական յաւելուածներ: Ահա Կունի եզրակացութիւնը:

## Ե.

Այժմ անցնենք հայերէն օրինակին: Մեր նոր գտած ընդարձակը և Ցայսմաւուրքից շատուց յայտնի համառօտ օրինակը ներկայացնում են միևնոյն բնագիրը. սկզբնական է առաջինը, իսկ երկրորդը ծագել է ուղղակի առաջինից. զանազանութիւնը կայանում է վերջինի համառօտութեան մէջ. կրճատուած են ամենից շատ դաւանաբանական մասերը, մինչդեռ բուն պատմական մասից և մանաւանդ առակներից քիչ բան է բաց թողնուած:

Մինչև ընդարձակի գտնելը, համառօտը անկախ ինքնուրոյն թարգմանութիւն էր համարւում և այդ կարծիքը ստեղծուել էր ձեռագրերի վերջի այս յիշատակարանից:

«Զօր և ես Ասատ ծառայս Աս-

«տուծոյ բազում աշխատութեամբ և «ջանիւ փոքր ի շատէ ծայրաքաղ արա- «րեալ թարգմանեցի զայս ի հայ լեզու «ընդ ձեռամբ իշխանի միոյ [Բագրատունւոյ [1]] պատուաւորի։

Համաձայն սրան թարգմանը Ասատ անունով մէկն է որը թարգմանել է «ծայրաքաղ արարեալ,» լսելով մի պատուաւոր իշխանի հրամանի։ Իսկապէս դժուար է գրականապէս որոշել թէ արդեօք Ասատը միայն իւր ծայրաքաղ օրինակն է թարգմանութիւն անուանում․ որովհետև կարելի է ենթադրել նաև որ ընդարձակ թարգմանութիւնն էլ իրանն էր, իսկ յետոյ յիշեալ իշխանի ցանկութեամբ կրճատել է, որպէս զի հանելով գրքի երկար ու բարակ դաւանաբանական բացատրութիւնները, որ սովորական ընթերցողների համար անհասկանալի, մինչև անգամ տաղտկալի էին, դիւրահասկանալի և դիւրամատչելի գիրք ստա-ար։ Աւելորդ չենք համարում յիշել որ

1․ Տես Ձեռագիր Ս․ Էջմիածնի թիւ 1755․ միակ այս օրինակն ունի «Բագրատունւոյ»․ Համեմատիր Н. Марръ, Изъ лѣтней поѣздки въ Арменію էՁ 3․

Սոկրատի Եկեղեցական պատմութեան թարգմանն էլ իր գործը, «Ծայրաքաղ» է կոչում, որովհետև շատ թղթեր և ուրիշ մասեր բաց է թողել. «Թարգմանեալ Փիլոն Տիրակացի առաջին ձեռնարկութեամբ գլխոյ գոյս մասնաւոր ծայրաքաղ ի Սոկրատայ Եկեղեցական Պատմ.»[1] Այս թարգմանութեան մասին ուրիշ հիմք էլ չունինք, բայց այդ մասին յետոյ. այժմ ծանօթանանք ընդարձակ ձեռագրի հետ։

Այդ ձեռագիրը պատկանում է Մայր Աթոռիս մատենադարանի այն օրինակների թւին, որոնք հին ցուցակագրողներից առանց առանձին ուշադրութեան առնելու հաւաքուել են «ԺՈՂՈՎԱԾՈՒ» ընդհանուր անուան տակ. անուշադրութեան պատճառն այն էր, որ այդ տեսակ ձեռագրերի մէջ որև է յայտնի հեղինակի գործ չկայ, որպէս զի ըստ այնմ դասաւորէին։ Կարինեանի հրատարակած ցուցակը կազմողները այդպիսի ժողովածուների համար միայն հինգ

1. Տես իմ Սոկրատի հրատ. յառաջաբանը էջ ԺԷ.

տաս խօսք են տալ. Հիշելով ոչ բովանդակութիւնը և ոչ էլ ժամանակն ու տեղը, եթէ վերջի երեսի վրայ յիշատակարան չէ գտնւել: Ուստի զարմանալու չէ որ մեր վէպը մինչև օրս չէ յայտնւել, ինչպէս նաև շատ ուրիշ մանր բայց կարևոր գործեր, որոնց հետ ծանօթացանք մանրամասն ցուցակ կազմելիս:

Մեր ձեռ. թիւն է 634, ժողովածուների կարգով 71-րդ: Գրւած է ընտիր, հաստ և յղկած բամբակեայ թղթի վրայ. գեղեցիկ և պարզ բոլորգրով: Անխնամ պահւելուց տախտակեայ կողերով կաշեայ կազմը մաշւել, քայքայւել է, թէև ինչպէս երևում է երկրորդ անգամն է կազմւած, որովհետև թղ. 343-368 աւելի վատ և տարբեր գրչով գրւած թերթերը անկապած կրկին կազմողն է միացրել հին ձեռագրի հետ: Ցաւալին այն է որ խոնաւ տեղ է մնացել. թերթերը փափկելով կպել են միմեանց և երբ փորձել են բաժանելու պատռատւել են, քրքրւել, շատ տեղ գիրը եղծւել, մանաւանդ սկսած թղ. 1-70. կան և կորած թերթեր, թէ երկու ծայրերից և թէ միջից, իսկ թղ. 268բ-287ա

դատարկ է։ Ամբողջը բաղկացած է 386 թղթից, 11×75 սանտ. իւրաքանչիւր էջ ունի 17 տող։ Գրքի ստացողն է՝ Պր. Սողոմոն, Գրիչն է՝ Մկրտիչ, գրութեան ժամանակը ՉՀԱ-1322 թ. Յիշատակարաններ կան թղ. 86բ, 211ա, 342ա, 383ա։

Բովանդակութիւնը կազմում են. ա. թղ. 1ա Շարականք Գրիգոր կաթուղիկոսի. բ. թղ. 60ա Յոհ. Ոսկեբ. Յաւետիս Աստուածածնին. գ. թղ. 67բ Եպիփան Կիպրացւ. Ներբողեան ի Ս. Աստուածածին. դ. թղ. 86բ Պատմութիւն Յովասափու. ե. թղ. 212բ Անանիայի խաւսք և խրատ աւետարանական, առաքելական և մարգարէական, որ տանեն զմեզ ի կեանսն յաւիտենական և ոչ տան խոտորել յաջ և յահեկ. զ. թղ. 250բ Նրան. Ս. Եփրեմի յաղագս ապաշխարհութեան. է. թղ. 260բ Թուղթ դաշանց. ը. թղ. 842ա Թուղթ Վկայասիրի վասն Զատկին. թ. թղ. 288բ Ներսիսի Կլայեցոյ տաղ հաւատոյ. ժ. թղ. 315ա Ներսիսի Տարսոնի արքեպիսկոպոսի յորժամ չոգաւ ի Կոստանդնուպոլիս պատասխանի պատրիարգին. ժա

թղ. 343ա Անուանք Հայրապետաց Հայոց (յետոյ է մտցրած ձեռագրի մէջ.) ժբ. թղ. 347բ-վերջը մանր մեծատառ կիսատ գրութիւններ են։

Բարղամի և Յովասափի պատմութիւնը գրուած է թղ. 86բ-211ա անընդհատ, առանց որև է բաժանմունքի կամ գլխակարգութեան, միայն առակների մօտ գրած է «Ա. առակ, Բ. առակ և յն.» այնպէս ինչպէս վրացերէնում։ Ձեռագրի մէջ վէպի բնագիրը միւս մասերից անհամեմատ լաւ է պահուած. եղծուած և վնասուած տեղերը շատ քիչ են, անընթեռնլի մնացին միայն մի քանի ամբողջ և կէս բառեր։ Վէպի վերնագիրն է.

Նկարագրութիւն հոգեւորական վարուց Յովասափու, որդւոյ թագաւորի Հնդկաց որ հաւատաց ի Քրիստոս ի ձեռն Բարղամու միայնակեցի։ Զոր գրեալ Յովհաննու կրաւնաւորի բերեալ ի սուրբ քաղաքն Երուսաղեմ։

Ձեռագրի սորին լուսանցքում գրուած է.

Պատմութիւն Յովասափու Հնդկաց թագաւորին։

Համառօտ օրինակի վերնագիրն է.

Պատմութիւն Յովասափու եւ Բարաղամու։

Վէպի վերջում կայ մի շատ կարևոր յիշատակարան, որ անկասկած հե-

ղինակլին է և թարգմանուած է լատինական բնագրից:

Եւ զայս առանձնայն ես Ներսէս ի կրաւնաւորս Յովհաննէս երթեալ ի Հռոմ տեսի զգերեզմանն նոցա եւ երկրպագեցի սուրբ նշխարաց նոցա եւ աղաչեցի զպարգեւողն ինձ զաւրութիւն հասանել ի տեղի հանգստեան սրբոցն: Որ եւ թարգմանեալ իսկ են առանձնայն հաւատացելոց ի Յիսուս Քրիստոս ի Տէր մեր: Ընդ որում Հաւր եւ Հոգւոյն Սրբոյ վայելէ փառք . . . [1]

## Զ.

Քանի որ Վէպի միայն համառօտ օրինակն էր յայտնի, տեսանք որ նրան ուղղակի յունարէնից թարգմանութիւն են համարել. և որովհետև այժմ գըտնում ենք, որ համառօտը ծագել է նոր գտնուած ընդարձակից և անկախ արտադրութիւն չէ, ուրեմն բնական կլինէր ընդունել որ ընդարձակն էլ յունարէնից է. սակայն այնքան էլ հեշտ չէ այդքան բնական կարծեցեալ եզրափակութեան հասնելը: Ընդարձակի և համառօտ օրինակների աչքի ընկնող տարբերութիւնները սոքա են.

---

1. Էջ 128:

ա. Ընդ. «ուրեմն գառն է.» Համ. «գառն և [Հարամ] է. ընդ. «և գայս ունի.» Համ. «գայս ունի» [խասիաթ] ընդ. «երկուցեալ եմ» Համ. «փախեմ», են: Համառօտի այս դանհկարանութիւն-ները, մանաւանդ «խասիաթ» և «Հա-րամ» բառերը կարող են լուսանցքի մեկ-նողական ծանօթութիւններ լինել և յե-տոյ բնագրի մէջ մտած:

բ. Ընդ. «Զարդան» Համ. «Զարդ», «Աշուրշսիս»-«Աւաշիս», «Թեւդաս», «Թու-դաս», «Բարդամ»-«Բարադամ» և «Բար-դամ» և սոքա կարևոր տարբերութիւն-ներ են, եթէ ընդունելու լինինք թէ Ասատն է վէպի թարգմանը և կրճատողը:

գ. Համառօտի մէջ կան աւել մա-սեր, ոչ լոկ նախադասութիւններ, այլ տեղ տեղ ամբողջ պարբերութիւններ, որ նշանակել ենք ծանօթութիւնների մէջ. (էջ 12. 16. 21. 61. 67. 74. 90. 96. 113.114. 126-128): Յաւելուածների բնաւորութիւնից չենք վստահանում պնդել, թէ նոքա Համառօտի մտքի ար-գիւնք են, այլ մեծաւ մասամբ սկզբնա-կանի տպաւորութիւն են թողնում:

Ահա այս փաստերն են, որ տան-

ձին առանձին վերցրած այնքան էլ կարեւոր չեն, բայց միասին մտածել են տալիս․ արդեօք Ասատն է բուն վէպի թարգմանը եւ կրճատողը, թէ նա լոկ կըրճատումը այնքան ծանրակշիռ է համարել, որ ինքն իրան թարգման է կոչել․ այս չկարողանալով հաստատապէս պնդել, հետեւապէս չենք կարող Ասատի անձնաւորութեան վրայ հիմնուած ժամանակ որոշել։

Զոտընբերգը¹ համառօտի մասին այս է ասել․ «միայն Գրիգոր Խլաթեցու կամ Ծերենցի Յայսմաւուրքի մէջ կայ Բարղամի եւ Յովասափի Վէպը։ Ինչքան ես կարողացայ յետախուզել, աւելի հին Տօնացոյցներում եւ Յայսմաւուրքներում այդ սրբերի անունները յիշուած չեն։ Հետեւապէս թւում է թէ վէպը հայ սրբոց վարքեր գրողներին ԺԵ․ դարուց առաջ յայտնի չէր, այն ժամանակ երբ Գրիգոր Խլաթեցին խմբագրեց իւր Յայսմաւուրքը։»

Յարգելի գիտնականի կարծիքը ինքն ըստ ինքեան հերքւում է մեր ձեռագրի

---

1․ Տես․ Zotenberg, յ․ ա․ էջ 94։

տարեթւով՝ 1322 որ ԺԴ դարու սկիզբն է մեզ հասցնում, բայց անկախ սրանից Պրոֆ. Մառը առաջ է բերել մի շատ կարեւոր փաստ, որը անհրաժեշտ ենք գտնում յիշատակել։

Վարդան վարդապետը թողել է մեզ ընդհանուր աշխարհագրութեան մի համառօտ ձեռնարկ,[1] դրա մէջ նա յիշատակում է Բարդամին, Ցովասափին, Աբեններին (տես վերև) և Նոյա բնակութեան վայրը, ենթադրելով վէպը իբրև հանրածանօթ։

«Իսկ աշխարհն Հնդկաց (S. M. երկիր)[2] արտաք են· առաջինն Սինայ· Փարանկ (S. Mart. Սինաւարան) քաղաք, որ է սակ պարիսպ ունի· ամէն պարսպի մէջ (S. M. ի մէջ յամենայն պարսպի) ձի սուն (S. M. կ) որ է ճձի (S. M. սուն)·

---

1. Ոմանք այդ գործը նրա աշակերտին են վերագրում։

2. Ս. Մարտէնը հրատարակել է Վարդանի աշխարհագրութիւնը (Mem. hist, et géog, sur l' Arm. Paris 1819 t. ll էջ 106-471)։ Պետերբուրգի գրադարանում կայ աշխարհագրութեան մի կիսատ ձեռագիր. Պ. Մառը այդ ձեռ. է օգտւում, տալով Ս. Մարտէնի հրատարակութեան տարբերութիւնները։

եւ նա աթոռ է Հնդկաց թագաւորացն· զոր (S. M. ուր) Աբենէր եւ Յովասափ նստէին. Բ աթոռ(ոյ)ն (S. M. երկու աթոռոցն) Մինդան (Ոմնդան) է անուն եւ երկրորդին Բեկար. եւ ունի Բ դուռն ծովու. մին դռնովն ի վերայ Հռմուզու գան ի Խորասան վաճառականք եւ Բ դռնովն ի վերայ Կարմեդոն կղզոյն գան ի Բարբէլոն (S. M. Բարբիլոն): Երասացոց (S. M. Երասացւոց) ա ն ա պ ա տ ն ի Հնդուստան է. ուստի եկն Բ ա ր ղ ա մ ճգնաւորն եւ լուսաւորեաց զՅովասափ: 1

Մեծ Վարդանի մահուան տարեթիւն է 1271, հետևապէս ԺԳ-րդ դարում Բարղամի վէպը կար հայերէն լեզւով և ծանօթ էր. թէև ինչպէս տեսանք ոչ համառօտ և ոչ ընդարձակ օրինակում չկայ Սինայ Փոթանի կամ Սինաւաթան քաղաքի անունը. ուրեմն որտեղից է Վարդանը այս անունը վերցրել: Մենք կարծում ենք սխալուած չենք լինել եթէ այսպէս մեկնենք. Վարդանը իւր աշխարհագրութեան աղբիւր ծառայող բնագրի միջից վերցրել է. «Իսկ աշխարհն Հնդկաց աթոռք են. առաջինն

---

1. Н. Марръ, Къ вопросу о Варлаамѣ и Іоасафѣ изъ Армянской Географіи приписиваемой Вардану, Записки Вост. Отд, Импер. Русск. Арх. Общ. томъ IV. стр. 395-397.

Սենայ Փաթանկ․․․ և նա աթոռ է Հնդկաց թագաւորացն» և յետոյ ինքը ծանօթ լինելով մեր վէպի բովանդակութեանը, աւելացրել է․ «զոր (ուր) Աբենէր և Յովասափ նստէին․» նոյն ձևով յաւելուած պիտի համարել հետևեալ նախադասութեան վերջի խօսքերը․ «Եբառացւոց անապատն ի Հնդուստան է» — «ուստի եկն Բարղամ ճգնաւորն և լուսաւորեաց զՅովասափ:»[1] Ուշադրութեան արժանի է անապատի անուան ձևը ընդարձակում և համառօտում որից երևում է թէ Վարդանը հաւանականօրէն համառօտն է աչքի առաջ ունեցել որովհետև առաջինում տուած է «զնոց (Յովասափ) յանապատն Անեւբեառացւոց․» իսկ համառօտում․ «Եբիառացւոց,» ինչպէս Վարդանի աշխարհագրութեան մէջ․ ընդ․ ունի միայն «Բարղամ,» իսկ համ․ «Բարղամ» և «Բարաղամ,» ուրեմն այդ անունը ոչինչ չէ կարող բացատրել:

Վարդանի այս տեղեկութիւնը և

1․ Կոնիբեր Անգղիացի գիտնականը ընդունում է որ հայերէն բնագրից մաս է կորել: Տես նրա աշխատութիւնը՝ Barl. and Ios. էջ 142:

մեր ձեռագրի գրչութեան տարէթուերը հիմք ընդունելով, կարող ենք հայերէն բնագրի թարգմանութեան մօտաւորական ժամանակը որոշել։

Նախ համառօտի մասին. բազմաթիւ են նրա ձեռագրերը, բայց յայտնիներից և ոչ մէկը ԺԵ-րդ դարուց առաջ չէ անցնում։ Ամենահին օրինակը ներկայացնում է Վենետիկի մի Ցայսմաւուրք 1440 թ. երկրորդը Մայր Աթոռիս մատենադարանի թ. 1755 Ձեռ. է 1441 թուից. երրորդը դարձեալ մեր մատենադարանի Ցայսմաւուրքն է թ. 1471 թուից. իսկ Ճառացածները, որոնք մի պատկառելի թիւ են կազմում, բաժանւում են այսպէս. չորսը ԺԶ-րդ դարուց են, մէկը ենթադրական. տասնինը ԺԷ դարուց՝ չորսը ենթադրական. հինգը ԺԸ-րդ դարուց՝ երկուսը ենթադրական։ Այսքան օրինակներից միայն երկուսն են որ Ցայսմաւուրքի մէջ չեն, այլ առանձին ժողովածու ձեռագրերում. մեր մատենադարանի թիւ 1755 և Վիեննայի մի Ոսկէփորիկում թիւ 395։ Սակայն այս երկու օրինակն էլ բաւական են ցոյց տալու, մանաւանդ որ նոքա համեմատաբար հին են, թէ վէպը յառ-

կապէս Յայսմաւուրքի համար չէ կրճատուել. այլ նախապէս արդէն կրճատուած է եղել և ինքնուրոյն գոյութիւն է ունեցել, և յետոյ է Գրիգոր Խլաթեցու կամ ծերենցի նորակազմ Յայսմաւուրքի վերջից աւելացրուել: Հետևապէս, եթէ Պրոֆ. Մառի յիշած փաստն էլ չունենայինք,[1] իրաւունք ունենք Զալընբերգի ասածը. «թէ վէպը հայ սրբոց վարքեր գրողներին ԺԵ-րդ դարուց առաջ յայտնի չէր» անհիմն համարել. և պնդել որ նա՝ այսինքն համառօտը շատ վաղ էր յայտնի հայ բանասէրներին:

Բայց հնութեան համար ունենք ուրիշ փաստ ևս, Առաքել Բաղիշեցու ոտանաւորը: Հայոց 883 և Փրկչական 1434 թ. Առաքել Բաղիշեցին վէպի համառօտ օրինակը արաբական չափի տաղտկալի ոտանաւորի է դարձրել. ուրեմն ԺԵ դարի սկզբներում և ԺԴ-րդում վէպը բաւական ընդհանրացած էր, որից դըր-

1. Մանաւանդ որ հաստատապէս յայտնի չէ, թէև շատ հաւանական, թէ աշխարհագրութեան հեղինակը համառօտն ի նկատի ունէր:

դուած Առաքելը գրեց իւր տաղաւորը։

Եթէ քննենք ընդարձակն ու համառօտը լեզուի կողմից ևս գտնում ենք, որ երկուսի լեզուն էլ, մանաւանդ ընդարձակինը շատ ընտիր է. նրա մէջ կան այնպիսի էջեր, որ յիշեցնում են Ե-րդ դարու ընտիր թարգմանութիւնները, մանաւանդ ս. Գիրքը: Այդպիսի գեղեցիկ գրաբար լեզու մեր գրականութեան մէջ գործ է դրուել ոսկեայ դարում և նրա երկրորդ վերածնութեան շրջանում՝ ԺԱ-ԺԳ դարում, երբ լեզուն սկսեց մաքրուել օտարաբանութիւններից և նմանուել դասական շրջանին։ Ուրեմն լեզուն մեր ձեռքը որև է հաստատուն կռուան չէ տալիս ժամանակի վերաբերմամբ. ԺԳ դարուց սկսած մինչև էլ յետ գնալու լինինք, լեզուն չէ կարող արգելք լինել այդ ընդհակառակը։

Եթէ ամփոփելու լինինք վէպի համառօտ օրինակի ժամանակի մասին մեր բոլոր ենթադրական և հաստատ տեղեկութիւնները, կարող ենք ասել. թէ ԺԳ-ԺԴ դարում, գուցէ աւելի շուտ, յամենայն դէպս ոչ ուշ, Ասատ անունով մէկը Բագրատունի մի պատուաւոր իշ-

խանի հրամանով հայերէն ընդարձակ Բարղամու վէպից ծայրաքաղ օրինակ է կազմել, որը ԺԴ-րդ դարու սկզբում մտել է Յայսմաւուրքների մէջ և Առաքել Բաղիշեցու ձեռքով 1434 թուին տաղանաւորի վերածուել. իսկ մինչև այդ նա ընթացքի մէջ էր Ոսկեփորիկ և նման ժողովածու ձեռագրերի մէջ:

Ընդարձակի մասին մեր տեղիքը աւելի քիչ է և հիմնուած միայն նախընթացի վրայ։ Նրա ձեռագիրը ծագում է 1322 թուից, և դա է մեր միակ հաստատուն հիմքը. այդտեղից կարող ենք առաջ ընթանալ մինչև Համառօտի թուականը և նրանից էլ առաջ գուցէ մինչև Ժ-ԺԲ դարը, և սրա հիմունքն է թարգմանութեան ընտիր լեզուն, ինչպէս վերև նկատեցինք։

Ի վերջոյ յիշենք Անգլիացի Կոնիբէր հայագէտ պրոֆեսորի կարծիքը, որ յայտնել է նորերս լոյս տեսած իւր աշխատութեան մէջ. «Բարղամի եւ Յովասափի վէպը Վրաց եւ Հայոց հին գրականութեան մէջ։»[1] Նա ասում է. «Վէպի

1. F. C. Conybeare, The Barlaam and

յիշատակարանը ցոյց է տալիս, որ Սատ անունով մէկը թարգմանել է Բագրատունի թագաւորների ժամանակ, հետեւապէս թարգմանութիւնը կատարուել է 850-1050 թ.»։[1] Մենք արդէն ցոյց տուինք թէ այնքան էլ հաստատ չէ, որ Սատն է վէպի առաջի թարգմանը. եւ երկրորդ՝ չգիտենք ո՞րտեղից է յարգելի գիտնականը իւր կարեւոր տեղեկութիւնը՝ «Բագրատունի թագաւորների ժամանակ» վերցնում. բոլոր համառօտ օրինակները ունին «Հրամանաւ իշխանի միոյ պատուաւորի,» ինչպէս նաեւ այն օրինակը որից պ. Կոնիբերն է իւր թարգմանութիւնը կատարել,[2] միայն Ս. Էջմիածնի 1755 թիւ ձեռագիրն է որ ունի, «իշխանի միոյ Բագրատունւոյ պատուաւորի» եւ որը պրոփ. Մառն է առաջին անգամ գտել։ Այդ բառերից դժուար է եզրա-

Iosaphat legend in the ancient Georgian and Armenian literatures, "Folk-Lore„ Iule, vol. Vll. 1896. London.

1. Տես Կոնիբեր յ. տ. էջ 112. «under the king Bagratuni.»

2. «By the help of an honourable prince» էջ 132.

կացնել թէ այդ Բագրատունի իշխանը նաև թագաւոր էր. որովհետև եթէ թագաւոր եղած լինէր, ինչո՞ւ այնքան անորոշ ձևով կյիշուէր յիշատակարանի մէջ՝ առանց անուան և կոչման։ Միայն մի բան կարող ենք ասել որ «Ասատ» անունը Բագրատունիների ժամանակ շատ գործածական էր, ուրեմն կարող է մեր թարգմանը այդ ժամանակից լինել. թէև այդ անունը աւելի ուշ էլ է առաջ գալիս։

## Է.

Մենք քանիցս արդէն կրկնեցինք, որ Եւրոպացի մասնագէտները հայերէնը յունարէնից են թարգմանուած համարում. նոր է պրոֆ. Կոնիբերի վերոյիշեալ աշխատութեան մէջ յայտնած կարծիքն է, թէ հայերէնը թարգմանուել է ասորերէնից, որը և նրա կարծիքով ևս յունարէնի աղբիւրն է։ Ստորև կթուենք սրա ենթադրութիւնները, որոնք բոլորն էլ, մանաւանդ ընդարձակ օրինակի գիւտով, անհիմն են դառնում. մեզ մնում է կանգ առնել այն խնդրի վրայ թէ արդեօք ի՞նչ յունարէն բնագրից է թարգմանութիւնը։

Փրկչական հինգերորդ դարուց՝ Հայոց գրականութեան սկզբնաւորութիւնից ի վեր, հայ գրագէտները անընդհատ թարգմանել են ասորերէնից, եւ առաւել յունարէնից բազմաթիւ աշխատութիւններ. սրբոց վարքեր, փիլիսոփայական, մաթեմատիքական եւլն. գործեր. ընդհանուր առմամբ բոլորի վերաբերմամբ կարելի է պնդել, որ նոքա ունեն մի յատկութիւն՝ ստրկական հետեւողութիւն բուն բնագրին, որով շատ անգամ հայերէն թարգմանութիւնները իսկական բնագրի արժէք ունին: Այս այսպէս լինելով, հազիւ թէ Բարղամի վէպի թարգմանը ուրիշ կերպ վարուէր. հետեւապէս եթէ հայերէնը յունարէնից է ապա ուրեմն բնական էր սպասել յիշեալ նոյնութիւնը գտնելու: Բայց, թէեւ դժբախտաբար մեր ձեռքին չունէինք յունարէն ամբողջական բնագիր, եւ ստիպուած բաւականացանք միայն Զոտընբերգի հատուածներով եւ Կունի համեմատական բովանդակութեամբ, այնու ամենայնիւ այդ էլ բաւական էին մեզ համար համոզուելու եւ համոզելու, որ հայերէնի եւ Բուասոնատի բնագրի մէջ

մեծ տարբերութիւն կայ։ Առաջ թուենք երկուսի նմանութիւնները։

ա. Պատմուածքի և առակների դասաւորութիւնն և հետևողականութիւնը հայ. և յուն. միանգամայն նման են (տես Կոնի բաղդատութիւնը)։

բ. Միայն հայերէնն ու յուն. ունին քրիստոնէական վարդապետական-դաւանաբանական քարոզները։

գ. Արիստիդէս փիլիսոփայի ջատագովական ճառը, որ արտասանում է Նաքովր հեթանոս միայնակեացը, կայ միայն յուն. և հայերէնում։

դ. Յատուկ անունների ձևերը երկու լեզուներով միանման են, և տարբեր միւս բնագրերից։

ե. Առաջ են գալիս յայտնի յունարանութիւններ, որ թարգմանը չէ հասկացել և սխալ է թարգմանել (օր. էջ 6. ծան. 3)։

Առանց մանրամասնութիւնների մէջ մտնելու այս փաստերից իւրաքանչիւրը առանձին վերցրած, այնքան հիմնաւոր է և ակներև, որ խօսք անգամ լինել չէ կարող, թէ երկու բնագրերը սերտ կապ ունին միմեանց հետ, և կարող էինք

ասել թէ հայերէնի բնագիրը ուղղակի յունարէնն է, եթէ չլինէին հետեւեալ տարբերութիւնները։

ա. Յունարէն բազմաթիւ ձեռագրերը ունին զանազան վերնագրեր. միայն թէ բուն բնագրի մէջ զանազանութիւն չկայ։ Զօտընբերգը այդ վերնագրերը բաժանում է չորս կարգի, դոցանից ոչ մէկը չէ յարմարւում հայերէնին։

բ. Հայերէնը ունի հեղինակի վերջաբանը, իսկ այդ չկայ յունարէնում.[1] Ես բնագիր չունէի, բայց ենթադրում եմ եթէ լինէր Զօտընբերգը և Կոնը լռութեամբ չէին անցնիլ. նա գրագիտական հետաքրքրութիւն ունի։

գ. Հայերէնում պակասում են մի քանի առակներ և պատմութիւնից էլ հատուածներ. ինչպէս ասել ենք հայ ձեռագիրը թերի և կորած մասեր ունի,

---

1 Նոյնը կայ վրացերէնի յառաջաբանում, թէև փոքր ինչ տարբեր. «Յայնժամ եկն յերկիրն Եթովպացւոց և ի գլաստան Թագաւորին Հնդկաց գտի զգիրս զայս, յորում գրեալ էին այսորիկ գործք.» Համեմատիր Conybeare, Barlaam and Iosaphat, էջ 106։

ուրեմն թերութիւնը սկզբնական օրինակից է։

Դ. Առակների պատմուածները երբեմն չեն յարմարւում միմեանց, և մի քանի անգամ հայերէնը յարմարւում է արաբերէնին և վրացերէնին։

Է. Զոտընբերգի հատուածների բաղդատութեամբ համոզուեցի, որ երկուսը բոլորովին տարբեր բնագիրներ են ներկայացնում։

Այժմ օրինակներով հաստատենք մեր ասածները։ Յօգուտ նմանութեան թուած փաստերը բացատրութեան կարօտ չեն. միայն Գ. կէտն է որ հարկաւոր է պարզաբանել. այն է Արիստիդէս փիլիսոփայի ջատագովական ճառի գործածութիւնը մեր վէպի մէջ։ Այդ ճառը քրիստոնէական գրականութեան հնագոյն յիշատակարաններից է. Եւսեբիոս Կեսարացին նրան երկրորդ դարումն է դնում։ Նա երկար ժամանակ կորած էր համարւում մինչև նրա մի մասը առաջին անգամ 1878 թ. հայերէն լեզուով գտան Վենետիկեցիք և հրատարակեցին.[1] մօտ

1. Նոցա ձեռագիրը արտագրութիւն է Կարնեցի Կարապետ եպիսկոպոսի մի ձե-

տաս տարի անց՝ 1889 Թ. Հառիս Անգլիացին գտաւ նրա Ասորերէն ամբողջ բնագիրը և մի ուրիշ Անգլիացի՝ Ռոբինզոն ապացուցեց որ դրա հնագոյն օրինակը պահուած է մեր վէպի մէջ Նաքովր հեթանոս ճգնաւորի քրիստոնէութեան պաշտպանութեան համար թագաւորի առաջ արտասանած ճառի մէջ:[1] Հայերէն ընդարձակ օրինակում էլ կայ այդ ճառը. (էջ 93-93) Վենետիկի հատուածը կայ Մայր Աթոռի Մատենարանի ձեռագրերից Թիւ 102 (Ցուց. Գէորգ Կաթ.) Թղ. 152ա և սկսւում է այսպէս.

«Ինքնակալի Ադրիանոսի Կայսեր յԱ-
«րիստիդեայ փիլիսոփայէ . . . ես, ով
«Թագաւոր. խնամակալութեամբն Աստու-
«ծոյ ստեղծեալ մտի յաշխարհս, և տե-
«սեալ զերկինս և զերկիր և զծով . . »[2]

ռագրի, որ այժմ պահւում է Մայր Աթոռիս մատեն. համ. 102:

2. Տես Edgar Hennecke, Die Apologie des Aristides. Leipzig 1893. Այս գրքոյկի մէջ հրատարակուած է ճառը համեմատութեամբ հայերէնի, ասորերէնի և յունարէնի, գերմանական մեկնութիւններով:

2. Այս ճառը գրել և ինձ էին ուղարկել Արժ. Սահակ և Խաչիկ վարդապետները:

զգուշութեամբ բաղդատեցի միմեանց հետ կարծելով կգտնեմ նմանութիւն երկուսի թարգմանութեան մէջ. բայց ոչինչ չերեւաց. ուրեմն թարգմանները իրար չեն ճանաչում:

Տարբերութեան իւրաքանչիւր յօդուածը կարօտ է բացատրութեան:

ա. Մենք ասացինք որ Զոտընբերգը յունարէնի մէջ վերնագրերը չորս դասակարգի է բաժանում և սոքա են:

ԺԱ-ԺԲ դարու՝ ամենահին ձեռագրերն ունին.

Պատմութիւն ի ներքին յայնկոյս Եթովպացւոց Հնդկաց կոչեցելոյ. բերեալ ի սուրբ քաղաքն ձեռամբ Յովհաննու կրաւնաւորի, առն բարեպաշտի եւ առաքինւոյ՝ վանուցն սրբոյն Սաբա».

Այդ խմբի ձեռագրերից մի քանիսը՝ ԺԶ դարուց Սաբա-ի փոխարէն ունին Սինա, միւսները՝ Սինաիտույ և Սինաիտույ:

Երկրորդ ձեւի վերնագիրը ունին ԺԶ դարու ձեռագրերը.

---

1. Ιστορία ψυχωφελὴς ἐκ τῆς ἐνδοτέρας Αἰθιόπων χώρας τῆς Ἰνδῶν λεγομένης, πρὸς τὴν ἁγίαν πολν μετενεχθεῖσα διὰ Ἰωάννου μοναχου, ἀνδρὸς τιμίου καὶ ἐναρέτου μονῆς τοῦ ἁγίου Σάβα. Տես Զոտընբերգ-Notice էջ 5:

*Պատմութիւն հոգեւորական յերկրէն Եթովպաց-ւոց՝ Հնդկաց կոչեցելոյ. եկեալ առանց բարեպաշտից ի քաղաքն սուրբ եւ յայտ արարեալ ի վանս սրբոյն Սաբբայ, զոր գրեաց սուրբն Յոհան Դամասկացի:*

Համաձայն այս վերնագրի, պատմութիւնը Հնդկաստանից բերել են բարեպաշտ ճանապարհորդներ և նրանցից լսելով, գրի է առել Յոհան Դամասկացին Սաբբայի վանքում: Զոտենբերգը գտել է որ անհիմն է այդ վկայութիւնը:

Երրորդը քիչ է զանազանւում երկրորդից, իսկ չորրորդը[1] նման է առաջինին, միայն ունի մի փոքրիկ յաւելուած:

*. . . սրբոյն Սաբայ, թարգմանեալ ի Վրաց (Իբերացւոց) լեզուէ ի յոյն՝ ձեռամբ Եւթիւմիայ (Εὐθυμίου) առն պատուաւորի եւ առաքինւոյ, Իբերացի կոչեցելոյ:*

Զոտենբերգը ուղիղ է համարում միայն առաջի վերնագիրը. և այդ բանում մասնագէտները համակարծիք են. Դամասկացու անունը Ը-րդ դարում հռչակուած լինելով իբրև դաւանաբանական աշխատութիւնների հեղինակ, որոնցից շատ բան նման է վէպի համապատասխան մասերին, յետագայ դարե-

1. Տես Զոտենբերգ յ. տ. էջ 7:

րի հեղինակներին չփոթեցրել է։ Չորորդ կարգի վերնագրի յաւելուածը, թէ վէպը վրացերէնից է թարգմանուել, այն էլ Վրացի Եւթիմիոս կրօնաւորի ձեռքով, այժմ առանձին հետեւողներ չէ գտնում։ Իրաւ է մինչեւ վրացերէն բնագրի գտնելը Պետերբուրգի համալսարանի պրոֆեսոր՝ Բարոն Ռօզէնը և Միւնխենի պրոֆեսոր Համէլը պնդում էին թէ վէպը սկիզբը գրուել է ասորերէն, յետոյ թարգմանուել վրացերէն և ԺԱ դարում ապրող Եւթիմիոս Իբերացու ձեռքով (նա մեռել է 1026 թ.) վրացերէնից յունարէն թարգմանուել, բայց վրացերէն բնագրի գիւտով[1] այլ եւս դժուար է այդ կարծիքին հալ. իսկ թէ որտեղից է ծագել վերնագրի յաւելուածը, դրա բացատրութիւնը տալիս է Կարլ Կրումբախերը իւր Բիւզանդական գրականութեան պատմութեան մէջ։ «Այդ վերվերնագիրը անկասկած գրել է մի Վրացի

---

1. Н. Марръ, Мудрость Балавара, Грузинская версія душеполезной исторіи о Варлаамѣ и Іоасафѣ. Записки Вост. Отд, Импер. Русск. Арх. общ. ш. էջ 223-260.

վարդապետ, որը իւր հայրենասիրական ոգևորութեան մէջ իւր հայրենակցի փառքի պսակի ծաղկերում մի նոր տերև էլ ինքն է աւելցրել»։[1]

Հայերէնի վերնագիրը նման է յունարէնի ա. ձևին, բայց ոչ նոյն. այստեղ ասուած է. որ Յոհան կրաւնաւորը վէպը գրել է—Սաբայի վանքի յիշատակութիւնը չկայ—և բերել Երուսաղէմ սուրբ քաղաքը,—քաղաքի անունն էլ յունարէնում չկայ, թէև հասկացւում է։ Ինչպէս ասացինք երկուսն էլ նման են, բայց հայը յոյնից բառացի թարգմանութիւն չէ. յունարէնի մէջ չեն յիշուած Բարղամի, Յովասափի և Երուսաղէմի անունները, իսկ հայերէնում Սաբայի անունը թէև կան յուն. օրինակներ որ ունին երկու սրբերի անունները։

Է. Թարգմանչի վերջի յիշատակարանը չկայ յունարէնում. իսկ դա իսկապէս լրացնում է վերնագիրը որոշ կերպով ասելով, որ Յովհաննէս կրօնաւորը անձամբ գնացել է Հնդկաստան, տեսել է

1. Krumbacher, Gesch. der Byz. Litter. էջ 467. համեմատիր Kuhn. յ. ա. էջ. 10—14։

սրբերի գերեզմանները և երկրպագել. ուրիշ հարց է թէ ինչքան ուղիղ է այս վկայութիւնը։ Այս բանում Հայերէնը նման է վրացերէնին։

Գ. Հայերէնի պակաս մասերը յոյնի վերաբերմամբ սոքա են.

1. Պալատականի փախուստը արքունիքից (համար 2) որ չկայ նաև վրացերէնում։

2. Թագաւորի քրիստոնեայ խորհրդականի ազատուիլը և երկու ճգնաւորների այրուիլը (համար 4) վրաց. դէպքերը յետ ու առաջ են։

3. Թէ Յովասափը դուրսը շրջելիս մեռել տեսաւ (համար 5)։ Զարդանի հաղորդածը ճգնաւորների մասին հայերէնում աւելի առաջ է գրած քան յունարէնում։

4. Հաւատացեալ վեզիրի ու հեթանոս թագաւորի, լողացի ու իւր ընկերների պատմութիւնները (համար 8). Բարղամը Յովասափի հարցին իւր տարիքի մասին, պատասխանում է թէ ինքը 45 ամաց է, թէև ի ծնէ 80 ամոց է։

5. Թագաւորի որդու պատմութիւնը (14), Յովասափին մոլորեցնող Թա-

գաւառի գեղեցիկ աղջիկը, Ցովասափի երազը, որդու և հօր խօսակցութիւնը։

Կամ պիտի ընդունել որ հայերէնի պակաս մասերը Թարգմանը ինքն է դիտմամբ կրճատել, կամ թէ չէ տարբեր օրինակ է ունեցել. և վերջին ենթադրութիւնը աւելի հաւանական է թւում, երբ յիշենք ե կէտում չեշտած զանազանութիւնը, որով այժմեայ ծանօթ յունարէն բնագիրը և հայերէնը իրար չեն ծածկում. մանաւանդ երբ տեսնում ենք թէ երկու դէպքում ուղղակի այն է պակասում, ինչ որ նաև վրացերէնում չկայ։

դ. Առակների տարբերութիւնների վրայ առանձին կերպով կանգ է առել Կոնիբերը և նրանցով է գլխաւորապէս փորձել իր կարծիքը ասորական բնագրի մասին հաստատել, թէև ինչպէս տեսցինք և կտեսնենք, անհիմն կերպով։

Ցուն. մէջ միեղջերուի առակում ասուած է՝ թէ փախչող մարդը գրի մէջ ընկնելով «կալաւ զբոյս (կամ զծիւղ) մի», հայերէնում. «զծուղ մի ծառոյն որ էր ի վերայ գբոյն»» արաբերէնում՝ «կալաւ զերկուս ճուղս որ աճէին յե-

զերս նորա։» Ուրեմն արար․ և հայերէն են նման, յունարէնը համառօտ է։[1]

Երկու արկղերի առակում հայերէնում և արաբերէնում ասուած է․ երբ բացին ոսկիապատ արկղը, ժահահոտութիւնից «ամենեքեան փախեան ի նմանէ,» ուրեմն տարբեր յունարէնից․ հայերէնում երկու է արկղերի թիւը, յուն․ չորս։

Ծնծղուկի առակում հայերէնում ասուած է, երբ որսորդը արձակեց թռչնին «թռուցեալ նստաւ ի վերայ ճղի միոյ և անտի սկսաւ վերանալ յաւդն,» այնպէս ինչպէս արաբերէնում է, որի մէջ թռչունը՝ ծնծղուկ է կոչւում, մինչդեռ յունարէնում «սոխակ» է։

Առակների յիշուած մի քանի նմանութիւնները արաբերէնի հետ վերցրել եմ Կոնիբերի աշխատութիւնից,[2] որը բացի այս նկատել է յունարէնի վերա-

1․ Արաբական քրիստոնէական վերսիան, որ ըստ Զոտընբերգի թարգմանուած է մեր ունեցած յունարէն բնագրից, ունի «որ առէր յեղերս գբոյն,» հետևապէս սկըզբնական բնագրում եղել է, յետոյ է կորել։

2․ Տես յ․ դ․ էջ 136, 137։

բերմամբ ուրիշ տարբերութիւններ էլ, բայց նոքա ուղիղ են միայն համառօտի վերաբերմամբ և ոչ ընդարձակի, հետևապէս կարևոր չեն։

Հայերէնի բնագիր համարուած յունարէն օրինակի բաղդատութիւնից ստացած արդիւնքի հիման վրայ առ այժմ կարող ենք ասել։

ա. Բուասոնադի հրատարակած յունարէն բնագիրը հայերէնի բնագիր չէ ծառայել. և այս հաստատ ՝։

բ. Հայերէնը թարգմանուել է յունարէնից, բայց նրա բնագիր ծառայող օրինակը կորել է, որից գուցէ հայ թարգմանը դիտմամբ որոշ մասեր կրճատել է, կամ այդ մասերը չէ ունեցել։

գ. Վերնագրի և առակների տարբերութիւնը, մանաւանդ վերջաբանի պակասիլը, կարելի է հասկանալ և բացատրել երբ ընդունենք այդպիսի մի օրինակի գոյութիւն։

դ. Եթէ հայերէնը իւր ամբողջութեամբ բաղդատուի մեր ունեցած յոյն բնագրի հետ, կիմանանք թէ կորած օրինակն է հին, թէ ունեցածները։

Այժմ մի քանի խօսք Նանիբերի

գրքի մասին. Նրա նպատակն է ցոյց տալ որ Հայերէնը թարգմանուած է ասորերէն մի այնպիսի օրինակից, որը այժմ կորել է. Նրա ապացոյցները սղքա են:

Մխեղջերիւրի առակի սկսուածքը նման է վրացերէնին, իւր համառօտութեամբ, բայց ընդարձակում այլ կերպ է: Զօրս արկղի առակի մասին արդէն յիշել ենք, ինչպէս նաև ճնճղուկի մասին: Միանգամայն անհիմն են Կոնիբերի լեզուական ապացոյցները, որ իբր թէ խասխամ և Հարամ բառերը և մի քանի քերականական ձևեր ասորերէն բնագրի հետքեր են. իսկ յիշեալ երկու բառերը ասորերէն են: Մենք տեսանք որ այդ բառերը չկան ընդարձակում, հետևապէս սկզբնական թարգմանութեան հետ կապ չունին. բացի այդ կարիք էլ չկայ այդ բառերի բացատրութեան համար այդքան հեռուն գնալու, դոքա ժողովրդական շատ գործածական բառեր են, և գուցէ սեմիտական ծագում ունին, միայն պէտք է ասենք որ մեր գաւառաբարբառներում մտել են հարևան թուրքերէն լեզուից: Նոյնպէս հերքւում են յարգելի գիտնականի ասածները Արիստի-

դէսի Ջատագովական ճառի մասին, քանի որ ընդարձակ հայերէն օրինակում այդ ճառը համեմատ յունարէնի ամբողջովին կայ։ Մենք կարող ենք նրա միայն մի կարծիքի հետ համաձայնուել, թէ հայերէնի բնագիրը Բուասոնադի յունարէն բնագրից հին է։ [1] Բայց հետաքըրքրութեան համար առաջ կբերենք վէպի ծագման մասին նրա տուած ճիւղագրութիւնը, որ շատ մասերով զանազանւում է Կոնիի աւելի հիմնաւոր ճիւղագրութիւնից։

«Ես կարծում եմ որ երբեմն գոյութիւն ունէր յունարէն մի պարզ և համառօտ քրիստոնէական բնագիր, որից թարգմանուել է վրացերէնը կամ ուղղակի կամ անուղղակի կերպով։ Յունարէն այդ հնագոյն օրինակը հաւանականօրէն ըսկիզբն է առել Բակտրիայում փրկչի Դ-րդ դարում, այն շրջանում, որտեղ Քրիստոսի և Բուդդայի հետևողները հանդիպում և վիճում էին։ . . . Յունարէն բնագրի երկրորդ փոփոխութեան պատճառն այն է, որ մենք ունինք այժմ հա-

1. Տես Կոնիբ. յ. ա. էջ 139։

յերնում։ Դրա մէջ յունարէնը մօտեցել էր իւր ներկայ ձեւին. Ճառերի դասաւորութիւնը ենթարկուած էր փոփոխութեան, աւելացրած էր Արիստիդէսի ջատագովութիւնը և ուրիշ հոգեշահ մեկնութիւններ։ Այդ աստիճանի մէջ յունարէնը թարգմանուեց արաբերէն լեզուով, և այդտեղից ծագեց հայերէն համառօտ օրինակը։ Յունարէնի վերջի և չորրորդ աստիճանը այն է որ պահուած և հրատարակուած է այժմ Բուասոնադի ձեռքով»։ [1]

Յարգելի գիտնականի ծառայութիւնը իւր աշխատութեան մէջ այն է, որ նա թարգմանելով վէպի վրացերէն և հայերէն օրինակներից բաւական մեծ հատուածներ և առակները, ծանօթացրեց Եւրոպացիներին հայերէն բնագրի հետ և վէպի ուսումնասիրութեան համար նոր հիմունքներ ստեղծեց։ Նրա արած սխալները առաջ են եկել նրանից, որ ձեռին ընդարձակ օրինակ չէ ունեցել, իսկ համառօտը փոփոխուած է։

---

1. Տես Կոնիբ. յ. տ. էջ 141—142։

## Ը.

*Այժմ յիշենք վէպի յայտնի ձեռագրերը և հրատարակութիւնները։ Ընդարձակից միայն մի օրինակ ունինք. բազմաթիւ են համառօտի և Առաքել Բաղիշեցու ոտանաւորի ձեռագրերը։*

*Մայր Աթոռիս մատենադարանը ունի* 27 *Ցայսմաւուրք. դոցանից մեծ մասը ունին վէպը, մի քանիսը թերի են վերջից, որով յայտնի չէ ունեցել են թէ ոչ, իսկ ունեցողները սոքա են.*

1. *Ցայսմաւուրք թիւ* 1487, *մօտ ԺԷ-ԺԸ դար. գրիչ Գրիգոր, անթերի։*

2. *Ցայսմաւուրք թիւ* 1488 *ՌՃ*-1651 *թ. Կոստանդնուպոլիս անթերի։*

3. *Ցայսմաւուրք թիւ* 1489. *ՌՁԲ*-1633 *թ. Ասպահան. անթերի։*

4. *Ցայսմաւուրք թիւ* 1492. *ՌՃՀԹ*-1730 *թ. ի Ս. Էջմիածին. անթերի։*

5. *Ցայսմաւուրք թիւ* 1493 *ՌՃԽԴ*-1695 *թ. ի գիւղն Բձնի. անթերի։*

6. *Ցայսմաւուրք թիւ* 1494 *ՌԼԸ*-1589 *ի գիւղն Մանձիլին. անթերի։*

7. *Ցայսմաւուրք թիւ* 1497 *մօտ ԺԸ դար անթերի։*

8. Ցայսմաւուրք Թիւ 1498 ՌՃԼԴ-1685 անթերի։

9. Ցայսմաւուրք Թիւ 1499 ՌՁԹ-1640 անթերի։

10. Ցայսմաւուրք Թիւ 1500 ՋԻ 1471. ի գիւղն Կուքի անթերի։

11. Ցայսմաւուրք Թիւ 1501 ՌՃԼԸ-1689. ի Վաղարշապատ. թերի։

12. Ցայսմաւուրք Թիւ 1502 ՌՃԾԵ-1706. ի Կարս թերի։

13. Ցայսմաւուրք Թիւ 1503 մօտ ԺԷ դար։

14. 1505. մօտ ԺԸ դար. թերի։

15. Ցայսմ. 572 (ցուց. Գէորգ Կաթ.) մօտ ԺԷ դար. անթերի։

16. Ցայսմ. 571 (ց. Գէորգ Կաթ.) ՌՃԿԲ-1713. ի Շօշ-Ասպահան։

17. 1755 Ժողովածու (կոչւում է Պատմ. զարմից սրբոյն Գրիգորի.) մեր վէպը գրած է թղ. 194-217, մի քանի թերթեր կազմի մէջ յետ ու առաջ են ընկել. ՊՂ-1441 Թ. ի գիւղն Ծայշող. սա համառօտի ամենահին օրինակն է, և սա միայն ունի «Բագրատունւոյ» յիշատակարանի մէջ։

18-20 Սեւանի վանքում կան 9

Յայսմ. թիւ 32-40, միայն 3-ի մէջ կայ. 33-ի, նորոգուած 1644 թ. 35-ի գրուած 1640 թ., և 37-ի մէջ, որը թերի է։[1]

21-24 Վիեննայի կայս. մատենադ. թիւ 17. Մխիթարեան մատեն. թիւ 10[2] Յայսմ. մօտ ԺԶ դար. թիւ 437 Յայսմ. ՌԾԲ-1603 թ. և թիւ 395 Ոսկեփորիկ. ՌԽԳ-1594 թ.։ Հ. Յ. Տաշեանը կայսերական մատենադարանի օրինակն է գերադաս համարում, բայց ես ունէի երկուսի ընթերցուածները և համեմատելով ընդարձակի հետ, գտայ որ հակառակն է ուղիղ։

25. Յայսմ. Պարիզի ազգային մատեն. Anc. fonds Arm. № 89։

26. Յայսմ. Բրիտանական թանգարանի 1603 թ. վէպը գրուած է ԺԸ դարու ձեռքով։

27. Bodleian Marsh Ms. 438, 1550 թ. սրանից է Կոնիբերը թարգմանել անգլիերէն լեզուով,[3]

28-30 Կեսարիոյ ս. Աստուածածին

---

1. Н. Марръ, Изъ лѣтней поѣздки. էջ 211.

2. Տես Յ. Տաշեանի ցուցակը էջ 100-101. 202, 901.

3. Տես Կոնիբ. յ. տ. էջ 113.

եկեղ. ձեռ. ցուց. յիշուած են՝ [1] Յայսմ. Թիւ 7, 8, 9. առաջնի մէջ ՌՃԷ-1658 Թ. Թղ. 493ա նշանակուած է վէպը, միւսների համար ասուած է թէ բովանդակութեամբ առաջինին նման են. Թիւ 8, 1683 Թ. Թիւ 9 ԺԷ դար:

31. Վենետիկի գրատան կան 25 օրինակ Յայսմաւուրք. բայց թէ քանիսը ունին մեր վէպը չգիտենք. նոցա վէպի ամենահին օրինակը 1440 Թ.:

Համառօտն էլ ընդարձակի պէս գրուած է միայարիր, առանց գլխակարգութեան. միայն սկիզբն ունի՝ «Պատմութիւն Յովասափու», մի ուրիշ տեղ՝ «վասն գալոյն Բարղամ ճգնաւորին». և իւրաքանչիւր առակ սկսում է. «Եւ ասաց Բարաղամ առակս այս», կամ «առակ երկրորդ զոր ասաց Բարաղամ Յովասափու:»

Առանձին, անկախ դեռ չէ տպուած, այլ միայն Յայսմաւուրքների մէջ, (Աւելեաց Ն, և Օգոստոսի Ժ), որից մինչև օրս երեք տպագրութիւն ունինք, [2] 1706

1. Տրդատ Վ. Պալեան Ցուց. Ձեռ. Ս. Աստուածածին եկեղ. Պօլիս 1893. էջ 53.

2. Տես Զարբ. Հայկ. մատենագիտութիւն էջ 446—452.

թ․, 1730 թ․ և 1834 թ․ երեքն էլ Կ․ Պօլիս․ վէպն ունին առաջի երկուսը։

Առաքել Բաղիշեցու ձեռագիր օրինակներն են մեր մատենադարանի․

1․ Ժողովածու, թիւ 684։

2․ Ժողովածու թիւ 1535․ գրուած ՌԲ-1553 թ․ մօտ ԺԸ դար։

3․ Ժողովածու ոտանաւորների՝ թիւ 281 (Գ․ Կաթ․) մօտ ԺԸ դար․

4․ Ժողովածու թիւ 344․ ՌԿԲ-1613 թ․

5․ Թիւ 644․ մօտ ԺԸ դար․ սկըզբից թերի։

6․ Վիեննայի Մխիթ․ մատ․ թիւ 343 ՌՃԻ-1671 (Տաշեան էջ 79․) սկիզբը թերի։

7․ Բեռլինի մատեն․ Հայոց ձեռ․ թիւ 84։

8․ Բրիտանական թանգարանի ձեռ․ Or № 4580։

8․ Bodleian Canon Orient № 131.

9․ Պարիզի ազգ․ մատեն․ Anc. fonds Arm. № 133․

10․ Վենետիկի գրատան յիշուած է մի օրինակ։

Բաղիշեցու ոտանաւորը բաժանուած

է 24 գլուխների, առանձին վերնագրերով, օր. տ. «Տաղ ի վերայ Յովսափու Թագաւորի, որդւոյ Թագաւորին Հնդկաց Աբեններայ», ևլն:

Այս ոտանաւորն էլ անկախ կերպով չէ տպագրուել, այլ հին տումարների մէջ. Ամստերդամ 1668 Թ. Կ. Պոլսում 1720 և 1803 Թուերին:[1]

Մեր վէպը ժողովրդական բանահիւսութեան մէջ էլ է մտել. Հենրիխ Վլիսլոցկին ժողովել է Բուկովինայում և Զիբընբուրգում ապրող Հայերի հեքիաթները,[2] որոնց մէջ նաև Յովսափի պատմութիւնը: Միայն անունները փոխուած տարբեր են, Յովսափի անունը Զիմարդան է, որ Թագաւորի որդին է, իսկ Զանդանի անունը Չանդական, որ նրա ընկերն է: Պատմուած է Թագաւորի որդու հանդիպումը հիւանդի, մեռնողի և մեռելի հետ, իսկ վերջում նրա տեղը Թագաւոր է դառնում Չանդականը: Այդ

1. Տես Զարբ. Հայկ. մատեն. էջ 676—677.

2. Heinrich von Whlislocki, Märchen und Sagen der Bukovinaer had Siebenbürger Armenier, Hamburg 1891, p 87-90. Համ. Kuhn յ. տ. էջ 36 ևլն:

հեքիաթը պատմում են նաև նոյն տեղի Ցիգանները, հարց է ով է ումից վերցրել:[1]

Վէպի հայերէն ընդարձակ օրինակը առաջին անգամն ենք հրատարակում. յառաջաբանով փորձել ենք ընթերցողին ծանօթացնել վէպի մասին եւրոպական գրականութեան մէջ յայտնուած ամենագլխաւոր կարծիքների հետ. իսկ ինչ հայերէնի մասին է ասուած, ի նկատի է առնուել մասամբ մասնագէտների հետաքրքրութիւնը: Հրատարակութիւնս ձեռագրի անփոփոխ արտատպութիւնն է, փոփոխութիւն միայն կէտադրութեան մէջ է եղել: Ծանօթութիւնները ցոյց են տալիս ձեռիս ունեցած յունարէն հատուածների աչքի ընկնող աւելն ու պակասը, ինչպէս նաև համառօտի տարբերութիւնները: Վերջում տպում եմ իբրև նմուշ համեմատութեան համար համառօտից մի քանի հատուած:

ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ

1897 թիւ Մարտի 18.
Շուշի:

---

1. H. v. Wlislocki, Armenisches und Zigeunerisches in Barlaam und Iosaphat. Zeitschrift für vergl. Litter. Gesch. 1 (1887) էջ 462-469:

Երբ բնագիրը տպուած պատրաստ էր առանց յառաջաբանի, և ցոյց տուի ազգիս Վեհափառ Հայրապետին, նա ինձ պատուիրեց տպել նաև Բագիշեցու ստանաւորը ամբողջութեամբ և ոչ թէ մի քանի հատուածները, ինչպէս իմ մտադրութիւնն էր. և ես անսալով նրա հրամանին վերջից կցում եմ։

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա.

Ամառս Տուշուց Էջմիածին վերադարձած, միաբան Գալուստ Տէր Մկրտչեանի մօտ գտանք պրոֆ. Ն. Մառի Կոնիբերի աշխատութեան մասին մի քննական յօդուած [1] և կարդալով ուրախութեամբ նկատեցինք, որ շատ էական խնդիրներում նոյն հետևանքին է հասել ինչպէս և մենք։ Նա հաւանական է գտնում Կոնիբերի կարծիքը. թէ Հայերէն համառօտ օրինակը կարող է ոչ թէ յայտնի յունարէն օրինակից թարգմանուած լինել, այլ դրան մօտիկ մի ուրիշ բնա-

1. Н. Марръ, Критика и библіографія. Журналъ Мин. нар. прос. էջ 483-490 (1897).

գրից. իսկ ասորերէնից թարգմանուած լինելը անհաւանական է գտնում Կոնիբերի հիմունքները. «դերբայների յաճախ գործածութիւնը անորոշ եղանակի փոխարէն», «որդիկ մարդկան» դարձուածը և մանաւանդ «հարամ է» «խալիաթ» եւն. բառերի ասորերէնից ծագումը համարում է անհիմն և ոչինչ չապացուցանող, որովհետև առաջի դարձուածները հայերէնում անսովոր չեն և կան մինչև անգամ ս. գրքում, իսկ երկու բառերը հայերէնի մէջ մտել են արաբերէնից:

Հետաքրքիր է պրոֆ. Մառի վէպի համառօտ օրինակի ժամանակի մասին յատնած կարծիքը, որ միանգամայն նոյն եզրակացութեանն է եկել ինչպէս և մենք, միայն տարբեր հիմունքներով: Նա Ասատի գործը դնում է ԺԲ—ԺԳ դարում. որովհետև արաբական շրջանի նախկին դարերում Հայերը Արաբներից առնում էին մականուններ, օրինակ Սահակ Աբուկուրեյշ, բայց մկրտութեան անունները քրիստոնէականն էին պահպանում, միայն վերջերը այդ դէպքում էլ գործածական դարձան արաբական անունները, ուստի Ասատ անունը առաջ կըգար վե-

բոյիշեալ դարերում և ոչ շուտ․ բայց շատ ուշ էլ տանել չենք կարող, որովհետև վերջի Բագրատունի իշխանը Հայոց պատմութեան մէջ յիշւում է 1260 թուին․ Հետևապէս այդ կարող է լինել Թարգմանութեան վերջի թուականը։ Միայն նա ընդունում է որ Վարդանը իմացել է ընդարձակ օրինակը, մինչդեռ մենք հակառակն ենք հաւանական համարել։

1897 Թ․ 2-ն Օգոստ․
Ի Ս․ Էջմիածին։

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ․

Անկախ պատճառներից վաղուց պատրաստի աշխատութեանս տպագրութիւնը այսքան ուշացաւ, մինչ այդ ստացայ պրոֆ․ Ն․ Մառի մի նոր․ յօդուածը, Н. Марръ, Армянско-Грузинскіе матеріалы для исторіи душеполезной повѣсти о Варлаамѣ и Іоасафѣ. С. Петерб. 1897 (Записки Вост. отд. Имп. русск. арх. общ. XI)։ Այս նոր նիւթերի մէջ պ․ Մառը կանգ է առնում ամենից առաջ Եւթիւմիոս Իբերացու վրայ, շեշտելով նրա

վարքից այն տեղեկութիւնը, որ նա վրացերէնից յունարէն գրքեր է թարգմանել, որոնց մէջ յատկապէս յիշուած է Բալաւարի գիրքը, հաւանականօրէն մեր վէպը: Այս տեղեկութիւնով հաստատում է յոյն չորորդ կարգի ձեռագիրների վերնագիրը, ըստ որում վէպը յունարէն լեզուով վրացերէնից է թարգմանուել (էջ ԾԸ), միայն անորոշ է թողնում այն խնդիրը թէ արդեօք ներկայ վրացերէն օրինակն է յունարէնի բնագիր ծառայել, թէ ուրիշ օրինակ: Պ. Կոնիբերը իւր յիշեալ գրքում (էջ 141-142) արդէն տարբեր յունական խմբագրութիւններ է ընդունել, միայն Մառը չէ համաձայնում նրա այն կարծիքի հետ, թէ ներկայ վրացերէնը այդ ենթադրեալ խմբագրութիւններից է թարգմանուել, այլ փորձում է ապացուցանել Բարոն Ռոզէնի միտքը և վրացերէնի ասորաբանութիւններով ցոյց տալ, որ ուղղակի ասորերէնից է թարգմանուել:

Մառի յօդուածի երկրորդ կարեւոր կէտն է Վրաց և Հայոց սրբոց վարքերում Բարաղամ Անտիոքացու վարքի հնարաւոր կապը և ազդեցութիւնը մեր վէպի

Բարաղամի վրայ՝ (Հայ. վարք և վկայաբանութիւնք սրբոց հատընտիր քաղեալք 'ի ճառընտրաց, Վենետիկ 1874, Ա. էջ 212-219)։

Ու ի վերջոյ գտել է վէպի մի քանի առակների գործածութիւնը հայկական գրական յիշատակարաններում։

ա. Մահուան քարոզի առակը կայ մի քարոզի մէջ, որի հեղինակը անյայտ է. «Ու Ահագին և սարսափելի է գոչումն փողոյն..» (Ն. Մ. էջ 74-76). Նոյնը կայ Վարդանի առակների ժողովածուի մէջ (Մառ. Հ. Բ. էջ 288-289)։

բ. Դարձեալ Վարդանի ժողովածուի մէջ (Հ. Ա. էջ 48. № 31) «Ծառը, երկու մկներ. ջրհորը»։

գ. Նոյն տեղը (Հ. Ա. էջ 326-327) «երեք սիրելիների առակը»։



## ՆԿԱ[Ց]ՐԱԳՐՈՒԹԻՒՆ ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ՎԱՐՈՒՑ ՅՈՎԱՍԱՓՈՒ ՈՐԴՒՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՆԴԿԱՑ. ՈՐ ՀԱՒԱՏԱՑ Ի ՔՐԻՍՏՈՍ Ի ՁԵՌՆ ԲԱՐՂԱՄՈՒ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ. ԶՈՐ ԳՐԵԱԼ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿՐԱՒ(ՆԱ)ԻՈՐԻ ԲԵՐԵԱԼ Ի ՍՈՒՐԲ ՔԱՂԱՔՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ:[1]

Երկիրն Հնդկաց հեռաւորն է յԵգիպտոսէ. յարեւելից կողմանէ փակե(ա)լ բարձր լերամբք և ծով շուրջ պատեալ. և երկիր բարի և գեղեցիկ և բազմամարդ յոյժ: Եւ ամենեքեան մոլորեալք էին ի կռապաշտութեան. այլ յորժամ միածին Որդին Աստուծոյ Որէն ի ծոց Հաւր վասն մերոյ փրկութեան կամաւ Հաւր և Սուրբ Հոգւոյն՝ ի վախճան աւուրց իջեալ յերկնից և ի հայրական աթոռոյն ոչ պակասեաց և մարմնացեալ ի սրբո(յ) կուսէն Մարիամայ, զի զերկիրս երկին արասցէ, և զմեզ ի ծառայութենէ մեղաց ազատեսցէ, և հաղորդս արասցէ երկնայլն բարութեանց: Եւ կատարեալ զամենայն անաւրինաբար վասն մերոյ փրկութեան, համբերեաց խաչի և մահու, և յարուցեալ

---

[1] Սորին լուսանցքում գրած է նոտրգրով «Պատմութիւն Յովասափու Հնդկաց Թագաւորին. լաւ իմայ: Զի գովելի է:»

յերրորդ աւուր համբարձաւ յերկինս և նստաւ ընդ աջմէ Հաւր, և զմխիթարիչ Սուրբ Հոգին առաքեաց առ ընտրեալ աշակերտսն իւր, և ի ձեռն հրեղէն լեզուացն առաքեաց զնոսա ընդ ամենայն երկիր. պատուիրեաց նոցա մկրտել զամենայն ազգերս յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, զի որք հաւատասցեն և մկրտեսցին կեցցեն, իսկ որք ոչն հաւատան դատապարտեսցին:

Եւ եհաս վիճակ առաքելոյն Թովմայի՝ որ էր մի յերկոտասանից անտի, յերկիրն Հնդկաց և երթեալ անդ քարոզեաց զՔրիստոս. և արարեալ անդ նշանս և արուեստս բազումս յանուն Տեառն. և ճշմարտութեամբ նշանացն որոշեաց զնոսա ի կռապաշտութենէն. և հաստատեաց ի ճշմարիտ հաւատս ի ձեռնն մկրտութեանն. շինեաց եկեղեցիս բազումս և կարգեաց ուխտս եկեղեցւոյ որպէս եւ գրեալ է ի գիրս պատմութեան իւրոյ, և ինքն բարի նահատակութեամբ կատարեցաւ ի Քրիստոս:

Եւ մնացեալ երկիրն այն ըստ քարոզութեան առաքելոյն բազում ժամանակս: Եւ սկսան շինել բազում վանորայս որպէս և յեգիպտոս և ի Սկիւթ և յայլ անապատս հոգևորս:

Եւ յետ ոչ սակաւ ժամանակաց եկաց յերկիրն յայն թագաւոր, որոյ անուն կոչէր Աբեններէս, ա մեծ և յաղթող ի վերա(յ)

ա Համ. Աբեններ. յուն. Ἀβέννηρ·

թշնամեաց իւրոց, և անյաղթ ի պատերազմունս: Որ և բազում գաւառս արար ընդ իշխանութեամբ իւրով ի Պարսից և յԵթւոպացւոց: Է՛ր գեղեցիկ պատկերով և հսկաձև անձամբ. և ոչ ոք կարէր ընդդիմանալ նմա վասն բազում զաւրացն և իւրոյ անպարտելի զաւրութեանն: Եւ էր նա յոյժ մոլեալ ի կռապաշտութեան աղանդն. և որպէս ոգւի դիւաց ինքն կոչէր: Եւ այսպ յարոյց հալածանս ի վերայ քրիստոնէական հաւատոյն: Եւ բազումք ի քրիստոնէից հաւանեալք նորայ պիղծ հրամանին և ուրացան զՔրիստոս և զոհեցին չաստուածոցն նորա: Իսկ որք ընդդիմանային հրամանաց նորա, հրով և սրով և այլ բազում մեքենայիւք տանջեալ լինէին: Բազումք ի հաւատացելոց անտի ճգնեցան. այլք և կանայք և փոխանակ այսմ կենացս անցաւորի, զյաւիտենականն ժառանգեցին զկեանսն. և ընկալան զանթառամ պսակն ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ:

Իսկ թագաւորին այն ոչ գոյր զաւակ. և հանապազ հայցէր ի չաստուածոցն իւրոց շնորհել նմա զաւակ. և հալածումն ստէպ ստէպ յարուցանէր ի վերայ քրիստոնէիցն: Համարէր զինքն վրէժխնդիր լինել չաստուածոցն, մինչև ոչ մնացեալ լինէր յերկիրն յայն քրիստոնեայ և ոչ մի. զորս հաւանեցոյց դառնալ ի պիղծ և ի զազրալի երկրպագութիւն կռոցն: Եւ որք ոչ հաւանեցան, որ-

պէս յառաջագոյն ասացաք՝ կատարեցան վկայութեամբ ի Քրիստոս: Եւ այլք հալածական եղեալ յերկիրն Եգիպտացւոց մինչև ցՊաղեստին:

Իսկ ի ժամանակս ծերութեան թագաւորին, եղև նմա զաւակ արու. և ուրախութիւն մեծ արարեալ թագաւորին և տաւնս բազմապատիկս կատարելով ի մեհեանս կռոցն. համարէր ի նոցանէ պարգևեալ զորդին իւր:

Ապա և համբաւ աւետեաց առաքէր ընդ ամենայն իշխանսն, որ էին յիւրում թագաւորութեանն, գալ ի նաւակատիս ծննդեանն իւրոյ: Եւ ըստ հրամանի թագաւորին ժողովեալ ամենայն իշխանք և զաւրավարք և չորրորդա[յ]պետք գաւառացն այնոցիկ բազում ընծայիւք յերկրպագութիւն որդւոյ թագաւորին: Եւ յետ քառասուն աւուր խնդութեանն, թագաւորն թագ եդեալ անուանեաց զնա Յովասափ: ա Եւ կոչեալ ի մոգուց անտի և ի Քաղդէացւոց բ արս երև յիսուն և հինգ. գ որք էին իմաստունք յոյժ յաստղաբաշխական ճարտարութեանցն: Եւ կացուցեալ զնոսա առաջի իւր

---

ա. Յուն. Ἰωάσαφ

բ. Ձեռ. Դաղթէացւոց.

գ. Համ. «Եւ կոչեաց Ծ արս աստղագէտս եւ իմաստունս:» Յուն. συνῆλθον ἄνδρες πεντήκοντα πέντε ժողովեցան արք յիսուն և հինգ:

թագաւորն, հարցանէր ի նոցանէ թէ զի՞նչ
լինելոց իցէ մանուկն։ Եւ նոքա[յ] ճշգրտու-
թեամբ քննեալ զաւուրս բազումս. զժամա-
նակ ծննդեանն, զախտարս[ա] կենդանա[յ]-
կերպին։ Եւ յետ ոչ սակաւ ինչ աւուրց եկեալ
առաջի թագաւորին ասեն. որպէս մեզ ցու-
ցանեն ընթացք աստեղաց վասն որդւոյ քո,
աստացուք զպարերախտութիւն դորա և ըդ-
շնորհ. ոչ է թագաւորութիւն դորա[յ] ըստ
քում թագաւորութեանդ. այլ յայլ մեծա-
գոյն թագաւորութենէ զաւրեղ քան զքոյդ։

Ապա մի ոմն յաստեղա[յ]գիտացն որ-
էր իմաստնագոյն քան զայլսն ասէ. Ինձ այս-
պէս թուի, արքայ, եթէ որդին քո զաւան-
դութիւն[բ] քրիստոնէից առնուցու, զոր
դու բազում հալածմամբ հերքեցեր յերկրէ
քումմէ. և անդ բազմա[յ]պատիկ բարձրա-
նայ մեծութեամբ յոյժ։ Զայս ոչ եթէ յիւր-
մէ խաւսեցաւ աստեղագէտն, այլ մարգա-
րէացաւ՝ որպէս երբեմն Բաղամ ի վերա(յ)
Իսրայէլական ժողովրդեանն։

Զայս[գ] իբրև լուաւ թագաւորն Աբե-
ներէս,[դ] յոյժ տրտմեցաւ ընդ բանսն։ Ապա

ա. Համ. զաղթարս.

բ. Համ. զաղանդն քրիստոնէից առնու. Վիեննայի
օր. զաւանդութիւն։

գ. Այստեղից սկսած կայ Զոտենբերգի գրքում, որը
համեմատում եմ հայերէնի հետ (էջ 97.)

II. Reclusion de Ioasaph Յովասափի փակուիլը։

դ. Յուն. չիք.

ի միտս իւր եկեալ հանճարէր՝ թէ որպէս պահեսցէ զորդին իւր ի քրիստոնէական աւանդութենէն:[ա] Բայց ոչ կարէ քաղաք թագչել որ ի վերայ լերին կայցէ. քանզի որ յառաջագոյն սահմանեալ էր զնա յորովայնի մաւր իւրոյ, գիտէր զինչ լինելոց էր պատանին:[բ] Յայնժամ թագաւորն հրամայեաց շինել պաղատ վայելուչ և գեղեցիկ յոյժ. և ի ներքս արարեալ զամենայն ինչ որ է ի պէտս մարդկան, և զարդարեաց գեղեցկութեամբ: Եւ յետ մանկանն զատելոյ ի ստէ,[գ] եդ զնա[յ] ի պաղատն զոր շինեալն էր: Եւ եդ ի նմա[դ] սպասաւորս երիտասարդս գեղեցկատեսիլս. և պատուիրեաց նոցա զի մի ինչ յաշխարհական տրտմականացու իրաց լսիցէ մանուկն բանս ինչ ի նոցանէ. մի՛ աղքատութիւն, մի՛ ցաւք, մի՛ ծերութիւն, մի՛ մահ,[ե] և մի այլ ինչ բանս տխրական և որ նման սոցին: Այլ զամենայն ինչ բարու և ուրախութեան.[զ] և զոր ինչ գեղեցիկ է յաչս և և ի միտս մարդկան՝ զայն միայն լսիցէ մանուկն ի նոցանէ: Եւ եթէ ոք ի պաշտաւնէից

---

ա. Համ. հաւատոցս.

բ. Յուն. չիք. Այս ի միտս իւր . . . էր պատանին։

գ. Յուն. չիք. Եւ յետ . . ի ստնէ.

դ. Յուն. Եւ կարգեաց նմա զուսուցիչս և սպասաւորս:

ե. Յուն. մի մահ, մի ծերութիւն, մի աղքատութիւն.

զ. Համ. զամենայն ինչ ուրախարար, բարի և զուարճալի:

նորա հիւանդանայր, կամ վաղճանէր, անյայտ առնէին. և փոխանակ նորա այլս կացուցանէին ի ծառայութիւն մանկանն. և պատճառէին զծառայակիցն եթէ ի հեռաւորս ճանապարհ յղարկեաց զնա[յ] Թագաւորն: Եւ պատուէր տուեալ Թագաւորն պաշտաւնէից մանկանն. զի մի ոք գուշակեսցէ մանկանն վասն Քրիստոսի և վասն պատուիրացն նորա: ա

Եւ զայս ամենայն արարեալ Թագաւորն, քանզի ունէր ի մտի զբան զաստեղագիտին այնորիկ որ յառաջագոյն ասաց, թէ որդին քո քրիստոնեայ լինելոց է:

Իսկ․ որդի Թագաւորին կացեալ ի պալատն, մնեալ և աճեալ ուրախութեամբ մինչև յարբունս հասակի: Ապա[յ] կացուցեալ Թագաւորն վարդապետս որդւոյ իւրոյ՝ յԵթւոպացւոց և ի Քաղդէացւոց. գ և ուսեալ ի նոցանէ զամենայն ճարտարութիւն արտաքին դպրոց մինչև զարմանալ յոյժ վարդա-

---

ա. Յուն. ունի. եթէ ոք ի պաշտաւնէից … Թագաւորըն. "պատուիրացն նորա,, բառերից յետոյ է գրուած:

Այսքան փոքր հատուածի բաղդատութիւնը արդէն պարզ ցոյց է տալիս, որ հայերէնը յամենայն դէպս յունարէն այս բնագրից չէ թարգմանուած:

բ. Zotenberg. էջ 98.

II. Les trois rencontres երեք հանդիպմունք.

գ. Յուն. Περσῶν.

պետայն նորա ընդ իմաստութեան մանկանն և ընդ բազմահանճարութիւն մտաց նորա: Իսկ Թագաւորն ուրախութեան լնոյր միշտ վասն գեղեցկութեան մանկանն և փութանակի աճմանն: Եւ յամենայն ժամու գայր ի տես մանկանն, և գիրկս արկեալ համբուրէր զնա[յ] և ուրախութեամբ դառնայր անդրէն ի Թագաւորութիւնն[ա] իւր: Եւ համապազ տայր պատուէր պաշտանէից մանկանն, զի մի ինչ վաղճանի աւր լսեցուցանիցեն նմա: Այլ քանզի անհնարին է մահուան խորհրդոյ ի մարդկանէ թաքչել.[բ] քանզի լուեալ էր մանկանն վասն կրաւնաւորաց ոմանց որ յառաջագոյն նահատակեալ էին՝ և կամէր հարցանել վասն մահուանն, թէ զի՞նչ է. և զայս ունելով ի մտի խորում աւուրս բազումս: Ապա[յ] ի միում աւուր կոչէ առ ինքն զմի ի սիրելի ծառայիցն իւրոց, զոր ունէր մտերիմ առաւել քան զայլսըն. հարցանէր ուսանել ի նմանէ. թէ զի՞նչ գոյ արտաքոյ յայսմ պալատի, և եթէ ընդէր արգելու Թագաւորն զմեզ յայսմ տեղւոջ: Եթէ զայս պատմեսցես ինձ, երկրորդ[գ]

ա. Անպատճառ յուն. գործուած է. ἐπὶ τα βασιλεία ի պալատն իւր (տես Սոկրատ Հրատ. էջ 50 ծն. ա). բայց յուն. չկայ:

բ. Յուն. “Այլ որպէս թաքչի ի մարդկային բնութենէ մահն. նոյնպէս և մանկանն ոչ թագեաւ.„ Շարունակութեան մէջ ել խիստ տարբեր է յուն. և հայերէնը:

գ. Յուն. πρόκριτως πάντων ἔστη μοι.

իմ առաջից զքեզ, և զինչ և խնդրեսցես յի-
նէն՝ մինչև ցգլուխ իմ տաց քեզ: Իսկ իմաս-
տուն պաշտաւնեայն տեսեալ և հանճար
իմաստութեան մանկանն, սկսեալ պատ-
մեաց նմա մի ըստ միոջէ զամենայն իրս
ստուգութեամբ. և զհալածումն զոր յա-
րոյց հաւրն նորա ի վերայ քրիստոնէիցն, մա-
նաւանդ ի վերայ կրաւնաւորաց սրբոց, որք
էին ընդ իշխանութեամբ նորա. պատմեաց
նմա և ասացեալսն ի Քաղթեւացոցն[ա] յա-
ւուրս ծննդեան նորա. եթէ քրիստոնեայ
լինելոց է: Եւ վասն այսորիկ արգելու զքեզ
աստ Թագաւորն, զի ուրախութեամբ սնանի-
ցիս. և պատուիրեաց մեզ չոգա[յ]ցուցանել
քեզ յաշխարհական տաղնապաց և տառա-
պանաց և ի հոգւոց մինչև ցմի բան:

Եւ իբրև լուաւ զայս պատանին, ոչ
ինչ յաւել պատասխանի, այլ ծագեաց ի
սիրտ նորա բան փրկութեան. և շնորհք Հոգ-
ւոյն Սրբոյ եբաց զաչս սրտի նորա առ ի
ճանաչել զճշմարիտն Աստուած: Եւ որպէս[բ]
վերագոյն ասացաք, գայր առ նա հայր իւր
հանապազ վասն բազում գթոյն զոր ունէր
առ նա: Եւ ի միում աւուր եկեալ Թագա-
ւորն առ մանուկն և ընթացեալ նա[յ] ընդ-
առաջ նորա, երկիր եպագ և համբուրեալ
զմխմեանս նստան:

ա. Յուն. οἱ ἀστρολόγοι.

բ. Այս մասը շատ նման է յունարէնին:

Եւ ասէ մանուկ ցհայր իւր, արքա՛յ, յաւիտեան կաց, մի ինչ խնդիրս ունիմ զքէն և կամիմ զի կատարեսցես ինձ. վասն զի բազում հոգս և նեղութեան տանին զիս վասն այնր իրաց: Թագաւորն ասէ. պատմեա ինձ, սիրեցեալ որդեակ իմ, և ես լցից զխնդիրս քո և զտրտմութիւնս քո յուրախութիւն դարձուցից: Պատանին ասէ, հա՛յր, զի՞նչ պատճառ է իմ աստ արգելականն լինելո(յ), զի՞ կամ անտես յամենայն| վայելչութենէ աշխարհի: Թագաւորն ասէ. զի ոչ կամիմ, որդեակ, տեսանել քեզ յաշխարհս տգեղ ինչ, կամ լսել տրտմութեան բան. այլ ամենայն ուրախութեամբ անցուցանել զգեղեցկութեան աւուրս քո: Պատանին ասէ. այս ոչ է ինձ ուրախութիւն, ով թագաւոր, այլ մանաւանդ տրտմութիւն ունիմ զկեանս իմ աստ, այլ եթէ կամիս զուրախութիւն սրտի իմո(յ), հրամայեա՛ ինձ շրջել ուր և կամիցիմ և տեսանել զգեղեցկութիւն աշխարհիս:

Տրտմեցաւ թագաւորն յորժամ լուաւ զայս (ի) պատանւոյն, և ի միտս իւր ասէր. զի եթէ արգելից զինքն ի խնդրուածոյն, առաւել ևս տրտմեսցի մանուկն: Եւ ապա[յ] ասէ ցնա. ես արարից, որդեակ իմ, զկամս քո. և չտաց քեզ սրտմտել վասն այդմ իրաց: Եւ առժամայն բերեալ երիվարս գեղեցիկս և ոսկեկազմս. և հեծուցեալ զմանուկըն և զամենայն պաշտաւնեայս նորա՝

զարդարեալ գեղեցիկ հանդերձիւք և ոսկեկազմ երիւարաւք, և հրամա(յ)եաց զամենայն փողոցսն զարդարե[ա]լ ընդ որ լինէր անցանել որդւոյ թագաւորին: Եւ երգիչս և նուագիչս և քնարահարս և կաքաւիչս յառաջս ճանապարհացն կացուցանել. և զամենայն խոտան իրս հրամա(յ)էր ի բաց հեռացուցանել յաչաց մանկանն:

Եւ յարա[յ]ժամ ելանէր մանուկն և շրջէր ուր և կամէր, և դառնայր անդրէն ի պալատն իւր: ա Իսկ ի միում աւուր յորժամ երթայր մանուկն, պաշտաւնեայքն սրղերգացեալ որք առաջի երթային, յանկարծակի տեսանէ արս երկուս. մին ուրուկ՝ այսինքն գոճի և միւսն կոյր: Զարհուրեալ բ մանկանն հարցանէր. թէ զի՞նչ են նոքա: Իբրև ոչ կարացին թագուցանել ասեն. այս ախտք են որ գան ի վերայ մարդւոյ ի ցաւոց: Ասէ մանուկն. ամենայն մարդ այդպէ՞ս լինի: Նոքա[յ] ասեն. ոչ, թագաւոր, այլ ոմանք ի ցաւոց մարմնոյ և ոմանք յախտաբաց: գ Պատանին ասէ. և գիտե՞րդ ոչ իմանայ մարդ յառաջագոյն զցաւս մարմնոյ իւրոյ որ գալոց իցէ: Նոքա[յ] ասեն. անհնարին է մարդւոյ զառաջիկայն իմանալ, բայց դ

ա. Յուն. չիք Եւ յորաժամ ... ի պալատն իւր.

բ. Համ. զարմացեալ.

գ. Յուն. οὐ πᾶσιν ἀλλ' οἷς ἂν ἐκτραπείη τὸ ὑγιεινὸν ἐκ τῆς τῶν χυμῶν μοχθηρίας.

դ. Համ. անմահին Աստուծոյ.

միայն անմահից չաստուածոյն: Եւ տրտ-
մեալ ընդ այն Ցովասափու, փոխեցաւ եղ-
ծաւ գոյն երեսաց նորա վասն տեսանելոյ
նմա զանսովորական իրսն:

Իսկ յետ բազում աւուրց մինչ եր-
թայր, հանդիպեցաւ ալեւորի ումեմն բա-
զում ժամանակաց. ա երթայր ծերն ի վերայ
երկուց գաւազանաց և դողդոջէր ձեռաւքն
հաստատել ի գաւազանսն, և խաւսէր
նուաղ ձայնիւ: Դարձեալ զարմանայր Ցո-
վասափ և հարցանէր զնմանէ. թէ զի՞նչ իցէ
այն: Իսկ ոմանք ի մերձակայիցն ասեն. սա[յ]
բազում ժամանակաց է և վասն այնորիկ
պակասեալ է յուժոյ, և տկարացեալ մարմ-
նով, և յայդ եկեալ նուաստութիւն: Պա-
տանին ասէ. և զի՞նչ է դորա կատարումն:
Եւ նոքա ասեն. մահն զդա[յ] փոխէ: Պա-
տանին ասէ. ամենեցուն է մահ, եթէ զմա[յ]
միայն: Եւ նոքա[յ]ասեն. եթէ մահ զմարդ ոչ
փոխէր, ո՛չ բաւէր աշխարհս տանել զմարդն.
բայց ամենեցուն գալոց է: բ

Պատանին ասէ. յետ քանի՞ ամաց լին-
լոյ մարդւոյ մահ գայցէ. և իցէ՞ ումեք հր-
նար զերծանել ի նմանէ. և կամ յետ քանի՞
ամաց լինի մարդ իբրև զալեւոր վայդ: Նո-
քա ասեն. ալեւոր յետ ութսուն կամ իննս-

ա. Համ. յոյժ ծերացեալ. որ երթայր կաղալով.

բ. Համ. աւել ունի. Ասէ Ցովասափ զի՞նչ է մահ: Եւ նոքա ասեն. մահ է որ բաժանէ զհոգին ի մարմնոյն և մնա մարմինն անկենդան:

սուն ա ամաց լինի մարդ. բայց մահն ոչ է այդպէս, այլ ամենեցուն առհասարակ գայ, ծերոց և տղայոց և ոչ ոք զերծանի ի նմանէ, քանզի հարկ ի վերայ ամենայն մարդւոյ:

Իսկ յառաջա[յ] հանճար և աստուածաշունչ պատանին Յովասափ երբև զայս ամենայն լուաւ ասէ. ապա[յ] ուրեմն դառն է բ ժամանակս և լի ամենայն տրտմութեամբ, ստուեր և ունայն: Եւ եդեալ ի մտի, կամէր ուսանել վասն մահուանն, և եթէ յետ մահու զի՞նչ լինի մարդ. և վասն այսմ ամենայն իրաց յոյժ հոգայր ի մտի իւրում և ոչ առնոյր հանգիստ. գ և խնդրէր տեսանել զոք զի ծանուսցէ նմա բանս ինչ փրկութեան:

Իսկ որ գիտողն դ է ամենայն գաղտնեաց, և յայտնեաց մարդկան. և կամի զամենայն մարդիկ զի կեցցեն և ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն, եցոյց նմա զփրկութեան ճանապարհ ի ձեռն բազմագութ ե մարդասիրութեան իւրոյ այսպէս:

---

ա. Յուն. καὶ ἑκατόν և հարիւր:

բ. Համ. դառն և ճապաւ է կեանք աշխարհիս այսորիկ.

գ. Յուն. կան միքանի հարցեր որ չկան հայերէնում:

դ. Համ. գիտակն է սրտից.

ե. Համ. բարեգութ.

Եւ ա եղև յաւուրսն յայնոսիկ յանա-
պատական ծերոյ կրաւնաւոր ոմն, բ իմաս-
տուն և աստուածական գրոց և պատուի-
րանաց յոյժ հմուտ. Ղևտական գրոց, Հին
և Նոր կտակարանաց. և էր անուն նորա Բար-
ղամ: Սա[յ] ազդեցութեամբ Հոգւոյն գիտա-
ցեալ վասն որդւոյ թագաւորին, և վերստին
առաջնորդութեամբ Հոգւոյն ճանապարհոր-
դեալ, մինչև եկեալ եհաս ի քաղաքն յորում
էր որդի թագաւորին: Եւ եկեալ անդ՝ զգե-
ցաւ զգեստ աշխարհականի ի վերայ այծեա-
ցըն, և եղեալ ի կերպս վաճառականի եմուտ
ի քաղաքն: գ Եւ արարեալ անդ աւուրս
բազումս, ծանաւթացաւ պաշտաւնէի ու-
մեմն որ յամենայն ժամու մտանէր և ելա-
նէր առ որդի թագաւորին: Եւ էր նմա պա-
տուական և մտերիմ յոյժ, որում անուն
Զարդան դ կոչիւր, ընդ որում եհարց որդի
թագաւորին մինչև ի պաղատն էր, վասն
իւրոյ արգելմանն և վասն քրիստոնէական
հաւատոյն:

---

ա. Համ. ունի այս վերնագիրը·
Վասն գալոյն Բարղամ ճգնաւորին.

Zotenberg էջ 103· IV. parabol du joyau
առակ պատուական ական.

բ. Յուն. Թէ յո՞ էր և յո՞րմէ ազգէ. ոչ ունիմ ասել. հաստատեալ էր զբնակութիւն իւր յանապատի միոջ յերկրին Սենաարիտեայ ... τῆς Σενααρίτιδος γῆς

գ. Յուն. ի թագաւորութիւն Հնդկաց.

դ. Յուն. դեռ չէ յիշուած անունը.

Արդ եկեալ առ նայ ծերոյն. և մեկու-սի առեալ զնա ասէր. գիտացիր, տէր իմ, զի ես վաճառական ոմն եմ եկեալ աստ ի յաւատր աշխարհաց. և ունիմ մարգարիտ պատուական [ա], և գեղեցիկ յոյժ, զորոյ զաւ-րինակ չիք ուրուք տեսեալ երբէք, և մինչև ցայժմ ոչ յայտնեցի զնա[յ] ումեք: Բայց քեզ կամեցայ ասել. զի գիտացի զքեզ իմաստուն և հաւատարիմ ծառայ տեառն քում. և կամիմ զի տարցես զնա առաջի որդւոյ թա-գաւորին, զի ցուցից նմա զգեղեցիկ մար-գարիտն իմ: Զի կարող է մարգարիտն այն կուրաց տեսութիւն շնորհել, և համրաց խաւսել և լսել, և զհիւանդս հողւով ող-ջացուցանել:

Ասէ ցնա մանուկն. [բ] տեսանեմ զքեզ այր իմաստուն և խոհեմ. և բանս լսեմ ի քէն անմուտ: Քարինս պատուականս և մար-գարիտս մեծագինս տեսեալ է իմ ի տունս տէրանց իմոց, այլ այդպէս որպէս դուդ ասես, ո՛չ է իմ երբէք լուեալ կամ տե-սեալ: Բայց ցոյց ինձ որ տեսանեմ. և եթէ իցէ որպէս դուդ ասես, առժամայն ածից զքեզ առաջի տեառն իմոյ, և բազում պար-գևս առցես ի նմանէ. զի ոչ է ինձ հնար վասն սուտ իրաց ինչ պատմել տեառն իմոյ:

---

ա. Յուն. λίθος τίμιος քար պատուական.

բ. Յուն. παιδαγωγός

Պատասխանի ետ Բարղամ և ասէ. բարեկաք ասացեր, թէ ոչ երբէք լուայ կամ տեսի այնպիսի իրս և այժմ խնդրեցեր տեսանել զնա[յ]. բայց մարգարիտն իմ ի վերայ ամենայն զաւրութեան իւրոյ և զայս ունի. ա զի հիւանդ ոք զնա[յ] ոչ կարէ տեսանել: Ես և բժշկական արուեստից հմուտ եմ յոյժ, և տեսանեմ յաչս քո, զի ոչ ունիս կատարեալ առողջութիւն, և վասն այդորիկ ոչ կարես տեսանել զմարգարիտն իմ: Արդ՝ մի պղերդանայր, բ արդ փութացեալ պատմեայ տեառն քում. զի մի կորիցէ ի նմանէ գեղեցիկ իրս այս:

Եւ նա[յ] ասէ. թէ այդ այդպէս իցէ, ես ծանուցից թագաւորին վասն քո: Եւ նոյն ժամայն մտեալ ի ներքս, մի ըստ միոջէ զամենայնն պատմեաց որդւոյ թագաւորին: Եւ նորա խնդալից եղեալ ընդ բանին, հրամայեաց առժամայն ածել առաջի իւր զծերն զայն:

Եւ մտեալ Բարղամ առաջի նորա և երկիր եպագ: գ Եւ նա հրամայեաց նմա նըստել. և իբրև ելին ի բաց մանկաբարձքն և ծառայքն, ասէ Յովասափ. ցոյց ինձ զմար-

---

ա. Համ. զայս ունի խասիաթ կամ խասլիաթ.

բ. Համ. աւել ունի. որ չկայ նաև յունարէնում. Ասէ Բարաղամ. եկցեն ծառայքդ արտաքս. զի վայելուչ և բարւոք երևի մարգարիտն տեառն իմոյ արքայի.

գ. Զառընթերցի յուն. հատուածը այստեղ ընդհատւում է, յետոյ շարունակւում.

դարլան զոր ծանուցեր ի ձեռն պաշտաւ-նէին իմո(յ)։

Բարդամ ասէ. ոչ է պարտ սուտ խաւ-սել առաջի քո(յ)ոյ թագաւորութեանդ, բայց զամենայն զոր ծանուցի քեզ ճշմարիտ են. բայց փորձեցից զմիտս քո և ապա ցու-ցից քեզ զմեծագին մարգարիտն իմ։

Քանզի վարդապետն և տէրն զոր եմն պաշտեմ այսպէս ասաց. եթէ ել սերմա-նա[յ]հան սերմանել սերմն. և ի սերմանելն իւրում՝ էր որ անկաւ առ ճանապարհաւ և եկեալ թռչունք երկնից կերան զնա. և այլն անկաւ յապառաժի և ի չգոյէ հիւթոյ տեղ-ւոյն՝ ի ծագել արևուն ցամաքեցաւ.ա և այլն անկաւ ի մէջ փշոց, և փաղփաղակի ելին փուշքն և հեղձուցին զնա. և այլն անկաւ յերկիր և ի պարարտ, և աճեալ տայր պը-տուղ ընդ միոյ երեսուն և ընդ միոյ վաթ-սուն և ընդ միոյ հարիւր։ Արդ՝ եթէ գացի ի սրտի քում երկիր պտղաբեր, ոչ դանդա-ղիմ սերմանել և ծանուցանել քեզ զմեծա-մեծ խորհուրդս. ապա[յ] եթէ ապառաժուտ և փշուտ և կոխեալ ի բազմաց իցեն միտք քո, լաւ է ամենևին և ոչ մի ինչ ծանու-ցանել քեզ։ Քանզի գրեալ է. մի տայք ըզ-սրբութիւն շանց և մի արկանէք զմարգա-րիտ ձեր առաջի խոզաց։ Արդ՝ եթէ հաւա-

ա. Համ. չորացաւ.

տաս բանից իմոց, զճշմարիտն ասացից քեզ, զի և մեծագին մարգարիտն իմ տեսցես և լուսով նորա[յ] լուսաւորեսցես ի կեանս յաւիտենական և պտղա[յ]բերեսցես զհարիւրաւորն. և պտուղն քո յաւիտեան կացցէ: Քանզի և ես վասն այդորիկ իսկ եկի առ քեզ. զի ցուցից քեզ զոր ոչ երբէք տեսեր և ոչ յումեքէ լուար:

Յովասափ ասէ. ես, ով ծեր պատուական, բազում գութ ունիմ առ ի լսել ինձ բանս բարութեան. և ի բազում ժամանակաց տագնապէի ի սրտի իմում, և մինչև ցայժմ ոչ հանդիպեցայ ումեք պատմել զոր ինչ եսն խնդրեմ: Իսկ եթէ գտանեմ զոր և լսեմ ի նմանէ բան փրկութեան. ոչ թռչունք երկնից կերիցեն զնա[յ], ոչ և գազանք երկրի, և ոչ փշաբեր և ապառաժուտ արարից զմիտս իմ ի լսել բանին. այլ մանաւանդ բարւոք խնդութեամբ ընդունիմ զհաստատ իմ. և դու եթէ գիտես ինչ այսպիսի մի թաքուցանէր յինէն:

Բարղամ ասէ. բարւոք ասացեր, որդեակ, որպէս արժան էր քում մեծութեանդ. զի ոչ գնացեր զհետ ցնոտի և երևելի կենացս այսոցիկ, բայց միայն ծածկեալ բարութեանցն և յուսոյն ակնկալար:

Առակ Ա.

Թագաւորն ա ոմն նստեալ ի վերա(յ) կառաց ի լուսոյ երթայր, և ի ճանապարհի հանդիպեցաւ երկուց արանց, որ զգեցեալ էին հանդերձս պատառատունս. և մարմինք նոցա այլադունեալք ի տաւթոյ և ի ցրտոյ: Գային և աղաղակէին, եթէ մեք եմք քարոզք յաւիտենական բարութեանց: բ Իբրև ետես զնոսա Թագաւորն, իջեալ ի կառացն երկիր եպագ նոցա, և յարուցեալ համբուրեաց զնոսա[յ], և նստոյց ընդ իւր: Եւ սկսան մեծամեծքն տրտնջել՝ որք էին ընդ իշխանութեամբ նորա[յ]. և վասն զի ոչ ինչ համարձակէին ասել զԹագաւորն, ծանուցին զամենայն եղբաւր նորա ասելով. Թէ ո՞րպէս անարգեաց եղբայր քո զպատիւ Թագաւորութեանն: Եւ երթեալ եղբաւրն գտանէ մեկուսի զԹագաւորն, և պատմեաց նմա զամենայն. և Թագաւորն ոչ ինչ ետ նմա պատասխանի:

Արդ սովորութիւն էր Թագաւորին.

---

ա. Համ. ունի վերնագիր. "Ես առաց Բարաղամ առակս այս. կամ. Ես առաց Բարղամ զառակս զայս շահեկան եւ աւգտակար լսաւղաց զայս:,, Տես Զոհրապ. էջ 106.

V. VI. Parabole de la trompette de la mort. Parabole des quatre boîtes. առակ քարոզի մահուան, առակ չորից տփոց.

բ. Համ. մեք եմք քարոզ կենացն յաւիտենից:

զի զոր ոք կամէր սպանանէր, նախ առաքէր ի դուռնն քարոզ մահու, փող հարկանել ի վերայ դրանն: Եւ իբրեւ երեկոյ եղեւ առաքեաց Թագաւորն զքարոզն մահու և զփողահարսն ի դուռն եղբաւրն իւրո(յ): Իսկ իբրեւ լուաւ եղբայր զձայն բողոքի մահուանըն, երկեաւ յոյժ. և արարեալ զամենայն կտակ մահուան մինչև ցառաւաւտն: Եւ ընդառաւաւտն զգեցեալ հանդերձս տրտմականըս, և չոգաւ ի դուռն պաղատին, և ունէր ամենեւին որոշել ի կենաց զանձն իւր: Իսկ Թագաւորն իբրեւ լուաւ զգալ եղբաւրըն իւրոյ, առ ժամայն կոչեաց զնա[յ] առաջի իւր և ասէ. անմիտ և անխմայ,[ա] դու այդչափ երկար ի սիրելի յեղբաւրէս քումմէ, զի առաքեցի քարոզս մահու ի դուռն քո որ ընաւ ոչ մեղար ինձ: Արդ՝ ո՞րպէս տրտմեցիր առ իս, զի պատուեցի զքարոզն Աստուծոյն իմո(յ) որ քարոզէին զյաւիտենականն բարութիւնսն: Եւ պատուեաց զեղբայրըն ըստ արժանեաց և յուղարկեաց ի տուն իւր:

Ապա[բ] հրամայեաց Թագաւորն այն առնել տուփս[գ] փայտեղէնս. զմին[դ] հրա-

ա. Համ. անիմաստ.

բ. Համ. ունի վերնագիր. Առակ երկրորդ զոր տաց Բարլաամ Յովասափու.

գ. Համ. երկու փայտեղէն ամանս. յաւն. ունի չորս տուփս փայտեղէնս.,,

դ. Յաւն. "զերկուսն.,,

մայեաց պատել ոսկւով և արծաթով, ա և զմի[ն]ուսն կպրով: Եւ զոր ծածկեալն էր ոսկւով, հրամայեաց լնուլ զնա ժահահոտ աղբով, իսկ որ կպրովն էր ծածկեալ, հրամայեաց լնուլ ոսկով և մարգարտով և քարամբք պատուականաւք: Եւ հրամայեաց բերել զերկուսինն բ առաջի մեծամեծաց իւրոց և ասէ. զի՞ն արարէք զոցա[յ]: Եւ նոցա ասեալ, բաղում զինս արարին ոսկեպատ ամանին, որպէս երևեցաւ յաչս նոցա: Եւ իբրև բացին զնա[յ], ել ժահահոտութիւն աղբին և ամենեքեան փախեան ի նմանէ:

Ապա[յ] հրամայեաց բանալ զկպրապատ ամանն, և առ ժամայն հեղաւ պատուական մարգարիտն և քարինքն բազմազինք: Յայնժամ ասէ Թագաւորն այն ցիշխանսն իւր. թէ այսպէս՝ ոչ է արժան ըստ երևելի աչաց երթեալ մարդույ, այլ զծածկեալ բարութիւնսն խնդրել:

Արդ գ և դու, որդեակ, աւրինակ եղեր այնմ իմաստուն Թագաւորին. զի ոչ գնացեր զհետ սնոտի երևելեացս այսորիկ, այլ զծածկեալ բարութեանցն փափագեցեր: դ

ա. Համ. ասել ունի. “և զարդարեաց ակամբք և մարգարտով:„ Յուն. ունի. “և լնուլ ոսկերբք ժահահոտ կենդանեաց.„

բ. Յուն. չորեսին.

գ. Զոտրն. ընդհատուած է.

դ. Համ. հաղորդ եղեր. հաղորդեցար.

Յովասափ ասէ. զայդ ամենայն ճշմարիտ և բարիոք ասացեր. բայց կամիմ գիտել զԹագաւորն քո վասն որոյ ասացեր զառակ սերմանն:

Յայնժամ Բարղամ բացեալ զբերան իւր, սկսաւ խօսել և ասել. եթէ կամիս գիտել զԹագաւորն իմ. Տէր Յիսուս Քրիստոս է միածին Որդին Աստուծոյ որ է աւրհնեալ յաւիտեանս, որ է տէր տէրանց և Թագաւոր Թագաւորաց, որ միայն ունի զանմահութիւն բնակեալ ի լոյս անմատոյց. որ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ երկրրպագի և փառաւորի յամենայն արարածոց, երիս անձնաւորութիւն և մի աստուածութիւն, մի բնութիւն, մի գոյութիւն, մի փառս, մի արքայութիւն, մի կամք Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. անսկիզբն, անեղ, անվախճան, անտեսանելի, աննիւթ, անպարագրելի, անիմանալի, բարի և արդար յամենայնի. որ և զամենայն երևելի և աներևոյթ արարածս յանէութենէ յէութեան ածեալ գոյացոյց:

Նախաստեղծեալ աներևոյթ զաւրութիւնս երկնից անթիւ բազմութիւնս. հոգիք հարկաւորք կարգեալք ի սպասաւորութիւն մեծութեան իւրո(յ): Ապա[յ] և զերևելի երկինս և զերկիր և զծով ջրով շրջա[յ]փակեաց և զերկիր ստեղծեալ և զցամաք ի մէջ նոցա[յ] կարգեաց ի սպասաւորս երկրի, ի հաստատութեան երկնից՝ զարեգակն և զլուսին

և զաստեղս: Ստեղծ և յերկրի զամենայն փայտս պտղաբերս. և զամենայն բանճար վայրի խոտոյ դալարոյ. ապա[յ] և բազմահոյլ կենդանիս. արար ի նմա[յ] անասունս և գազանս և սողունս. նոյնպէս և ի ծովու ազգի ազգի զեռունս և թռչունս և զձկունս և կէտս մեծամեծս. զայս ամենայն ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան:

Ապա[յ] ստեղծ զմարդն ձեռաւք իւրովք. առեալ հող յերկրէ գոյացոյց զամենայն անդամս մարմնոյ մարդոյն ըստ պատկերի և ըստ նմանութեան Աստուծոյ. և որպէս յանուլթ ինչ արկ ի նա հոգի կենդանութեան՝ և փչեաց ի նա[յ] հոգի կենդանութեան շունչ կենդանի ի վերին լուսոյն. որ է միտք հոգի բանաւոր: Եւ անձնիշխան արարեալ զնա[յ], կացոյց թագաւոր ի վերայ արարածոց իւրոց երևելեաց. և ի կողից նորա[յ] հանեալ կող՝ ստեղծ նմա կին: Եւ տնկեալ զդրախտն յԵդեմ ընդ արևելս և լցեալ զնա[յ] ամենայն բարութեամբ. եդ զնոսա[յ] անդ զուարճանալ յանանց բարութիւնսն, մերձ լինելով նոցա[յ] Աստուծոյ. և ի միջա[յ]սահման ի մէջ եդեալ զնոսա՝ այսինքն կենաց և մահու. քանզի ոչ եթէ յաւիտեան կենդանիս արար և ոչ ապականութեան մահու արկ զնոսա, այլ ի մէջ երկոցունց միջա[յ]սահմանեալ: Եւ եդ ի վերայ նոցա[յ] աւրէնս. պատուէր տուեալ յամենայն պտղոյ ճաշակել բայց ի միջոյ պահել.

այսինքն որ ցուցանէ զբարի և զչար. ապա[յ] եթէ կերիցես մահու մեռանիցիս:

Բայց մի ի նախաստեղծից զուգաց երկնաւորաց զարդարեալ կարգեալ՝ ոչ հաւանեալ արարչին հրամանի, այլ արկ ի միտ իւրում զանըսգամութիւն հպարտութիւն. և բարձրացուցեալ զմիտս իւր հակառակ Աստուծոյ եղև: Վասն որոյ ընկեաց զնա Աստուած ի պատուոյ և ի կարգէ իւրմէ, և փոխանակ երանելի փառացն զոր ունէր և հրեշտակական անուան՝ սատանայ անուն ժառանգեաց. և անկաւ նա[յ] ի վերին փառաց իւրոց որպէս արժան էր նմա[յ]. նոյնպէս և բազմութիւն զաւրացն նորա[յ] անկան ընդ նմա[յ] որք և դևք անուանեցան, որք են խաբիչք և կորուսիչք մարդկան:

Եւ սատանայի մոռացեալ զառաջին փառսն իւր, հակառակ եղև աստուածային պատուիրանացն, և նախանձեալ ընդ մարդոյն տեսանելով զնա[յ] զի վայելէր յանպատում բարութիւնսն: Եւ արարեալ զանձն գործարան չարութեան իւրոյ, և ի նմանէ խրատեալ, խաբեաց նախ զկինն առ ի ճաշակել ի պտղոյն պատուիրանազանցութեան: Եւ առ եկեր և ետ առն իւրում. և կերան և առ ժամայն բացան աչք իւրեանց և տեսին զմերկութիւն իւրեանց ի լուսեղէն փառացն. զոր տեսեալ արարչին զպատուիրանա[յ]զանցութիւն մարդւոյն, արտաքսեաց

գնա[յ] ի դրախտէն և ընդ անիծիւք արտաքեալ. և յերկիր տառապեաց գործել գնա[յ] ուստի առաւ. և առ հասարակ զմահ ընկալեալք փոխանակ այնմ անեղծ փառացն զոր ունէին ի դրախտին փափկութեան: Յայնժամ զաւրութիւն առեալ սատանայի և պարծեալ յինքեան. և իբրև սկսան մարդիկ բազմանալ ի վերայ երկրի, եցոյց նոցա զամենայն չարութեան ճանապարհ. մինչև բարկացեալ Աստուծոյ ի վերայ երկրի, ած ջրհեղեղ կորստեան և սատակեաց զամենայն շունչ կենդանի որ էր ի ներքոյ երկնից:

Բայց միայն այր մի արդար, որ անուանեալ կոչէր Նոյ, նմա հրամայեաց Աստուած մտանել ի տապանակ հանդերձ կնաւ և զաւակաւք իւրովք և ապրե՛լ: Եւ դարձեալ սկսան ի նմանէ մարդիկ բազմանալ ի վերայ երկրի. և մոռացան զԱստուած զարարիչն իւրեանց և բազում մեղաց և չարեաց ըսկըսան հաղորդ լինել: Եւ բազում աստուածըս արարեալ ձեռագործս յերկրի. կենդանակերպս անբանս և անշունչս և սկսան երկիրպագանել նոցա[յ]. և փոխեցին զփառս անեղին Աստուծոյ ի կերպարանս մարդւոյ և զազանաց և թռչնոց և չորքոտանեաց:

Այլք ի նոցանէ երկիրպագանէին արեգական և լուսնի և աստեղաց. ոմանք ծովու և գետոց և լերանց. կէսք հրոյ և ամբոց և որ ինչ նման սոցին է: Եւ ոմանք զեռնոց որ շրջին ի վերա(յ) երկրի: Եւ այլք ի նոցանէ

արարեալ աստուածս ձեռագործ՝ անուանեցին այրս և կանայս և աղճատանս արարեալ նոցա[յ], մնոտի բանիւք տային զազրելի ծնունդս: Զոմանս առնա[յ]կին արարեալ և զոմանս ի դիւթական ազանգոյ եկեալք. և զոմանս ի պոռնկութենէ ծնեալք. և այլք միմեանց հզաւրագոյն երևեալ, փախուցանէր զնուաստն. և այլք ի նոցանէ բարկացողս և նախանձոտս և պոռնիկս. և այնպէս մնոտի բանիւք գտեալ մարդկան պատճառ, իւրաքանչիւր ազգ արարին իւրեանց չաստուածս ըստ կամաց իւրեանց: Եւ շաղախեալ ամենայն երկիր ի զազրելի պաշտաւն կռապաշտութեան, ոչ ոք մնաց յերկրի որ ճանաչէր զՏէր Աստուած արարիչն իւր:

Աբրահամ ոմն արդար երևեցաւ միայն ի վերայ երկրի. որ տեսեալ զամենայն ստեղծուածս Աստուծոյ զոր ինչ երևի յաչս մարդկան. այսինքն զերկինս և զերկիր և զծով, զարեգակն և զլուսին և զաստեղս և զմտաւ ածեալ ասէ. ոչ են դոքա[յ] ամենայն առանց արարչի. և ոչ դարձեալ աստուածքս զոր մեք պաշտեմք՝ ստեղծին զսոսա: Զոր գիտացեալ Աստուծոյ զմիտս նորա[յ], երևեցոյց զինքն որպէս կարող էր նորա տեսանել. քանզի զԱստուած անհնար է մարդկոյ տեսանել. այլ ըստ կարողութեան նորա երևեցաւ նմա. և նորա[յ] հաւատացեալ յԱստուած և համարեցաւ նմա

յարդարութիւն։ Եւ ի նմանէ սկիզբն եղեալ աստուածպաշտութեան՝ և եղեալ ուխտ Աստուած Աբրահամու աճել և բազմանալ։ Եւ աւրհնեաց Աստուած զԱբրահամ և ասէ․ աւրհնելով աւրհնեցից զքեզ, և բազմացուցանելով բազմացուցից զաւակ քո որպէս զաստեղս երկնից և իբրև զաւազ առ ափն ծովու։

Իսկ յետ վախճանելոյն Աբրահամու, զաւակք նորա եղեն պանդուխտք յերկրին Քանանու․ և անդ իջեալք յԵգի(պ)տոս, ծառայք եղեն Փարաւոնի արքային Եգիպտացւոց։ Եւ նեղեալ զնոսա[յ] ժամանակս բազումս, ապա յիշեաց Աստուած զուխտ իւր Աբրահամու՝ հաւր իւրեանց․ և արարեալ ըստ բազում ողորմութեան իւրոյ, առաքեաց ի նոցանէ երկուս Ղևտացիս որք կոչէին Մովսէս և Ահարոն։ Եւ տուեալ ի ձեռս նոցա[յ] նշանս և արուեստս առնել առաջի Փարաւոնի արքային Եգիպտացւոց։ Եւ հարեալ զԵգիպտոս տասնիւ հարուածովք մինչչև նեղեալ Փարաւոնի արձակեալ զժողովուրդն․ և դարձեալ խստացոյց զսիրտ Փարաւոնի վարել զհետ ժողովրդեանն ամենայն զաւրութեամբ իւրով։ Եւ եկեալ ժողովրդեանն ի ծով մի Կարմիր, հրաման տուեալ Մովսէսի հարկանել զջուրն․ և բաժանեցաւ ջուրն յաջմէ և յահեկէ․ և որպէս ընդ ցամաք էանց ժողովուրդն ընդ մէջ ծովուն․ եմուտ և Փարաւոն զհետ նոցա։ Եւ դար-

ձոյց Տէր Աստուած զջուրն ի վերայ Փարաւոնի և զաւրաց իւրոց մինչև հեղձան ամենեքեան. և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի: Եւ հանեալ զժողովուրդն յանապատ և պահեալ զնոսա[յ] ամս քառասուն յանապատին. զհաց երկնից անձրևացոյց նոցա և ջուր ի վիմէ բղխեցոյց նոցա. և բազում թագաւորս հնազանդեցոյց նոցա. մինչև ած զնոսա[յ] յերկիր, որ բղխէր զկաթն և զմեղր. և ետ նոցա[յ] աւրէնս գրեալ մատամբ իւրով ի քարեղէն տախտակի միջնո[յ]պարեալ լինել ի մէջ Աստուծոյ և կռոց: Եւ յետ վախճանելոյն Մովսիսի, ետ նոցա զաստաւորս առաջնորդել նոցա ըստ կամաց իւրոց:

Ապա և թագաւորս կացոյց նոցա և մարգարէս յարոյց ի նոցանէ, որք մարգարէ(է)անային զամենայն ինչ որ լինելոց էր ի ձեռն շնորհաց Սուրբ Հոգւոյն: Եւ յաւել բազում անգամ մեղանչել ժողովուրդն. և գործէին չար առաջի Աստուծոյ. և նա խրատէր զնոսա[յ] ըստ մեղաց իւրեանց, մատնելով ի ձեռս այլազգեաց սակաւ սակաւ ժամանակս. և դարձեալ ողորմէր նոցա յեշելով զուխտն իւր զոր եդ ընդ Աբրահամու հաւրն իւրեանց. և այսպէս ներէր նոցա[յ] ժամանակս բազումս: Իսկ ի վաղճան աւուրցըս այսոցիկ, արարիչն ամենայն լինելութեանց և ստեղծիչն ամէնայն արարածոց, ոչ կարաց տեսանել զբռնութիւն չարին թագաւորեալ ի վերա(յ) մեր, և որպէս յառա-

ջագոյն պարծէր սատանայ. եթէ յաղթեցի ստեղծուածոյն Աստուծոյ: Սոյնպէս արարիչն երկնի և երկրի կամեցաւ զգենուլ ըզմարմին մարդւոյն, և մարմնովն այն՝ որ յառաջագոյն ի չարէն պարտեալ էր. սովին իսկ մարմնով կամեցաւ պատերազմել ընդ սատանայի: Եւ Որդին միածին Աստուծոյ յառաջ քան զյաւիտեանս ծնեալ ի Հաւրէ, որ միշտ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ երկրպագի և փառաւորի, իջեալ յերկնից անճառապէս. և Որդին Աստուած զծառայական մարմին զգեցաւ և եղև մարդ կատարեալ, ծնեալ ի Մարիամայ կուսէ առանց սերման և առանց առն՝ յանարատ արգանդի կուսին՝ ի Հոգւոյն Սրբոյ անաւրինեցաւ:

Քանզի և նախ քան զյղութիւն կուսին, մին ի հրեշտակապետացն առաքեցաւ ծանուցանել նմա[յ] զաքանչելի յղութիւնն. քանզի անսերմն ծնաւ զՈրդին Աստուծոյ ի Հոգւոյն Սրբոյ. և ինքն ստեղծ յորովայնի կուսին մարմին անձնաւոր. շնչական ըստ բնութեան. և հոգի բանաւոր. անշփո[յ]թելի միաւորութեամբ զանխառնելիս խառնեաց՝ Աստուած և մարդ կատարելութեամբ: Եւ յետ ծնանելոյն անարատ պահեաց զկուսութիւն ծնաւղին. և յամենայնի առեալ զմեր նմանութիւնս բայց ի մեղաց, եբարձ յինէն զտկարութիւնս մեր. և զցաւս մեր բժշկեաց: Քանզի ի ձեռն մեղաց եմուտ մահ յաշխարհ. և ի ձեռն կենդանարար մահուան իւրոյ եղև

ազատութիւն ի մահուանէ: Եւ շրջելով ընդ մարդկան ամս երեսուն, ապա[յ] մկրտեցաւ ի Յորդանան գետ ի Յովհաննէ՝ ի յառանէ սրբոյ և վերագունէ քան զամենայն մարգարէս:

Եւ ի մկրտելն նորա[յ] ձայն եղև յերկնից յԱստուծոյ Հաւրէ ասէ. դա[յ] է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. և Հոգին Սուրբ ի կերպարանս աղաւնոյ իջանելով ի վերայ նորա[յ]: Եւ յայնմ հետէ սկսաւ առնել նշանս և արուեստս մեծամեծս. զմեռեալս յարուցանէր, զկո՛յրս լուսաւորէր, զկաղս գնացուցանէր, զխեւահարս բժշկէր, զբորոտս սրբէր: Եւ նորոգեալ յամենայնի զհինացեալ բնութիւնս մարդկան, ընտրեաց աշակերտս իւր երկոտասանս զորս և առաքեալս անուանեաց առ ի քարոզութիւն ամենայնի զոր լուան և տեսին ի նմանէ: Իսկ քահանայապետից և ծերոց Հրէից նախանձեալ ընդ նմա[յ] վասն բազում սքանչելեացն զոր առնէր ի մէջ նոցա, դատապարտեցին զնա ի մահ: Եւ մի յաշակերտաց նորա եղև մատնիչ և մատնեաց զնա[յ] ի ձեռս Հրէիցն: Եւ կալեալ զնա ետուն ի ձեռս դատաւորին իւրեանց. և բազում ինչ հա(յ)հոյեալ ի նմանէ, հրամայեաց հանել զնա ի խաչ: Եւ համբերեալ ամենայնի մարմնով, զի զմեզ ի մեղաց ազատեսցէ, այն որ ոչ գործեաց մեղս և ոչ գտաւ նենգութիւն ի բերան նորա: Եւ իջեալ ի դժոխս աւե-

բեաց զնա. և զյաւիտենից ազդեցեալ հոգւոն
ոք ի նմա[յ]՝ ազատեաց ի կեանս. և անշիջա-
ցեալ ի վերայ խաչին, էջ ի գերեզման. և
երեքաւրեայ յարուցեալ ի մեռելոց, յաղ-
թեաց մահու. և երևեցաւ աշակերտաց իւ-
րոց յետ յարութեանն, զխաղաղութիւն պար-
գևելով նոցա և նոքաւք ամենայն աշխարհի.
և յետ քառասուն աւուր յերկինս համբար-
ձաւ և նստաւ ընդ աջմէ Հաւր: Եւ դար-
ձեալ գալոց է նովին մարմնովն դատել զա-
մենայն աշխարհ: Եւ յետ համբառնալոյն
յերկինս, առաքեաց զմխիթարիչ Սուրբ Հո-
գին առ ընտրեալ աշակերտսն իւր ի կերպս
հրեղէն լեզուաց. և սկսան խաւսել յաւտար
լեզուս որպէս և հոգին տայր բարբառել
նոցա: Եւ երթեալ իւրաքանչիւր յառաքե-
լոյն ի վիճակս իւրեանց, սկսան քարոզել
զճշմարիտ հաւատս քրիստոնէութեան, և
մկրտել յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն
Սրբոյ. և ուսուցանել զամենեսեան պահել
զպատուիրանս Փրկչին. և լուսաւորել զա-
մենայն հեթանոսս ի գիտութիւն ճշմարտու-
թեան. և զգիւտական պաշտաւն կռոցն հա-
լածել ի նոցանէ: Ցորոց մին ի նոցանէ ա-
ռաքեցաւ յերկիրս ձեռում ի ձեռն Հոգւոյն
Սրբոյ: Արդ՝ փոքր ի շատէ ծանուցի քեզ
յաղագս Աստուծոյն իմոյ. ապա եթէ ըղ-
ջնորհս նորա[յ] ընկալցիս, յայնժամ կատա-
րելա[յ]պէս ծանիցես զամենայնն, եթէ ար-
ժանի լիցիս ծառայ լինել նմա:

Զայս ամենայն իբրև լուաւ Յովասափ որդի Թագաւորին, առ ժամայն յարուցեալ յաթոռոյն իւրմէ և գիրկս արկեալ ծերոյն ասէ. Ուրեմն, հայր պատուական, ա՞յս էր մեծագին մարգարիտն զոր ծածկեալ ունէիր և ոչ կամէիր ումեք յայտնել: Զի յորժամ լուայ բանս ի բերանոյ քումմէ, իսկոյն ծագեաց լոյս շնորհաց ի սրտի իմում, և տրտմութիւնն զոր ունէի ի սրտի իմում աւուրս բազումս, համբարձաւ յինէն: Եւ եթէ այլ ես գիտես ինչ վասն այդմ իրաց, աղաչեմ զքեզ մի հեղգար, այլ պատմեա՛ ինձ զամենայն:

Բարղամ ասէ. Ճշմարիտ ասեմ, տէր իմ և Թագաւոր, այս էր մեծ խորհուրդն յաւիտենից ծածկեալն. և ի վաղճան աւուրցըս այսոցիկ յայտնեցաւ ազգի մարդկան: Զի յառաջագոյն բազում մարգարէք նախագուշակեալ, քարոզեցին ի ձեռն շնորհաց Հոգւոյն Սրբոյ զեղեալ փրկութիւն մարդկան: Եւ կարաւտ մնային տեսանել զնա և ոչ տեսին. բայց ի վաղճան ժամանակի յայտնեցաւ ազգի մարդկան անտեսանելին ամենայն արարածոց. և որք հաւատան ի նա և մկրտին, կեցցեն և որք ոչն հաւատան, դատապարտեսցին յաւուրն դատաստանի:

Յովասափ ասէ. ամենայն ասացելոցդ ի քէն ճշմարիտ և ուղիղ սրտիւ հաւատամ. և զքարոզեալդ ի քէն Աստուած խոստո-

վանիմ. այլ կամիմ գիտել եթէ զինչ է մը-
կրտութիւնն զոր հաւատացեալք առնուն:
Թարգման ասէ. մկրտութիւնն հաստատու-
թեան արմատ է՝ սուրբ և անարատ հաւա-
տոյ: Մկրտութիւնն մաքրութիւն է ամենայն
մեղաց. քանզի որք ծնանին վերստին ի ջրոյ
և ի հոգւոյ, որպէս ասաց Փրկիչն մեր, առ-
ժամայն առաջին փառացն և պատուոյն
արժանանան, եթէ պահեսցեն ճշմարտու-
թեամբ զմկրտութեանն շնորհ: Քանզի մը-
կրտիմք ըստ տէրունական ձայնին՝ յանուն
Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. և նոյն
ժամայն ի մկրտելն իջանէ շնորհք Հոգւոյն
Սրբոյ առ ի պայծառացուցանել զմեզ, և
աստուածատես առնել, և նորոգել յամե-
նայնի որպէս յառաջ քան զմեղանչել մարդ-
ւոյն, և ամենայն հնութիւն մեղաց ի ձեռն
մկրտութեանն ջնջի միջնորդութեամբ Հոգ-
ւոյն Սրբոյ: Եւ ժառանգորդ լինելով վերըս-
տին կենացն ի ձեռն աւազանին յորդեգրու-
թիւն Հաւրն երկնաւորի, և եղբայր կոչի
Քրիստոսի միածնի Որդւոյն Աստուծոյ. ըն-
դունի զգրոշմն վկայութեան և զշնորհս Հոգ-
ւոյն Սրբոյ. քանզի եկեալն ի փրկութիւն
ազգի մարդկան Տէրն մեր և Փրկիչն Յիսուս
Քրիստոս այսպէս պատուիրեաց: Եթէ ոչ ոք
ծնցի ի ջրոյ և ի հոգւոյ, ոչ կարէ մտանել
յարքայութիւնն Աստուծոյ: Վասն որոյ յա-
ռաջ քան զամենայն զայս աղաչեմ զքեզ,
որդեակ, զի առցես զշնորհս մկրտութեան

և ի ձեռն նորա[յ] հանդերձեալ լուսոյն արժանաւորեսցին:

Ցոփասաց ասէ. զի՞նչ է հանդերձեալ յոյսն այն, զոր առանց մկրտութեան ոչ ոք կարէ արժանաւորել նմա. և զի՞նչ է արքայութիւնն երկնից զոր ասեսդ. և ուս(տ)ի՞ եղէ լուեալ քո զամենայն բանդ, վասն մարմնացելոյն Աստուծոյ: Եւ յորժամ մեռանիմք, յետ մահուան զի՞նչ լինելոց եմք. և կամ ե՞րբ այլ ժամանակ կենաց յետ ելանելոյ մեր յաշխարհէ աստի. աղաչեմ զքեզ պատմեա ինձ զամենայն:

Բարդամ ասէ. յոյս հանդերձեալ բարեացն արքայութեանն երկնից են, զոր ոչ կարէ իմանալ միտք մարդկան և ոչ լեզու պատմել զայնքան բարութիւնն. քանզի զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ, պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց: Եւ յորժամ ելանեմք ի սնոտի զբաղմանէ աշխարհիս և պահել եղեմք զպատուիրանն Աստուծոյ, արժանի լինիմք այնմ[ն] բարութեանց անանց լուսոյն և անվախճան կենացն և անսպառ ուրախութեանցն. և ընդ Աստուած իսկ միաւորիմք. որպէս և գրեալ է. Աստուած ընդ աստուածս միաւորեալ, այսինքն աստուածացուցանել զմեր տկարացեալ մարմինս: Այլ վասն որոյ հարցեր. թէ ո՞րպէս զամենայն պատմութիւնս մարմնացելոյն Աստուծոյ գիտես. առեալ է իմ ի սուրբ Աւետարանէն. որպէս պատ-

մէ զամենայն խորհուրդ անաւրէնութեանս մի ըստ միոջէ, զոր գրեցին ականատեսք և սպասաւորք եղեն բանին կենաց։ Վասն որոյ և յառաջագոյն ասացի. թէ ընտրեաց Իւր աշակերտս զորս և առաքեալս անուանեաց, և նոցա ետուն մեզ գրով զամենայն սքան-չելիսն և զվարդապետութիւնս մինչև ի համբառնալն նմա յերկինս։ Զոր և մի ոմն ի կարի սիրելեացն աշակերտաց Իւրոց ի բուն Աւետարանին Իւրո(յ) այսպէս ասէ. բայց է և այլ ինչ բազում զորս արար Յիսուս, զոր եթէ գրեալ էր մի ըստ միոջէ, կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր տանել զգիրսն զոր եթէ գրեալն էին։ Եւ յոյնժ ի չորից սուրբ աւետարանչացն պատմեա(լ է) մեզ վասն մարմնանալոյ Փրկչին. և վասն նշանացն և վարդապետութեանն. և վասն փրկական չարչարանացն և փառաւորեալ երեքաւրեայ յարութեանն և համբառնալոյն յերկինս. և յաղագս ահաւոր և հրա[յ]խաղաց կրկին գալստեանն։ Քանզի գալոց է միւս անգամ Որդին Աստուծոյ յերկիր՝ անճառ փառաւք և բազմութեամբ երկնաւոր զաւրաց առ ի դատել զամենայն ազգս մարդկան. և հա-տուցանել իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց։

Քանզի որպէս ի ձեռն առաջին մարդոյն յանցանաց մահ եմուտ յաշխարհս, զնոյն և զամենայն ծնունդս նորա[յ] առ հասարակ մեռանելով և ոչ ոք կարէ զերծանել ի բաժակէ մահու։ Եւ է մահն որոշումն հոգւոյ և մարմ-

նոյ, և որ ի հողոյ ստեղծեալ է մարմին յո-
րոշել հոգւոյն դառնայ ի հող ուստի ստեղ-
ծաւ: Իսկ անմահ հոգին որ յԱստուծոյ, եր-
թայ առ արարիչն իւր ի տեղի ուր պատրաս-
տեալ է նմա[յ] Աստուած ըստ գրոց իւրոց:
Ապա[յ] ի կատարումն ժամանակիս այսո-
րիկ, գայ Որդին Աստուծոյ փառաւք մեծաւ
ի դատել զամենայն երկիր. և յահէ փառաց
նորա զաւրութիւնք երկնից շարժեսցին. և
ամենայն դասք զուարթնոցն ահիւ կացցեն
առաջի նորա[յ]:

Ցայնժամ ձայնիւ հրեշտակապետին և
ահաւորա[յ]գոչ փողոյն յաւիտենից, ննջե-
ցեալքն կացեն առաջի ահեղ ատենին: Եւ
զի՞նչ է յարութիւն եթէ ոչ դարձումն իւ-
րաքանչիւր հոգւոյ ի մարմին իւր. քանզի
յառնէ իսկ ապականեալ մարմինս այս անա-
պական բնութեամբ յաւուր յարութեանն:
Արդ՝ դու մի անհաւատար լինիցիս, այլ վասն
յարութեանն մեռելոց ուսուցանեն քեզ ծա-
ղիկք երկրի և խոտ դալարւոյ. թէ ո՞րպէս
ի ժամանակս ձմեռայնոյ ապականին և ան-
յայտ լինին, իսկ ի շնչել գարնանային աւ-
դոյն իւրաքանչիւր բոյս և ծաղիկ ի սերման
իւրում երևի: Արդ՝ որ յանէութենէ յէու-
թիւն ածէ զմարդն, կարող է և զհոգի ի մար-
մին անդր դարձուցանել անապականաբար:
Ցայնժամ որք ի գերեզմանս կացեն, լուիցեն
ձայնի Որդւոյն Աստուծոյ և եկեսցեն ար-
տաքս:

Յայնժամ աթոռք դնին և հինաւուրցն նստի ըստ Դանիէլի. և ամենայն գաղտնիք մարդկան յայտնին առաջի նորա. և անդ ոչ գոյ մի միւսոյ վրէժխնդիր կամ պատիւ մեծութեան, կամ սուտ պատճառք պատասխանեաց, կամ կաշառ անիրաւութեան. քանզի անաչառ և արդար է դատաւորն, որ դատէ զամենեսեան ճշմարիտ և արդար դատաստանաւ:

Եւ յայնժամ երթիցեն մեղաւորքն ի տանջանսն յաւիտենականս և արդարքն ի կեանսն յաւիտենականս: Արդ՝ փութասցուք այսուհետև ճշմարիտ վարուք, զի արժանասցուք աջակողմեան դասուն:

Յովասափ ասէ. մեծ և սքանչելի բանս պատմես ինձ, ով մարդ, եթէ արդար է որ յետ մահուան կենդանանայ մարդ: Բայց ո՞րպէս կարես զայդ ինձ հաւատալի առնել, զոր ոչ ես տեսեալ աներևոյթ իրաց, ո՞րպէս հաւատամք որ զաներևոյթս պատմես մեզ: Բարղամ ասէ. յեղելոց իսկ իրացն հաւատամք և հանդերձելոցն. քանզի և որք զանցեալսն ճշմարտիւ ուսուցին մեզ, գիտեմք զի և զհանդերձելոցն ճշմարիտ են: Քանզի ինքն Տէրն մեր Յիսուս Քրիստոս ի սուրբ Աւետարանի անդ ասէ. եթէ եկեսցէ ժամանակ զի մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ, և որք լուիցենն կեցցեն. որոց բարիս գործեալ իցէ՝ յարութիւն կենաց. և որոց չար արարեալ իցեն՝ յարութիւն դատաստանաց:

Եւ դարձեալ եթէ վասն յարութեան մեռելոց. չիցէ՞ ընթերցեալ ձեր զասացեալսն յԱստուծոյ. ես եմ Աստուած Աբրահամու և Աստուած Սահակա(յ) և Աստուած Յակոբայ. և ոչ է Աստուած մեռելոց այլ կենդանեաց: Քանզի ի վերջնումն աւուրն առաքեսցէ զՈրդի մարդոյ զհրեշտակս իւր, և ժողովեսցեն զամենայն գործողս չարեաց, և արկցեն զնա[յ] ի հնոցն. անդ եղիցի լալ և կրճտել ատամանց: Յայնժամ արդարքն ծագեսցեն իբրև զարեգակն յարքայութեանն երկնից: Քանզի բազում նշանս և սքանչելիս եցոյց Փրկիչն յերկրի և բազում մեռեալս յարոյց: Զորեքաւրեա(յ) մեռեալ զոմն ձայնիւ կոչեաց, և առ ժամայն եհան զնա[յ] ի գերեզմանէն կենդանի՝ նախադուշակ յարութեան մեռելոց: Ապա և ինքն յարուցեալ յերրորդ աւուր, եղև պտուղ և անդրանիկ ամենայն ննջեցելոց, զնոյն և աշակերտք նորա քարոզեցին յաշխարհի զյարութիւն մեռելոց, քանզի որ էր գլուխ առաքելոց՝ երանելին Պաւղոս այսպէս գրեաց վասն յարութեան մեռելոց: Ապա եթէ Քրիստոս քարոզի եթէ ի մեռելոց յարուցեալ է. զիարդ ասեն ոմանք ի ձէնջ եթէ յարութիւն մեռելոց չիք. բայց արդ գիտեմք ճշմարիտ եթէ յարութիւն մեռելոց և հատուցումն իւրաքանչիւր գործոց լինելոց է: Որպէս և գրեալ է. թէ որ արարուցանէ ումեք բաժակ մի ջուր ցուրտ միայն յանուն աշակերտի

իմոյ, ոչ կորուսցէ զվարձս իւր յաւուր դատաստանին իմոյ: Եւ դարձեալ ասէ. յորժամ եկեսցէ Որդի մարդոյ փառօք Հօր իւրոյ և ամենայն հրեշտակօք ընդ Նմա[յ], յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց. և ժողովեսցին առաջի Նորա[յ] ամենայն ազգք երկրի. և մեկնեսցէ զնոսա ի միմեանց և կացուսցէ զաւդիսն ընդ աջմէ և զայծիսն ընդ ձախմէ իւրմէ: Յայնժամ ասասցէ Թագաւորն ցայնոսիկ որ ընդ աջմէն իցեն. եկայք աւրհնեալք Հաւր իմոյ ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն ի սկզբանէ աշխարհի. զի քաղցեա և ետուք ինձ ուտել. ծարաւեցի և արբուցիք ինձ. և զայս ասացեալ առաքեսցէ զնոսա[յ] ի կեանսն յաւիտենից: Եւ թէ որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան, խոստովանեցից և ես զնմանէ առաջի Հաւր իմոյ: Եւ դարձեալ այլ առակ արկ Փրկիչն վասն հատուցման իւրաքանչիւր գործոց:

Այր մի էր մեծատուն և զգենոյր բեհեզս և ծիրանիս. և ուրախանայր հանապազ առատապէս: Եւ աղքատ մի Ղազարոս անուն անկեալ դնէր առ դրան նորա վիրաւորեալ, և ոչ երբէք արժանացոյց զնա մեծատունն ի փշրանաց սեղանոյն իւրոյ: Եւ ի վախճանել երկոցունցն, Ղազարոս գնաց ի գոգն Աբրահամու, և մեծատունն յայրումն հրոյ. և ի հեռուստ աղաչէր զԱբրահամ առաքել առ նա[յ] զՂազարոս, զի թացցէ զծագ-

մատին իւրոյ ի ջուր և մերձեցուսցէ ի շըր-
թունս նորա: Եւ Աբրահամ ոչ լուաւ նմա,
այլ յիշեցուցանէր նմա զբարութիւնսն զոր
առ մինչ էրն յաշխարհի:

Այլ առակ արկ Փրկիչն. նմանեցաւ,
ասէ, արքայութիւնն երկնից տասն կուսա-
նաց, որոց առեալ զլապտերս իւրեանց ելին
ընդ առաջ փեսայի և հարսինն. հինգն յի-
մարք էին և հինգն իմաստունք: Յիմարքն ոչ
առին իւղ ողորմութեան ընդ ինքեանս. և
լապտերք նոցա շիջան: Եւ ի հաս(ար)ակ գի-
շերի ձայն եղև. ահա[յ] փեսայ գայ, արիք
ընդ առաջ նորա. և վասն այնորիկ հասա-
րակ գիշերի ասաց, զի ոչ ոք գիտէ զժամա-
նակ գալստեան Որդւոյն Աստուծոյ: Յայն-
ժամ յարեան ամենայն կուսանքն և իմաս-
տունքն մտին ընդ փեսային յառագաստն
և փակեցաւ դուռն: Իսկ անպատրաստքն
տեսին շիջեալ զլապտերս իւրեանց, և գնա-
ցին գնել իւղ, և երբև եկին՝ գտին փակեալ
զդուռս առագաստին: Եւ սկսան արտա-
քուստ աղաղակել. տէր տէր բաց մեզ: Եւ
թագաւորն ի ներքուստ պատասխանեալ ասէ.
ամէն ասեմ ձեզ՝ ոչ ճանաչեմ զձեզ. ի բաց
կացէք յինէն ամենայն մշակքդ անիրաւու-
թեան:

Եւ այժմ դու գիտասջիր ճշմարիտ.
եթէ հատուցումն լինելոց է ամենայն մարդ-
ւոյ բարւոյ և չարի:

Եւ դարձեալ ասէ Փրկիչն. եթէ ընդ

ամենայն դատարկ բանից համարս տալոց էք յահագին յաւուրն: Եւ Եսայի մարգարէ այսպէս ասէ ի դէմս Աստուծոյ. եթէ եկեսցեն ամենայն ազգք ի ծագաց մինչև ի ծագս երկրի և երկիրպագցեն առաջի իմ յԵրուսաղէմ, ասէ, Տէր. և տեսցեն մեղաւորք զտանջանս իւրեանց. զի հուր նոցա[յ] ոչ շիջցի և որդն նոցա[յ] ոչ մեռանի: Եւ մարգարէն Յովէլ ասէ. ահաւասիկ աւր Տեառն մերձեալ է լի բարկութեամբ. և եղիցի ամենայն երկիր անապատ առաջի նորա. և հալեսցին լերինք որպէս զմոմ. և ամենայն մեղաւորք կորիցեն յերեսաց Տեառն: Յայնժամ գալարեսցին երկինք և աստեղք ամենայն կորիցեն, և հարից զամենայն ամբարշտեալս աջով իմով, և ոչ ողորմեցայց նոցա[յ], ասէ Տէր: Եւ դարձեալ Եսա(յ)իասէ. վա՜յ որ արդարացուցանէ զամբարիշտն և զարդարն դատապարտէ: Եւ Ամոս մարգարէ ա՜յսպէս ասէ. մերձեալ է աւր Տեառն զօրութեամբ և ձայն Տեառն զարհուրեցուցանէ զամենայն երկիր: Եւ մարգարէն Ամբակում ասէ. Աստուած ի յարևելից եկեսցէ և սուրբն ի Հովանաւոր լեռնէ: Ծածկեսցէ զերկիր վայելչութիւն փառաց նորա, և ի նմանէ լցան տիեզերք աւրհնութեամբ: Եւ մարգարէն Դաւիթ ասէ. Աստուած մեր յայտնապէս եկեսցէ. և դարձեալ՝ արարեր զդատաստանս իմ և զիրաւունս իմ և նստար յաթոռ դատաւոր արդարութեան:

Բազում և այլ աւրինակք մարգարէքն նախագուշակեցին վասն հանդերձեալ դատաստանին և հատուցման ըստ իւրաքանչիւր գործոց. և այսու հաւատամք եթէ ճշմարիտ է յարութիւն մեռելոց. զի ահն ունիմք յաւիտենական կենացն:

Ցոլասափ ասէ. զամենայն ճշմարիտ և բարիոք ծանուցեր ինձ. արդ ասա[յ] թէ զի՞նչ արժան է գործել, զի ապրեսցուք ի յաւիտենական տանջանացն և հասցուք ուրախութեանն զոր արարածքն[ա] առնուն ի Տեառնէ: Բարղամ ասէ. որդեակ, գրեալ է ի գիրս Գործոց Առաքելոցն. թէ մինչդեռ ուսուցանէր Պետրոս, զղջացան ժողովուրդն որպէս և դու այժմ, և ասեն ցՊետրոս. զի՞նչ գործեսցուք: Եւ Պետրոսի պատասխանի տուեալ ասէ. ապա[յ]շաւեցէք և մկրտեցարուք ի թողութիւն մեղաց ձերոց, և ընկալարուք զպարգևս Հոգւոյն Սրբոյ: Եւ եղև ի մկրտել նոցա[յ], էջ շնորհք Հոգւոյն Սրբոյ ի նոսա[յ] որպէս ի վերա(յ) առաքելոցն: Արդ՝ եթէ և դու կամիս ապրել զնոյն գործեայ. առ զխաչ քո և եկ զկնի խաչելոյն. որ կոչէ զքեզ ի խաւարէ ի լոյս, ի մահուանէ ի կեանս, յանգիտութենէ ի գիտութիւն ճշմարտութեան. քանզի որ խաւար է, անգիտութիւն է ամենեցուն որք պաշտեն

---

[ա] Համ. արդարքն.

զնա[յ]: [ա] Գրեալ է. կուռք հեթանոսաց դեք են. [բ] բերան ունին և ոչ խաւսին, աչս ունին և ոչ տեսանեն. նման նոցա եղիցին ամենեքեան, ոյք պաշտեն զնոսա:

## Առակ Բ.[1]

Իցեն և ոմք զկուռս պաշտեն առն որսորդի [գ] աւրինակ, որ յորսայն էր որս կալաւ ճնճղուկ մի փոքր: [դ] Եւ մինչդեռ կամէր զենուլ զնա[յ], տուաւ թռչնուն բարբառ և ասէ ցորսորդն. զինչ աւգտէ [ե] քեզ ուտել զիս. զի չաւգտիս ընաւ յինէն, այլ եթէ արձակես զիս ի կապանաց աստի, ասացից քեզ երիս բանս խրատ, զոր եթէ կարող ես պահել՝ մեծ աւգտիս ի կեանս քո: Զարմացեալ մարդույն ընդ բարբառ նորա[յ], արձակեաց զնա[յ]. և թռուցեալ ճնճղուկն նստաւ ի վերա(յ) ճղի միոյ: Եւ անտի սկսաւ վերանալ յաւդն [զ] և ասէ ցորսորդն. անա-

---

ա. Համ. որ պաշտեն զկուռսն.

բ. Համ. կուռք հեթանոսաց ոսկի և արծաթ են.

գ. Համ. առն հաւորսի.

դ. Յուն. աւել ունի. "սոխակ կոչեին զնա,,.

ե. Համ. օգուտ է.

զ. Յուն. չկայ "և թռուցեալ... յաւդն:,,

[1] Համ. Առակ երրորդ զոր ասաց. Տես Զօտըն. էջ 109. VII. Parabole de l'oiseleur et l'oiseau. առակ թռչնորսի և թռչնոյ.

ւատ բանի մի հաւատաս. և ընդ անցեալ իրս մի՛ տրտմի՛ր, և ուր չհասանիս մի՛ արձակիր:[ա] Եթէ զայս խրատ պահեսցես, մեծ ուրախութիւն ընկալցիս ի կեանս քո: Իբրև սկսաւ որսորդն գնալ զճանապարհս իւր, փորձեաց զնա[յ] ճնճղուկն՝ եթէ պահել լցէ զբանիցն զոր ասաց նմա: Զայնեաց նմա յաւդիցն ուր թռչէր և ասէ. աւա՜ղ զքո անմտութիւնդ, ով մարդ, զի ծանր և զեղեցիկ իր[ք] կորեաւ ի քէն. քանզի կար ի փորի իմում մարգարիտ մի մեծագոյն քան զջայլամի ձու: Իբրև լուաւ որսորդն զբանն, սկսաւ ապաշաւել զարձակումն ճնճղկին. և համբարձեալ զձեռս իւր յաւդն, կամէր ունել զթռչունն: Իբրև ոչ կարաց ասէ. եկ էջ յաւդիցդ, զի տարայց զքեզ ի տուն իմ և մեծաւ պատուաւ[որ] արձակեցից:

Եւ ճնճղուկն ասէ. այժմ ծանեա[յ] զանմտութիւն քո, ով այր դու, քանզի ուրախութեամբ ընկալար զխրատն իմ, և յերեք բանէն և ոչ զմինն չպահեցեր: Ասացի քեզ. եթէ ընդ անցեալ իրս մի՛ տրտմիր. [բ] և այժմ տեսանեմ զերեսս քո այլագունեալ, վասն որոյ զերծա(յ) ի ձեռաց քոց, զղջանալով ի վերայ անցեալ գործոյ: Եւ դարձեալ ասացի քեզ թէ ուր չհասանիս մի արձակիր. և դու ջանաս յաւդոյս իջուցանել զիս: Եւ

---

ա. Յուն. խրատների դասաւորութիւնը հակառակ է

բ. Հմմ. մի ապաշաւիր և ահա տեսանեմ.

դարձեալ ասացի քեզ. եթէ անհաւատ բանի մի՛ հաւատար և դու հաւատացեր. զիա՞րդ գտանի ի փորի իմում մարգարիտ քան զիս մեծագոյն, և ո՞չ իմանաս, անմիտ, եթէ ես ամենայն անձամբս ոչ եմ որչափ զջայլամի ձու. արդ որպէս[բ] գտանի առ ի նորա չափ մարգարիտ:

Այնպէս անմիտք են ամենեքեան ոյք յուսացեալ են ի կուռս. քանզի գործոց ձեռաց իւրեանց երկրպագանեն, և համարին փրկել նոքաւք: Արդ՝ ո՞րպէս կարէ արարածն փրկել զարարիչն իւր: Այլ և պահապանս կացուցանեն նոցա, զի մի եկեալ գողոց գողանայցեն զնոսա[յ]. և զայս ոչ իմանան՝ թէ որ յինքեանց պահին, զիա՞րդ կարեն նոցա պահապան լինել, որում ոչ կարող են երբէք: Նման նոցա[յ] եղիցին և երկրպագուք նոցա. և որք վարձեալ զոսկերիչս արարին կուռս ձեռագործս, և անկեալ երկիր պագանիցեն նոցա[յ], և շրջեցուցանիցեն զնոսա[յ] ուր և կամին, որպէս և գրեալ է. զոհեցին դիւաց և ոչ արարչին իւրեանց: Վասն այնորիկ պատուէր տայ մեզ մեծաբարբառն Եսա(յ)իաս. ելէք, ասէ, ի միջոյ նոցա և ի պիղծս նոցա մի մերձենայք, ասէ Տէր: Եւ առաքեալն Պաւղոս ասէ. զի՞նչ բաժին կայ լուսոյ ընդ խաւարի, կամ Քրիստոսի ընդ Բելիարայ, կամ հաւատացե-

բ. Զօրընբերկի հատուածը այսքան է.

լոյն ընդ անհաւատսն: Այլ մեզ մի է Աստուած՝ Հայր յորմէ ամենայն. և մի Տէր Յիսուս Քրիստոս՝ որով ամենայն. և Հոգին Սուրբ՝ որում ամենայն ծունր կրկնեսցի երկնաւորաց և երկրաւորաց և սանդարա[յ]մետականաց: Քանզի նովաւ ստեղծաւ որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի. երևելիք և աներևոյթք. որ է Աստուած ճշմարիտ, հոգի շնորհաց, հոգի մխիթարութեան որպէս և գրեալ է. Եթէ բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և Հոգւով բերանոյ նորա ամենայն զաւրութիւնք նորա: Ամենայն որ Հաւր(է) է Որդւոյ է, և որ ինչ Որդւոյ է ի Հոգւոյն Սրբոյ է: Մի է Աստուած Հայր և ոչ յումեքէ. մի է Աստուած Որդի ծնեալ անժամանակ ի Հաւրէ. և մի Հոգի Սուրբ եղող ի Հաւրէ ոչ ծննդեամբ այլ առաքմամբ, քանզի ոչ էր երբէք Հայր և Որդի ոչ. և ոչ Հայր և Որդի և Հոգի ոչ: Անուն Հաւր Հայր է, քանզի միշտ ընդ նմա[յ] է Որդի. վասն այսորիկ կոչի Հայր. այսինքն ունելով զՈրդի միշտ ընդ իւր. և Որդին Որդի կոչի, զի ոչ էր յառաջ քան զՀայրն, այլ ի Հաւրէ է ծնունդն. վասն այսորիկ Որդի անուանի. և Հոգի ճշմարիտ միշտ ընդ Հաւր և ընդ Որդւոյ: Արդ՝ յորմէ ամենայն և յորում ամենայն և որով ամենայն. և յորմէն և յորումն և որովն. այսինքն մի բնութիւն և մի գոյութիւն ամենա[յ]սուրբ երրորդութեանն: Զայս ընկալաք և յայս մկրտեցաք

և զնոյն խոստովանիմք։ Արդ՝ եթէ հաւատաս և մկրտիս կեցցես, և եթէ ոչ հաւատաս դատապարտեսցիս. քանզի այդ ամենայն փառքդ և պայծառութիւնդ զոր ունիս անցաւոր է։ Գայ ժամանակ զի հանցեն զքեզ յայդմ պայծառութենէ փառացդ որպէս ոչ կամիս. և մարմին քո արդելուցու յանձուկ և ի փոքր գերեզմանի. միայն որոշեալ յամենայն սիրելեաց ծանաւթից և ազգականաց։ Եւ փոխանակ այսմ փափկութեան զոր ունիս և անուշահոտութեան. նեխիս և ապականիս և լինիս կերակուր որդանց. իսկ զհոգիդ արկանեն ի տեղի դատապարտութեան մինչև ի վերջնում աւուր յարութեանն մեռելոց. և յայնժամ մտանէ հոգիդ ի մարմինդ և երկոքին արկանին յայրումն հրոյ։ Արդ՝ այս ամենայն քեզ մնայ, եթէ անհաւատութեամբ մեռանիս։ Ապա[յ] եթէ հաւատաս այնմ, որ կոչեացն զքեզ ի փրկութիւն. թող զամենայն և երթ զհետ նորա, և ընկալցիս զյաւիտենական բարութիւնսն. և եթէ նստիցիս աներկիւղ լիցես և այլն։ Զի յուսացար ի Տէր և նա[յ] փրկեսցէ զքեզ. յայնժամ կարդասցես առ Տէր և նա[յ] լուիցէ քեզ. քանզի մերձ է Տէր առ այնոսիկ, ոյք մաշել են սրտիւք. որպէս և ասէ, եթէ լիցեն մեղք ձեր իբրև զյորդան կարմիր, իբրև զձիւն սպիտակեցուցից. զի բերան Տեառն խաւսեցաւ զայս։

Յովասափ ասէ. ամենայն բանք քո

ճշմարիտ են. և ես հաւատացի և հաւատամ, և զամենայն կռապաշտութիւն մերժեցի ի սրտէ իմմէ։ Այլ և նախ քան զգալդ քո առ իս, հանապազ յեր[ե]կուանայր միտք իմ ի կռոցն պաշտամանէ. և արդ կատարելապէս ատեցի, յորժամ առայ ի քէն զմնոտի կենցաղ ժամանակիս այսորիկ. մանաւանդ և զանզգայութիւն կռապաշտիցն. և արդ կամիմ ճշմարտիւ ծառայել ճշմարտին Աստուծոյ, եթէ կամեսցի Տէր Յիսուս։ Եւ արդ՝ պատրաստ եմ ի մկրտել. և զոր ինչ պատուիրես ինձ զամենայն պահեմ ուղղութեամբ։ Արդ զայս ասա[յ] ինձ. եթէ զի՞նչ պարտ է առնել յետ մկրտութեանն։

Բարղամ ասէ. յետ մկրտութեան ի բաց կալ յամենայն ախտից մեղաց և հաստատել ի վերա(յ) հիման ճշմարիտ հաւատոց. քանզի հաւատք առանց գործոց մեռեալ է, որպէս ասէ առաքեալ, և եթէ յայտնի են գործք մարմնոյն. այսինքն շնութիւն, պոռընկութիւն, արբեցութիւն, չարակնութիւն, ագահութիւն, չարախաւսութիւն, նախանձ և որ ինչ սոցին նման են. արդ որք[ա] սոցին հաղորդք են և զարքայութիւնն Աստուծոյ ժառանգել ոչ կարեն։ Իսկ պտուղ հոգւոյն այս է. հաւատք, յոյս, սէր, խոնարհութիւն, հեզութի՛ւն, երկայնմտութի՛ւն, խաղաղութի՛ւն, մարդասիրութի՛ւն, ա-

---

ա. Գաղ. ե. ժթ.

զաւթք, զղջումն, արտասուք: Զայսոսիկ պատուիրեմք պահել յետ մկրտութեան, զի այսպէս գրեալ է. թէ յորժամ ելանէ այս պիղծ ի մարդկոյ շրջի ըն(դ)անջրդին տեղի. և ի դառնալն իւրում եթէ ոչ գտանէ զմարդն մաքրե(ա)լ յամենայն չարեաց, առնու ընդ իւր այլ ևս եւթն յայսոց պղծոց և գայ մտանէ ի տեղի իւր. և լինի յետին մոլորութիւնն չար քան զառաջինն: Եւ Փրկիչն այսպէս պատուիրեաց առաքելոցն. երթ(այք) մկրտեցէք զնոսա՝ յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. ուսուցէք նոցա[յ] պահել զպատուիրանս իմ:

Եւ աւրէնքն որ տրւաւ ի Նախնումն Իսրայեղացւոցն այսպէս գրեալ էր. թէ մի շնա՛ր, մի սպանանե՛ր, մի գողանա՛ր, մի սուտ վկայեր. իսկ Քրիստոս պատուիրեաց. թէ ամենայն որ բարկանայ եղբաւր իւրում տարապարտուց պարտական է գեհենի հրոյն: Եւ յորժամ մատուցանիցես զպատարագն և ունիցիս խէթ ընդ եղբաւրն, թո՛ղ զպատարագն քո առաջի սեղանոյն. և երթ նախ հաշտեաց ընդ եղբաւրն քում, և ապա[յ] երթեալ մատուսցես զպատարագն քո: Եւ դարձեալ ասէ. ասացաւ առաջնոցն. թէ մի շնա՛ր, այլ ես և զարատ հայելն արգելից. և վասն երդմանն ասէ. ամենևին մի՛ երդնուլ, այլ և եղիցի ձեր բան, այոյն այո՛ և ոչն ո՛չ. և մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի. և մի՛ հոգայք թէ զինչ

ուտեմք կամ զինչ զգենումք. զի Քրիստոս տայցէ զայն: Խնդրեցէք զարքայութիւնն երկնից և զարդարութիւն նորա:

Եւ զայլ ամենայն պատուիրանսն քարոզեաց Ցովասափու: Ասաց առակ և առհասարակաց մահն, որ ոչ ոք զերծանի ի նմանէ. թէ զիարդ արհամարհէ մարդ զաւր վաղճանին և զերկիւղ յաւիտենական տանջանացն, և երթայ զհետ զբաղմանց աշխարհիս:

## Առակ Գ.

Այր ¹ մի փախուցեալ յերեսաց միեղջերոյն, և ի փախչելն իւրում անկաւ ի վիրապ մի խոր. և [յ]արձակեալ ա զձեռն կալաւ զձուղ մի ծառոյն, բ որ էր ի վերայ գբոյն, և զոտն հաստատեաց ի շուրթն գ վիրապին. և համարէր թէ բարւոք ամրացաւ: դ Եւ հա(յ)եցեալ տեսանէր երկուս մկունս. մին

ա. Համ. արձակեաց.

բ. Յուն. φυτοῦ τινὸς δραξάμενος զձուղ մի կալեալ կամ «զծառ» զբոյս կալեալ:. Արաբերէնը նման է հայերէնին. կալաւ զերկու ճիւղս որք աճէին յեզերս նորա:

գ. Համ. յափն.

դ. Համ. ապրեցաւ. Յուն. պատմութիւնը աւելի ընդարձակ է:

¹. Համ. առակ չորրորդ. Տես Զոտընբերգ. (էջ 111.) VIII. Parabole de l'homme et de u nicorne առակ մարդոյ և միեղջերին.

տոլխտակ և մին սեաւ, զի հատանէին [ա] ընդ-ծիւղն զոր կալեալն էր, և մերձ էր ի հատանել: Եւ հայեցեալ ի յատակ վիրապին. և անդ կայր վիշապ մի ահաւոր և բոց հրոյ ելանէր ի բերանոյ նորա. և բացեալ զբերանն մնայր անկանել մարդոյն: Հայեցեալ ի յայն տեղի, ուր ոտքն հաստատեալ կայր. և տեսանէ չորք գլուխք իժից զի հարկանէին զգարշապարս նորա. այլ ի ծառոյն իջանէր սակաւ ինչ քաղցրութիւն մեղեր. և նորա թողեալ զամենայն նեղութիւնսն. զահ միեղջերուին, և զատակութիւն վիշապին, որ մնայր կլանել զնա, և զծղոյն հատանելն ի մկանց անդի, և զիժսն որ կային առ ոտսն իւր. և մոռացեալ նորա զամենայն նեղութիւնսն, և բացեալ զբերան իւր ընդդէմ այն սակաւ մեղերն որ իջանէր ի ծառոյ անտի:

Այժմ նման են ամենեքեան որ զհետ սնոտի քաղցրութեան աշխարհիս ընթանան:

Արդ՝ մի եղջիւրուն աւրինակ է մահուն. որ վարէ ի ծննդենէ մինչև ի վախճան զամենայն ծնունդս Ադամայ: Իսկ գուբ վիրապին աշխարհս է. լի՛ ամենայն չարեաւք և մահաբեր որոգայթիւք: Եւ ճուղքն զոր ուտէին մկունքն, ժամանակս է իւրաքանչիւր կենաց, որ ուտի և մաշի տուընջեան և գիշերոյ և ունի մերձ ի հատանել: Եւ չորք

ա. Համ. որ կրծեալ ուտէին զծիւղն:

լծքն որ առ ոտուքն էին․ չորք բնութիւնքս է մարմնոյս, որք մի ըստ միոյ զաւրացեալ տկարա[յ]ցուցանեն զմարդն: Եւ վիշապն հրաբերան՝ որովայն դժոխոցն է, որ կայ և մնայ զամենեսեան կլանել․ իսկ քաղցրութիւն մեղերն որ կծանէր, քաղցրութիւն աշխարհիս է, որ ոչ տայ թոյլ փրկութեան սիրելեաց իւրոց:

Եւ Յովասափ յոյժ ընդունեցաւ[ա] զասացեալսն առակ ի նմանէ․ և աղաչէր զի այլ աւրինակ նման սոցին ասասցէ բան ինչ նմա, զի առաւել ես ծանիցէ զստուերական զբաղմունս աշխարհիս:

## Առակ Դ․

Բարղամ ասէ[դ]․ նման են որք յուսացեալ են յինչս աշխարհի,[բ] առն ումեմն, որ ունէր երիս սիրելիս․ զերկուսն սիրէր յոյժ, զի մինչև ցմահ ոչ ելանէր ի կամաց նորա[յ],[գ] իսկ զերրորդ սիրելին ունէր արհամարհեալ: Եւ ոչ երբէք արժա-

ա․ Համ․ յոյժ ուրախացաւ ի վերայ ասացեալ առակացս:

բ․ Համ․ ի մեծութիւն աշխարհիս:

գ․ Համ․ նոցա․ իսկ զերկրորդ․

դ․ Համ․ Առակ հինգերորդ․ Բարաղամ ասաց․ Զոտենբերգ (էջ 113․) IX. Parabole de l'homme et de ses trois amis առակ մարդոյ և երեք սիրելեաց իւրոց․

նա[յ]ցոյց զնա[յ] այնպէս պատուոյ և սի-
րոյ, որպէս երկուցն արարեալ էր. բայց
միայն սակաւ ինչ ծանութութիւն ունէր
առ նա[յ]: Եւ յանկարծակի հասին առ նա[յ]
ահեղ զաւրականք և առին զնա[յ] փու-
թանակի տանել առ թագաւորն. քանզի
պարտական էր յոյժ թագաւորին. և տա-
նէին զնա[յ] զի պատասխանի արասցէ հար-
կին իւրոյ բիւրուց քանքարաց: Եւ առ յոյժ
նեղել զաւրականացն,ա և խնդրէր զաքբ զի
եկեալ աւգնեսցէ նմա[յ] ի սոսկալի ատեան
թագաւորին:

Եւ ընթացեալ նախ առ առաջին սիրելին
իւր և ասէ. գիտես դու, ով սիրելի իմ,
թէ որպէս յամենայնի գ եղեալ եմ զկեանս
իմ վասն քո. արդ հայցեմ աւգնութիւն
ի քէն յայսմ նեղութեանս իմոյ: Պա-
տասխանի տուեալ սիրելոյն ասէ. զի՞նչ է
նեղութիւնդ քո որ յինէն աւգնութիւն
խնդրես: Եւ նա[յ] ասէ. վասն զի կոչէ զիս
թագաւորն: Եւ դարձեալ սիրելին ասէ. ոչ
կարեմ աւգնել քեզ յայդմ բանիդ, բայց
միայն տաց քեզ ի ճանապարհիդ քո երկուս
կտաւս որ ոչինչ աւգնեսցեն քեզ: Զայս
լուեալ ի նմանէ, գնաց առ երկրորդ սիրե-
լին և ասէ ցնա. գիտես, ով սիրելի իմ, թէ

ա. Համ. հրաւիրակացն:
բ. Համ. ի սիրելեաց իւրոց:
գ. Համ. աւել ունի. եղեալ եմ ընդ քեզ:

որչափ սիրեալ եմ զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց։ Արդ այսաւր եհաս ի վերա(յ) իմ վիշտ և նեղութիւն մեծ. քանզի կոչէ զիս թագաւորն ա և կամիմ զքեզ ընդ իս աշխատ առնել զի աւգնեսցես ինձ։ Եւ նա[յ] պատասխանի տուեալ ասէ. ոչ ունիմ ես այսաւր պարապութիւն գալ ընդ քեզ. քանզի ունիմ հոգս բազումս. այլ զամ յուղարկեմ զքեզ սակաւ ճանապարհ և դառնամ և այլ ընաւ ոչ աւգտակ լինէն։

Եւ նորա յուսա[յ]հատեալ ի բուն սիրելեացն, գնաց առ արհամարհեալն եր[կ]րորդ սիրելին որ ոչ երբէք արժանա[յ]ցոյց զնա[յ] կատարեալ սիրոյ, և ոչ ընաւ եղև նմա[յ] ուրախութեան հաղորդ։ Եւ ասէ ցնա[յ] ամաւթա[յ]լից երեսաւք. քանզի ոչ ունիմ բերան խաւսել ընդ քեզ, և աղաչել զի ոչ երբէք յիշես սէր յինէն կամ պարգևս. բայց սակայն որպէս զանձն-ծանաւթ աղաչեմ ըզքեզ, զի դժուարին նեղութիւնք հասին ի վերա(յ) իմ, և յայլ սիրելեացն իմոց ոչ գտի յոյս փրկութեան։ Արդ՝ այժմ եկեալ աղաչեմ զքեզ. եթէ կարաւղ ինչ ես աւգնեա[յ] ինձ յայսմ նեղութեանս, և մի յիշեր զառաջին անգթութիւնն իմ զոր ունէի առ քեզ։ Եւ նորա զուարթ երեսաւք պատասխանի տուեալ ասէ. ճշմարիտ սիրելի

ա. Համ. կոչէ զիս թագաւորն յատեան և խնդրէ համար պարտուց իմոց։

զքեզ, կիշեմ զայն սակաւ ծանաւթութիւնն զոր ունէիր առ իս. և արդ այսաւր սիրոյն քո երեքկին հատուցից քեզ. մի երկնչիր և մի զարհուրիր ամենևին, ես իսկ քան զքեզ յառաջ ընթանամ առ թագաւորն և աղաչեմ վասն քո, զի մի՛ չարչարեսցէ զքեզ. քաջալերեա այսուհետև, սիրելի իմ, և մի՛ տրտմի՛ր: Յայնժամ զղջացեալ առնն ասէ. վա՜յ ինձ, զոր ինչ ես գործեցի, լացից և ողբացից զանզգայութիւն մտաց իմոց. թէ որպիսի՞ սիրելեաց իմոց ցուցի զայնչափ ջերմեռանդն սէր, և զսիրելիս զայս որ պատուեցի որչափ արժան էր:

Յովասափ ասէ. մեկնեա ինձ զառակդ զայդ: Բարղամ ասէ. առաջին սիրելին մարդւոյն հարստութիւնն աշխարհիս է, զոր բազում անգամ ի մեծամեծ չարիս ա անկանի մարդ վասն նորա: Եւ յորժամ հասանի աւր վախճանի, ա՛յլ ոչինչ շահի ի նոցանէ, բայց միայն զկտաւս պատանացն: Իսկ երկրորդ սիրելի՝ կինն և որդիքն են և այլ ազգականքն. զոր հանապազ ունի զնոսա մտերիմ սիրելի իւր: Յայնժամ և նոքա[յ] զառաջին սէրն անտես առնեն, և ոչ ամենևին աւգնեն յաւր վախճանին. այլ միայն զհետ երթան յուղարկելով մինչև ի գերեզմանն և անդէն դառնան իւրաքանչիւր ի հոգս իւր: Իսկ երրորդն՝ արհամարհեալն սիրելի այս է.

---

ա. Համ. վնաս և յորդայթս:

հաւա՛տք, յո՛յս, սէ՛ր, ողորմութի՛ւն, մարդա[յ]սիրութի՛ւն և այլ գործք բարեաց. զոր միայն ճանաչեմք զնոսա այլ ոչ գործեմք. և այս են կարող յառաջ ընթանալով առաջի մեր, յորժամ հրաժարեմք յաշխարհէ. և աղաչեն զՏէրն վասն մեր փրկել զմեզ ի ձեռաց դժոխոց և ի դժուարին պատասխանատ(ու)ութենէն: Այն է ճշմարիտ և աւգտակար սիրելին ոգւոց մերոց, որ զփոխարէնն բազմապատիկ հատուցէ մեզ յաւուրն հատուցման:

Ցովսափ ասէ. բարի եղիցի քեզ ի Տեառնէ քումմէ, ով իմաստուն այր դու, քանզի յոյժ ուրախացուցեր զսիրտ իմ: Արդ՝ ասա ինձ և զայս. թէ ո՞րպէս որոշեցար դու ի սնոտի կենաց աշխարհիս այսորիկ. և ո՞րպէս կարող է մարդ ծառայել Աստուծոյ: Բարղամ ասէ. Փրկիչն մեր Յիսուս այսպէս ասէ ի սուրբ Աւետարանի անդ. թէ ի տան Հաւր իմո(յ) աւթեվանք բազում են: Եւ առաքեալն ասէ. այլ փառք արեգականն և այլ փառք լուսնի և այլ փառք աստեղաց. արդ իւրաքանչիւր ոք ըստ գործոց իւրոց առնու զհատուցումն. քանզի առաւել քան ըզկարն ոչ պահանջէ Աստուած: Այլ ես ոչ եթէ ըստ իմում կամաց չոգայ զհետ Տեառն, այլ ինքն ըստ բազում ողորմութեան իւրոյ կոչեաց զիս: Քանզի գրեալ է. եթէ ոչ ոք գայ առ իս եթէ ոչ իցէ նմա[յ]տուեալ ի վերուստ: Արդ՝ յորժամ մանուկ էաք՝ զհոգեորականին

զհետ ոչ երթայաք. և այժմիկ ի կատարել հասակիս, ոչ է արժան զմանկութեանն գործել: Քանզի և Պաւղոս ասէ. գոհանամ զԱստուծոյ իմոյ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի որ եբաց զաչս իմ ճանաչել եթէ խորհուրդ մարմնոյ մահ է, իսկ հոգւոյն՝ կեանք յաւիտենից ի Քրիստոս Յիսուս: Արդ՝ և դու եթէ զհոգևորն առցես ի Քրիստոսէ յառաջ քան զքեզ, յղեա զգանձս և զմեծութիւնս քո, զի ընկալցին զքեզ ի յարկսն յաւիտենից: Որպէս և Փրկիչն ասէ. արարէք ձեզ բարեկամս ի մամոնայէ անիրաւութեան:

Յովասափ ասէ. ո՞րպէս կարեմք առաքել առաջի մեր զի ընկալցին զմեզ ի յաւիտենական հանգիստն որպէս ասեսդ: Բարղամ ասէ. ի ձեռն ողորմութեան աղքատաց. զի թէ ոչ մերկանաս ի ստացուածոց և նախ զգոսա[յ] առաքես, ոչ կարես մտանել յարքայութիւնն երկնից: Գրեալ է ի սուրբ Աւետարանին. թէ մեծատուն ոմն հարցանէր զՅիսուս և ասէր. վարդապետ բարի, զինչ գործեցից (զի) զկեանսն յաւիտենականս ժառանգեցից. պարծելով ի միտս իւր թէ զամենայն աւրէնս պահեցի ի մանկութենէ իմմէ: Եւ զնա[յ] Յիսուս կամեցաւ պապանձեցուցանել, ասէ ցնա[յ]. մի ինչ պակաս է ի քէն. երթ վաճառեա զինչս քո և տուր աղքատաց և դու առ զխաչն և եկ զկնի իմ:

Եւ նա ընդ բանսն խոժոռեալ գնայ

տրտում. զի ունէր ինչս բազումս: Եւ Յիսուս ասէ. դիւրին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ մտանել: Եւ զայս տէրունական պատուէր լուեալ ամենայն որոց որք հաճոյացան Աստուծոյ և թողեալ զամենայն ինչ, գնացին զհետ Յիսուսի Քրիստոսի. ոմանք նահատակութեամբ կատարեցան, և այլք ճգնեցան զամենայն աւուրս կենաց իւրեանց, և իւրաքանչիւր ըստ իւրում շնորհի պսակեցան ի Քրիստոսէ:

Յովասափ ասէ. իցե՞ն և այլք ոմանք որ քարոզեցին զայդ. եթէ դու միայն քարոզես զբարութեան ճանապարհն: Բարղամ ասէ. յերկրին ձերում ոչ ոք գոյ. քանզի սպանանէք հայրն քո հալածեաց զամենայն քրիստոնեայս յերկրէս ձերմէ. զորս չարաչար մահուամբ նահատակեաց և զոմանս հալածականս արար յերկրէ աւատր, և զայլս հաւանեցոյց զոհել չաստուածոց իւրոց: Իսկ յայլ աշխարհ բազում քարոզք են ճշմարտութեանն եւս գերագոյն քան զիս, որք ուսուցանեն հանապազ զաստուածա(յ)ին ճանապարհն. քանզի մի է հաւատք և հաւատոյ գլուխ Քրիստոս է. զոր քարոզեցին ի ծագաց մինչև ի ծագս երկրի:

Յովասափ ասէ. և ոչ է հնար հայրն իմոյ եթէ լուիցէ քարոզութեան քում և դարձցի ի ճշմարիտն Աստուած, զոր դու քարոզես: Բարղամ ասէ. որ ինչ ի մարդկանէ

անհնարին է, յԱստուծոյ հնարաւոր է: Յովասափ ասէ. յաղագս հաւրն իմոյ հոգացէ Աստուած՝ որ ինչ հաճոյ է նմա. այլ ես ի բանից վարդապետութեան քո ընկալայ ի սրտի իմում. և հաւատամ ի ճշմարիտն Աստուած զոր դու ուսուցանես. և յամենայն եղեալ եմ ընդ քեզ դաւանութիւն կենաց և մահու. զի մի որոշեցայց ի յաւիտենական բարութեանցն վասն սնոտի և անցաւոր ժամանակիս:

## Առակ Ե.

Բարղամ [1] ասէ. եթէ զայդ արասցես, նմանեսցիս դու երիտասարդի ումեմն, որ էր մեծատուն յոյժ որդի ազնուականի հաւր, որում կամեցաւ հայր իւր ածել նմա[յ] ի կնութեան զդուստր մեծատան որ էր գեղեցիկ յոյժ: Եւ վասն զի ոչ կամեցաւ երիտասարդն առնուլ զխաւսե(ա)լն իւր կին, փախուցեալ յերկիր աւտար, և տեսեալ անդ ալեոր աղքատ որ ունէր դուստր միամաւր կոյս և գեղեցիկ. որ գործէր ձեռամբ զգործ իւր և շրթամբք աւրհնէր զԱստուած հանապազ: Զնա իբրև ետես երիտասարդն

[1] Համ. Առակ վեցերորդ զոր ասաց Բարղամ. Զոտընբերգ (էջ 121). XII. Porobole de jeune homme riche et de la jeune fille pauvre առակ Հարուստ երիտասարդի և աղքատ աղջկան.

տեղեկանայր ի կուսէն, թէ զինչ է գործ նորա: Եւ ասէ ցնա. ով կին դու, տեսանեմ զքեզ աղքատ և ի ձեռաց քոց լնուս զպէտս քո և հանապազ աւրհնես զԱստուած:

Եւ աղջիկն պատասխանի տուեալ. գոհանամ զԱստուծոյ ի չքաւորութեան իմում, զի ես մեծագունից աւժանի լինեցիմ. բայց և ընդ այս աւաւել գոհանամ. զի ողջանդամ տեսանեմ զիս ըստ պատկերի Աստուծոյ ստեղծեալ. և ոչինչ պակասութիւն ունիմ յիս, այլ հարստութիւն և անանկութիւն ի վերնատու(ողե)ն է: [ա]

Զայս իբրև լուաւ երիտասարդն յաղջկանէն, առ ժամայն դարձաւ առ հայր իւր և ասէ ցնա[յ]. եթէ կամիս զկեանս իմ տուր ինձ ի կնութիւն զդուստր աղքատ ալևորին այնորիկ. քանզի յոյժ հաճոյ թուեցաւ ինձ իմաստութիւն աղջկանն: Եւ հաւանեցուցեալ զհայր իւր, մինչև առ զնա[յ] նմա ի կնութեան և արարին հարսանիս: [բ] Եւ յետ այնորիկ կոչեաց զնա աներ իւր ալևոր մձկաւախ. և եցոյց նմա քար մի զըմբուխտ որ էր կշիռ լտերս քսան: Եւ ասէ ցպաստանին. որդեակ, որովհետև հաճոյ թը-

---

ա. Համ. յԱստուծոյ իցէ. և զայն ոչ համարիմ բարի կամ չար անձին իմոյ: Յուն. մէջ չատ երկար է աղջկայ խօսակցութիւնը:

բ. Յուն. մէջ կար աղջկայ հօր խօսակցութիւնը թէ նա աղայի միտքը փորձելու համար, հրամայում է, սկզբում իւր աղքատ աղջկանը հարուստ աղային տալու:

ւեցաւ քեզ լինել ժառանգ աղքատութեան իմոյ, արդ առ զդա[յ] քեզ ի բաժին և դատերն իմոյ: Եւ նորա[յ] առեալ զզմրուխտըն, վաճառեաց հարիւր թագաւորաց. և առեալ զանձս բազումս մեծացաւ առաւել եւթնապատիկ քան զհայր իւր: Արդ և դու, եթէ ծանիցես զճշմարիտն Աստուած առաւել ևս մեծասցիս յայսմ ժամանակի, և ընկալցիս զյաւիտենական մեծութիւնն ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ:

Յովասափ ա ասէ. յոյժ բերկրեցաւ սիրտ իմ ընդ բանս վարդապետութեան քո: Արդ աղաչեմ զքեզ զի ծանուսցես ինձ. թէ որպէս և կամ ուստի եղես լուեալ զայդ

---

ա. Համ. «Յովասափ ասաց. կարի քաղցրանամ ի բանըս քո, հայր սուրբ. և աղաչեմ զքեզ ասել ևս զմեկնութիւն առակիդ: Բարղամ ասաց. երիտասարդն դու, և ալեւորն ես, և դուստր իմ վարք կրաւնից մերոյ. որ է գեղեցիկ ի նմանութիւն սկզբնատպին Աստուծոյ սրբութեամբն: Եւ քարն զմրուխտ անանց կեանքն է յաւիտենական. և քսան լիտր կշիռն զանդերծանելի հասակն ցուցանէ, զայնր կենացն անմահականաց: Արդ՝ եթէ դու լուիցես քարոզութեան իմոյ և ծանիցես զճշմարիտն Աստուած. առաւել ևս մեծասցիս քան զհայրն քոյ. եւթնապատիկ աստի կենօքս և անդ զյաւիտենական ժառանգեսցես: »

Հետաքրքիր է որ այս մեծ հատուածը չկայ մեր ընդարձակ օրինակում. հազիւ թէ համառօտողը ինքն աւելացրած լինի. աւելի հաւանական է ընդունել, որ մեր ձեռք հասած ձեռագրից կորել է այդ մասը: Եթէ Յուն. բնագիր ունենայի, կարող կլինէի հարցը աւելի ուղիղ և հեշտ վճռել:

ամենայն, միթէ՞ և դու ականատես Աստուծոյ եղեալ իցես: Բարդամ ասէ. աղաչեմ զշնորհս մարդասիրութեան նորա. զի զոր ես ոչ կարացի յայտնել քեզ ծանիցես շնորհաւք Հոգւոյն Սրբոյ. քանզի որպէս և դու այժմ լուար յինէն, այնպէս և ես ընթերցեալ լուայ ի գրոց սրբոց: Գրեալ է. թէ զԱստուած ոչ ոք ետես բայց միածին Որդին որ է ի ծոց Հաւր նա[յ] պատմեաց մեզ. և ի նմանէ ընկալան որք ականա[յ]տեսք և սպասաւորք եղեն բանին, և գրովք սրբովք ետուն մեզ հաստատութիւն հաւատոյս: Եւ մարգարէն Դաւիթ ասէ. երկինք պատմեն զփառս Աստուծոյ. քանզի յանէութենէ յէութիւն ած զմարդն և ետ նմա[յ] շնորհս մտաց և բանաւորութեան. որ վերագոյն է քան զամենայն ստեղծուածոց. և պարտ է մարդւոյն ի ձեռն շնորհացն Աստուծոյ զամենայն զոր լուեալ է պատմել և ոչ թագուցանել:

Յովասափ ասէ. պատմեա ինձ, հայր պատուական, եթէ քանի ամաց ես դու. և յորքան ժամանակս ուսեալ ես զայդ ամենայն: Բարդամ ասէ. ամաց եմ ես իբրև քառասուն և հինգ, ա յանապատի ընթեռնրլով հանապազ զաստուածային գիրս: Յովասափ ասէ. ո՞րպէս ասես զքեզ քառասուն և հինգ բ ամաց. տեսանեմ զքեզ ա-

ա. Համ. քառասուն ութն ամաց.

բ. Համ. քառասուն ութն.

լևոյ տռաւել քան զեւթանասուն կամ զութսուն ամաց: Բարզամ ասէ. եթէ զաւուրս կենաց իմոց ընդ թուով արկանես, տռաւել ունիմ քան զութսուն ամ.[ա] բայց զայն ոչ համարիմ ի կենաց իմոց, զոր շըրջեցայ ի նանրութեան աշխարհի. զի յորժամ ծառայ էի մեղաց ոչ էի ընդ կենդանութեամբ: Քանզի ամենայն որ ծառայ է մարմնոյն, մեռեալ է հոգւովն: Այլ ես յորժամ զհին մարդն ի բաց մերկացայ շնորհիւ Աստուծոյ իմո(յ), այնուհետև կենդանացայ հոգւով և կենդանի է յիս Քրիստոս. և զայս իսկ անուանեմ ժամանակ կենաց և աւուրս փրկութեան: ԽԵ ամ համարեցայ թուով ծառայել Աստուծոյ. փոխանակ փառացն որ հին յանցանաւքն մերկացաւ յինէն. արդ և դու որչափ ծառայես մարմնոյդ, մի՛ համարիր ի թիւ կենաց քոց: Քանզի որչափ ծառայեմք մեղաց, ազատ եմք յարդարութենէ. զի կատարումն մեղաց մահ է. այլ եթէ ազատ եմք ի մեղաց ծառայելով Աստուծոյ, ունիմք այնուհետև պտուղ սըրբութեան և կեանք յաւիտենականս: Յովասափ ասէ. երանի է քեզ և ամենեցուն որք ընդ քեզ իցեն յանապատին. և արդ պատմեա ինձ. եթէ ուստի՞ զգենուք զգեստ հանդերձից յանապատի անդ, և զի՞նչ է կերակուր ձեր:

---

ա Համ. աւելի եմ քան զեւթանասուն ամն:

Բարղամ ասէ. կերակուր մեր ի դալար խոտոյ անապատին է. և արբումն մեր ի ցաւղոյ երկնից. ուտեմք և ըմպեմք անխռով ուրախութեամբ հրամանաւ արարչին. և ոչ ոք է ի մեզ որ հակառակի կամ ագահէ կամ նախանձի: Այլ հաց բերեն մեզ ի մերձակայից աստուածասէր եղբարց, և զայն ճաշակեմք և գոհանամք զԱստուծոյ: Իսկ հանդերձ մեր մազեղէնք խորգք, և մորթս մաշկեղէնս հնացեալս որ ծածկեն զոսկորացեալ մարմինս մեր. և զայն զգենումք յամառնային և ի ձմեռնային աւուրս. և մինչև ցմաշելն ոչ ելանէ յանձանց մերոց: Եւ այսպէս համբերեմք փոքր ինչ ժամանակս, ակն ունելով անապական զգեստուն և երկնային կերակրոյն: Յովասափ ասէ. ուստի՞ է քեզ այդ զգեստդ զոր այժմ զգեցեալ ես:

Բարղամ ասէ. խնդրեցի զա[յ] յաստուածասէր եղբարց. զի ոչ էր հնար մտանել առ քեզ սովորական զգեստիւ իմով: Այլ որպէս թէ ունիցի ոք ի գերութեան մատնեալ եղբա(յ)ր կամ ազգական. և երթիցէ գաղտ տեսանել զնա, զգենու զգեստ երկրին այնորիկ. և երթեալ լրտեալ զգերեալն, զի մի տեսցեն զնա[յ] աւտարակերպ և չտայցեն տեսանել զգերեալն, զայս և ես արարի զի փոխեցի զկերպարանս իմ. վասն մտանելոյ առաջի քո և սերմանելոյ զճշմարտութեանն բան: Այլ յորժամ կատարեմ զգործ իմ, զոր սկսա(յ) առ քեզ զաւ-

րութեամբն Աստուծոյ առ ի պատմել զմեծ խորհուրդ Բանին Աստուծոյ, իսկոյն դառնամ ի տեղի իմ ուստի եկի. և զայս աւտարացեալ կերպ հանդերձիս, զոր զգեցեալ եմ մերկանամ և զգենում զառաջին զգեստկըն իմ։

Յայնժամ աղաչեաց զնա[յ] Յովասափ, զի ցուցէ նմա[յ] զսովորական զգեստ իւր։ Եւ նորա մերկացեալ զվերին հանդերձն զոր ունէր առ ժամայն, և ետես զնա[յ] Յովասափ ահաւոր կերպիւ. զի էր մարմին նորա մաշեալ և սպականեալ ի ցրտոյ. և որպէս զմորթ եղեգան այնպէս մաշեալ էր զմարմին նորա. և այլ ոչինչ երևէր բայց միայն ոսկրն և մորթն։ Եւ ունէր զգեցեալ պատառատուն մազեղէն մինչև ցծունկսն. և փոքր թիկանց արկեալ զիւրեաւ և զայն մազեղէնն։ Զարմացեալ Յովասափու ընդ զժուարին կեանս նորա[յ], սկսաւ արտասուել և ասէ ցնա. աղաչեմ զքեզ հայր պատուական, հան ի բանտէ զանձն իմ և առ զիս ընդ քեզ. զի կատարելապէս հրաժարեցից ի սնոտի կենցաղոյս, և առից զդրոշմն փրկական մըկրտութեանն. և հաղորդեցայց ընդ քեզ յամենայնի աստուածաշնորհ բանիցդ և երանելի ճգնութեանդ։

## Առակ Զ.

Բարղամ [1] ասէ. որսորդ ոմն սնուցեալ էր գառն մի այծեման. և ի մեծանալ գառինն զերծաւ յորսորդէն և գնաց ի լեառն Նուէր [2] ի բնակութիւն իւր.[ա] և անդ գտեալ երամակս այծեմանց, խառնեցաւ ի նոսա[յ]: Եւ ելեալ ծառայք որսորդին, գնացին զհետ գառինն ունել զնա. և իբրև տեսին զնա[յ] զի արածէր ի մէջ այլոցն, վարեցին զհետ նոցա. զգառնն հալեալ դարձուցին ի տեղի իւր, և զայլ երամակ այծեմանց որ ընդ գառինն էին, զոր սպանին և զոր չարա[յ]չար վիրաւորեցին:

Արդ և դու, եթէ գաս այժմ զինի իմ նոյն աւրինակաւ լինի և ընդ մեզ ի գալ քում. զի զքեզ դարձուցանեն ի տեղի քո(յ) և զընկերսն իմ չարաչար տանջանաւք կորուսցեն. բայց Աստուած արասցէ ընդ քեզ որպէս հաճոյ է նմա[յ]: Զայս միայն խնդրեմ ի քէն. զի առցես զդրոշմն քրիստոսական մկրտութեան. և այն որ պարգևողն է

---

ա. Համ. ուր էր որսորդութիւն իւր:

1 Համ. Առակ եւթներորդ զոր ասաց Բարաղամ. Զոտընբերգ (էջ 124) XIII. Parabole du chevreuil առակ այծեման.

2. Յուն. «փախեան յանապատն.» Համառօտ օրինակների մէջ պակասում է. կայ միայն տպագիր Ցայսմաւուրքի մէջ. «Նուէթին.»

ամենայն բարեաց, տացէ քեզ ժամանակ գալստեան առ մեզ և ի միասին անցուցանել զմնացեալ աւուրս կենաց մերոց. յուսամ ի Տէր Յիսուս Քրիստոս զի և ոչ ի հանդերձեալսն բաժանեմք ի միմեանց: Եւ Յովսափ արտասուելով ասէ. եթէ այդպէս է ապա կամք Տեառն եղիցին: Արդ տաս[յ] ինձ և զայս. եթէ մեղիցէ մարդ յետ մկրտութեանն և դարձեալ ապաշխարիցէ, գտցէ թողութիւն թէ ոչ: Բարդամ ասէ. լուր ինձ, թագաւոր որդեակ, մեղանչել մարդոյն չէ չար, այլ չապաշխարելն. որչափ գլուխ կանկնեա՛, որչափ մեղանչես ապաշխարեա: ա

Վասն այնորիկ կոչի Աստուած մարդասէր. զի ոչ ի սպառ բարկանայ ի վերա(յ) մեղաւորին, այլ մինչև ի յետին շունչըն թէ ջերմեռանդն ապաշխարիցէ, ոչ կորուսանէ զնա[յ] մարդասէրն Աստուած. Զի ինքն Քրիստոս ասէ. ոչ եկի կոչել զարդարըս այլ զմեղաւորս յապաշխարութիւն: Եւ Պետրոս՝ գլուխ առաքելոցն երիցս անգամ ուրացաւ զՔրիստոս վասն ահին Հրէից. այլ յորժամ արտասուեաց, ոչ անտես արար զնա[յ] արարիչն իւր, այլ եգիտ թողութիւն, և ոչ պակասեաց ի պատւոյ իւրմէ զոր խոստացաւ նմա Քրիստոս: Եւ աւազակ

ա. Համ. աւել ունի. զղջացիր. հոգւոց հան. փոշիմանեա ի մեղացն և հառաչեա և խոստովանեա: Զի գրեալ է մեծաբարբառ Եսայի. թէ ասա դու նախ զանօրէնութիւնս քո զի արդարասցիս. վասն այնորիկ . . .

մի խառովից և մարդասէր կախեալ ընդ աջմէ Յիսուսի ի խաչին, ի ձեռն միոյ բանի զոր ասաց· յիշեա՛ զիս Տէր յորժամ գաս արքայութեամբ քով, յառաջամուտ եղև քան զամենայն ստեղծուածս ի դրախտին փափկութեան: Եւ մարգարէն Դաւիթ ասէ· ոչ ի սպառ բարկանայ Տէր և ոչ յաւիտեան պահէ ոխս:

Յովասափ յոյժ բերկրեալ[ա] ընդ բանս ծերոյն ասէ· աղաչեմ զքեզ, Տէր իմ, զի արժանա[յ]ցուսցես զիս քրիստոնեական մըկրտութեանն· և առ յինէն զանձս ոսկւոյ և կամխս, և տուր ի պէտս եղբարցն ի տեղի բնակութեան ձերոյ· և մի՛ վրիպիր աղաւթս առնել վասն իմ առ Տէր· զի մի՛ պակասեսցէ հաւատք յուսոյ իմոյ, և արասցէ ինձ հնար մարդասէրն Աստուած· զի եկից առ քեզ ուր և երթիցես, և ընդ կատարեցից զկեանս իմ:

Բարլաամ ասէ· վասն առնելոյ քեզ ըղքրիստոնեական կնիքն, ոչինչ է որ ՚արգելու. բայց միայն պատրաստեա[յ] զանձն քո ի մկրտել շնորհիւն Աստուծոյ· այլ վասն որոյ ասացեր թէ առ յընչից իմոց պէտս եղբարցն: Ո՞ր արժան է· մեծատանն աղքատին պարգևել եթէ աղքատն մեծատանն· և ես զի՞արդ առից յաղքատութենէ քումմէ որ մեծա[յ]տունս եմ Քրիստոսի ողորմութեամբն· քանզի նուաստն յընկերսն իմ մեծատուն է քան զքեզ: Բայց յուսամ ի մար-

ա. Համ. ուրախացաւ:

դատաւորութիւնն Աստուծոյ՝ զի և զքեզ հա-
րստացուցէ անանց մեծութեամբն: Յո-
վասափ ասէ. մեկնեայ ինձ զայդ, զիա՞րդ
ասես թէ նուաստն յընկերսն իմ մեծատուն
է քան զքեզ. նախ ասացեալ թէ ի վայրի
դալարոյ և ի խոտոյ կերակրեմք և ջուր յաւ-
դոց ըմպեմք և հանդերձ զոր զգեցեալ ես
երևի ինձ թշուառականի. արդ ո՞րպէս
ասասցես զքեզ մեծատուն քան զմեզ: Բար-
լաամ ասէ. որ զինչ ունիք ոչ էք մեծա-
տուն, այլ ծառայք էք ստացուածոյն ձերոյ.
համապազ անհանգստութեամբ և պէս պէս
հնարիւք ջանայք առաւելուլ ի ստացուած-
ոցն. արդ ահաւասիկ չէք մեծատունք և
ազատք այլ աղքատք և ծառայք հոգւով:

Իսկ մեք զամենայն հոգս մոռացեալ եմք
զի Աստուած հոգասցէ. և մեք անջատեալք
յամենայն ծառայութենէ աշխարհի և մե-
ծացեալք հոգւով ի Քրիստոս: Արդ եթէ ես
յընչից քոց տարայց ընկերաց իմոց, առ-
ժամուն մտանէ խռովութիւն ի խաղաղա-
կան առագաստն, և լինիմ նոցա[յ] հրեշ-
տակ չարութեան: Քա՛ւ լիցի ինձ առնել
զայդ: Արդ ինձ և ընկերակցաց իմոց ոչինչ
պիտոյ է ի քէն. զի բաւական է մեզ քաղց-
րութիւն անապատին: Արդ զոր մեզ կամիս
պարգևել ի ստացուածոց քոց, տուր զայն
աղքատաց. և գանձեսցես քեզ գանձս ի
կեանսն յաւիտենականս. և դու պնդեա[յ]
երբև զայր զմէջ քո և պնդեա[յ] զվահանն

հաւատոյ և դիր ի գլուխ քո զսաղաւարտն փրկութեան. գեղեցկացոյ զոտն քո յաւետարանել զխաղաղութիւն. ընկալ ցուպ ի ձեռինդ զհաստատութիւն հաւատոցդ և ըղսուսեր հոգւոյն որ է Բանն Աստուծոյ: Եւ յամենայնի զինուորեա շրջափ[յ]ակեալ զքև տէրունական խաչիւն. որ է զրոշմն՛ հաւատացելոց և ահարկու դիւաց. և ել ի պատերազմն ընդ ամբարիշտ թշնամւոյն. եթէ յաղթեսցես նմա[յ], ընկալցիս զպսակն յաղթութեան ի Տեառնէ Աստուծոյ քումմէ:

Եւ այսպիսի բանիւք փրկանաւք վարդապետէր Բարդամ աւուրս ինչ որդւոյ թագաւորին. և հրամայեաց նմա[յ] պահել և աղաւթել յարա[յ]ժամ. և պատրաստեաց զնա[յ] առնուլ զքրիստոսական կնիքն. և ոչ դադարէր յուսուցանելո(յ) նմա զաստուածեղէն պատգամս, քանզի ինքն ի բերան ուսեալ էր զամենայն գիրս զՀին և զՆոր Կտակարանս:

Իսկ յաւուրն յորում մկրտելոց էր զնա, սկսաւ ասել ցնա[յ] այսպէս. որդեակ, հայեաց ի քեզ ճշմարտութեամբ. զի Որդի Աստուծոյ լինելոց ես. և եղբայր Քրիստոսի միածնի Որդւոյն Աստուծոյ. և տաճար Հոգւոյն Սրբո(յ): Արդ՝ հաւատա յամենասուրբ Երրորդութիւնն՝ ի Հայր և ի յՈրդի և ի Հոգին Սուրբ. յԵրրորդութիւնն անբաժանելի յերեք անձնաւորութիւն և ի մի աստուածութիւն՝ բաժանեալ անձնաւորու-

թեամբ և միաւորեալ էութեամբ. անսկիզբն զՀայր ճանաչել և միածին Որդի Աստուծոյ զՅիսուս Քրիստոս. լոյս ի լուսոյ. Աստուած ճշմարիտ որով ամենայն եղև երևելիք և աներևոյթք: Հաւատամ և զՍուրբ Հոգին ելող ի Հաւրէ, Աստուած կատարեալ և կենդանարար. ինքնագոյ, ինքնիշխան, ինքնաբաշխող ամենայն բարութեանց. հաւասարակից Հաւր և Որդւո(յ):

Արդ մի բնութիւն է աստուածութիւնն. մի կամք, մի տէրութիւն, մի արքայութիւն. ամենայն որ ինչ Հաւր՝ է և Որդւոյ և Հոգւոյն Սրբո(յ): Հայր անսկիզբն և ոչ յումեքէ ծնեալ. Որդին անսկիզբն ի Հաւրէ ծնեալ, սկիզբն և ոչ ընդ ժամանակ. քանզի արարիչ է ժամանակաց: Եւ ոչինչ պակասութիւն ունի Որդի քան զՀայր և ոչ Հոգի քան զՈրդի. այսպէս անսկիզբն ծնունդ է բանն ի Հաւրէ որպէս՝ նշոյլք յարեգակնէ, լոյս ի հրոյ, բան ի մտաց: Քանզի յորժամ էր Հայր և Որդի ընդ նմա էր. և յորժամ Որդի և Հոգի ընդ նմա[յ], երեք անձնաւորութիւն և մի աստուածութիւն ճանաչի. այլ եթէ ուստի կամ յումմէ մի քններ: Հաւատամ և ի ծնունդ Բանին Աստուծոյ. որ վասն մերո(յ) փրկութեան իջեալ յերկնից, մարմնացեալ ի Մարիամայ կուսէ ի ձեռն Հոգւոյն Սրբոյ: Ստեղծեալ իւր մարմին շնչական անձնաւոր՝ էառ հոգի, մարմին, միտք և ամենայն որ ինչ մարդ ճշմարտութեամբ. միացեալ բնութեամբ յեր-

կուց՝ Աստուած և մարդ. այլ ոչ յերկուս դէմս կամ յերկուս ներգործութիւնս, Աստուած ընդ մարդւոյ խառնեալ և միաւորեալ, երևեցաւ մեզ մարդ ճշմարիտ իբրև զմեզ բաց ի մեղաց. զի զմեզ միաւորեսցէ ընդ աստուածութեան իւրոյ: Կրեաց զամենայն կիրս մարդկայինս բա[յ]ց ի մեղաց. քաղցեաւ, ծարաւեցաւ, ննջեաց, վաստակեցաւ, արտասուեաց և որ ինչ նման սոյին: Եւ վասն մերոյ փրկութեան եկն կամաւ ի մահ խաչին. և համբերէր չարչարանաց մարդկային բնութեամբն այլ աստուածութեամբն անմահ էր. չարչարելի և անչարչարելի. մահկանացու և անմահ, անտեսանելի և տեսանելի, անեղ և եղական, անտանելի՛ և տարեալ լինել. անմահ աստուածութեամբն և չարչարելի մարմնովն. և ինքնինքն յարուցեալ ի մեռելոց, եղև անդրանիկ ամենայն ննջեցելոց. խորտակեաց զբռնութիւն մահու, և եղծ զյաւիտենական կապեալսն, մեզ շնորհեաց զյարութիւն և զկեանս: Ցայսոմ ամենայնի լինել նմա յաշխարհի. այլ ի հայրական աթոռոյն ոչ պակասեաց. որ էր, և էն և է հանապազ. ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ:

Ցարուցեալ ի մեռելոց, համբարձաւ յերկինս նովին մարմնով և նստաւ ընդ աջմէ Հաւր. և գալոց է նովին մարմնով դատել զկենդանիս և զմեռեալս, հատուցանել իւրաքանչիւր ըստ գործոց որպէս

և գրեալ է․ յառնիցեն մեռեալքն, կանգնեսցին ամենեքեան որ եղեալ են ի գերեզմանին:

Խոստովանեա և ի մկրտութիւն և ի թողութիւն մեղաց· ի դատաստանն յաւիտենական՝ հոգւոց և մարմնոց, յարքայութիւնն երկնից և ի կեանսն յաւիտենական: Հաղորդ լեր երկնային պարգևացն մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ, որ բաշխի հաւատացելոց ի թողութիւն մեղաց· քանզի զայս պատու(իրեաց) պահել ի յիշատակ (կենարար) մահուանն իւրոյ· որպէս (Պետրոս ասէ քանիցս անգամ· եթէ կերիցէք ի հացէ յայսմանէ և ի բաժակէ ըմպիցէք, զմահ Տեառն պատմեցէք մինչև եկեսցէ նա: Արդ ի ժամուն աստուածային պատարագին լիցի հացս այս մարմին Քրիստոսի և բաժակս) այս ճշմարիտ արիւն Քրիստոսի· և բաշխի ամենայն արժանաւորաց ի թողութիւն մեղաց· ի յերկրէն յերկինս ճանապարհորդելով հաւատոյ նշան ի կե(ա)նդաբեր խաչն Քրիստոսի, որ պահպանէ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս անբարբառ բարեխաւս կարապետ գալստեան Որդւոյն Աստուծոյ: Որպէս և Փրկիչն ասէ· թէ յայնժամ երևեսցի նշան Որդւոյ մարդւոյ յերկինս· պատուեա զեկեղեցի Աստուծոյ, պատուեա և երկիրպագ ամենայն սրբոց:

Եւ զայս ամենայն աւետարանեալ Բարղամ Յովսափու, ետ նմա գրով զնիկիական կանոնս հաւատոյ· և մկրտեաց զնա յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ· և

մատուցեալ զաստուածային* պատարագն, հաղորդեցոյց զնա[յ] մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ. և ուրախացեալ հոգւով փառս մատոյց անմահին Աստուծոյ:

Յայնժամ ասէ ցնա Բարղամ. որք ի Քրիստոս մկրտեցարուք զՔրիստոս զգեցեալ էք:[ա] Եւ գնաց այնուհետև ուր էր բնակեալ ի դրախտն. և յամենայն ժամ գայր Բարղամ և մտանէր առ Յովասափ և քարոզէր զՔրիստոս: Իսկ մանկա[յ]բարձք մանկանն տեսանէին զստէպ ստէպ մտանելն նորա[յ] առ նա[յ]. և զարմանային յոյժ: Եւ մի ոմն ի նոցանէ, որ էր պատուականագոյն քան զայլսն, որում անուն էր Զարդան[բ] որ էր սիրեցեալ յոյժ ի Թագաւորէն. զոր կացուցեալ էր սնուցիչ մանկանն, ասէ ցՅովասափ. գիտես, ով տէր իմ արքայ, թէ որչափ է ի վերա(յ) մեր ահ հաւրն քո: Եւ զիս հաւատարիմ պաշտաւնեայ լինել քեզ կացոյց. և այժմ տեսանեմ զայրդ զայդ զի ստէպ մտանէ և խաւսի ընդ քեզ. երկուցեալ եմ[գ] մի գուցէ զքրիստոնէից աւան-

---

ա. Համ. աւել է. Եւ ասաց նմա արդ այսուհետև պահեա զամենայն պատուիրանս Աստուծոյ գործովք բարութեան. զի հաւատք առանց գործոց մեռեալ են. նոյնպես և գործք առանց հաւատոյ դատարկ են: Այսպիսի պատուիրանօք և վարդապետութեամբ խրատեալ և ուսուցեալ ծերն Բարաղամ զորդի Թագաւորին. և ել գնաց ի վանս իւր օթևան:

բ. Համ. Զարդ. անուն. Յուն. Ζαρδάν.

գ. Համ. վախեմ.

ղութիւն [ա] ուսուցանէ քեզ. զոր եթէ լսի-ցէ հայր քո, առ ժամայն հանցէ զիս ի կե-նաց իմոց չարաչար մահուամբ. [բ] արդ հրա-մայեա զի մի մացէ նա[յ] առ քեզ. ապա թէ ոչ պատմեցից հաւրն քո: Ասէ Յովա-սափ. ով Զարդան, [գ] նիստ դու արտաքո(յ) դրանդ, [դ] և լուր վարդապետութեանն առ-նըն այնորիկ զոր ուսուցանէ ինձ. և ապա[յ] ասացից քեզ թէ զինչ խորհիմ առնել. և նորա[յ] արար այնպէս: Եւ իբրև եկն Բար-ղամ և եմուտ ի ներքս, ասէ ցնա որդի Թագաւորին. վարդապետեա ինձ այլ ևս ի գեղեցիկ վարդապետութենէ քումմէ. զի առաւել ևս հաստատեցայց ի հաւատս:

Եւ Բարղամ վարդապետեաց Յովա-սափու. զնոյն վարդապետութիւնն կրկին անգամ քաղցրութեամբ: [ե] Եւ իբրև ել Բար-ղամ, եկն Զարդան առ որդի Թագաւորին և ասէ. եթէ այդ հանճոյ թուի քեզ և կա-րող ես համբերել վարդապետութեան և վա-րուցն զոր ուսուցանէ քեզ եղիցին կամք քո, այլ եթէ ես զինչ արարից ոչ գիտեմ. զի յայամ հեռէ զայդ ոչ կարեմ թագուցանել ի հաւրէն քումմէ: Յովասափ ասէ. գիտեմ

---

ա. Համ. ազանդն.

բ. Համ. սաստկմամբ.

գ. Համ. Զարդ.

դ. Համ. վարադուրից յայնկոյս և լուր:

ե. Համ. մէջ կրկնուած են ճշմարիտ աստուածպաշ-տութեան սկզբունքները, որ այստեղ չկան:

զհաւատարմութիւն քո զոր ունիս առ իս․ այլ վասն դիտելոյ հաւրն իմոյ ոչ է ինձ փոյթ․ զի ոչինչ կարող է առնել ինձ հայրն իմ բայց միայն հոգևոր տրտմութիւն առնու ի սիրտ իւր։ Եւ եթէ յայսմ կենացս հանցէ զիս, ես պատրաստ եմ յաղագս Աստուծոյ իմոյ․ բայց դու ներեա սակաւ աւուրս և ապա պատմեսցես հաւրն իմոյ։

Եւ ի վաղիւն յորում կամէր որոշել ի նմանէ Բարղամ․ և նա[յ] ոչ կամէր զորոշումն ծերոյն, այլ հառաչանաւք ողբայր վասն պակասելոյ նորա ի նմանէ։ Եւ Բարղամ բազում մխիթարական բանիւք և աստուածային վարդապետութեամբ հաստատէր զնա և ասէր․ թէ դարձեալ միաւորելոց եմք ի միասին։ Իսկ Յովասափ այլ ոչ կամեցաւ աշխատ առնել զնա[յ]․ երկուցեալ թէ մի գուցէ երթեալ Զարդան ասասցէ վասն նորա թագաւորին և մատնեսցէ զնա[յ] ի տանջանս։ Յայնժամ ասէ ցծերն․ եթէ այդ են կամք քո, ով հոգևոր վարդապետ, գնալ քեզ ի հոգևոր հանգիստն քո․ և զիս թշուառականս միայն թողուլ ի յալեկոծումըն աշխարհիս, եղիցի որպէս և հաճոյ է քեզ․ բայց միայն զիս մի՛ մոռանայր յաղաւթս քո, զի արժանի եղէց գալ առ քեզ․ և ի միասին անցուցանել զմնացեալ աւուրս մեր։ Այլ զա[յ] աղաչեմ․ զի առցես յինէն սակաւ ինչ ի պէտս եղբարցն։ Բարղամ ասէ․ աւրհնեալ է Աստուած և Հայր Տեա-

ուրն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ճշմարիտ ասեմ քեզ. զի ոչ արարից այլ ինչ խընդրուածս յԱստուծոյ զամենայն աւուրս կենաց իմոց, բայց միայն վասն քո զի հաստատուն պահեսցէ զքեզ Աստուած ի կամս ողորմութեան իւրոյ: Այլ վասն որոյ ասացեր առնուլ ինչ ի պէտս եղբարցն, բաւական է նոցա[յ] խոտ դալարոյ անապատին և զգեստ նոցա ջերմութիւն արեգականն.

Յովասափ ասէ. և այլ խնդիրս ունիմ ի քէն և անհնար է թէ ոչ կատարեսցես ինձ. տուր ինձ զմազեղէն խորգդ քո զոր զգեցեալ ես, և զփոքր թիկանոցդ ի պահպանութիւն անձին իմո(յ). և դու առ յինէն այլ նոր փոխանակ զոցա[յ]: Բարղամ ասէ. չէ պարտ տալ ինձ զհնացեալս և փոխանակ սոցա[յ] նոր առնուլ. զի եթէ զայդ առնեմ անվարձ ելանեմ ի վաստակոց իմոց որ առ քեզ. այլ վասն կատարելոյ զհա(յ)ցուածս քո, հրամայեա բերել ինձ հին և պատառոտուն մազեղէն իբրև զիմս, և առեալ զգեցայց փոխանակ այսմ: Եւ զայս արարեալ որդւոյ թագաւորին. առ յիւրմէ զմազեղէնն և զթիկանոցն և առաւել եւս ուրախ լինէր ի վերա(յ) նոցա, քան ի վերա(յ) ամենայն թագաւորական զգեստիցն իւրոց:

Իսկ երանելի ծերն զայս ասացեալ յետին վարդապետութիւն առ Յովասափ. եղբայր արի և սիրեցեալ որդի անդրանիկ, զոր վերստին երկնեալ ծնայ ի ձեռն Աւե-

տարանին Քրիստոսի, հայեաց ի քեզ ճշմարտութեամբ և տես թէ որո՞վ թագաւորի զինուորեցար և թէ զի՞նչ խոստացար բերանով քով. ուրացել ի սատանայէ և յամենայն հաղբից նորա. և հաւատալ ի Հայր և յՈրդին և ի Հոգին Սուրբ. և արդ որպէս հրաժարեցեր ի սատանայէ և հաւատացեր ի Քրիստոս, մի ինչ պակասեցուցաներ ի պատուիրանաց նորա զի արժանի լիցիս երկնաւոր բարութեանցն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր.

Իսկ Յովսափ արտասուելով դիրկս արկեալ ծերոյն ասէ. արդ՝ հայր պատուական, ո՞վ մեկնեսցէ ինձ զխորհուրդ աստուածային վարդապետութեան քո և յո՞վ եղից զյոյս հոգւոյ իմո(յ)։ Քանզի գտեր զիս ծառայ չար և որոշեալ ի Տեառնէ իմմէ և ի ձեռն քո արժանի եղէ երկնային ժառանգութեան. զի մոլորեալ էի և դարձայ. մեռեալ էի հոգւով և կենդանացայ ի Քրիստոս։ Արդ՝ հան ի բանտէ զանձն իմ և ի ստուերաց մահու զկեանս իմ, և մի թողուր զիս միայն. զի դուցէ յափշտակեսցէ թշնամին զանձն իմ. և ո՞վ է որ փրկեսցէ զիս ի ձեռաց նորա։ Զայս ինչ և առաւել քան զայն խաւսեցաւ Յովսափ առաջի ծերոյն։

Իսկ Բարղամ լուեալ զայս ամենայն և լցեալ արտասուաւք, յարուցեալ առ ժամայն և զաչս և զձեռս յերկինս համբար-

ձեալ ասէ: Ընտրուած խաղաղութեան, Հայր Տեառն մերո(յ) Յիսուսի Քրիստոսի. արարիչ ամենայն արարածոց երեւելեաց և աներեւութից. աղաչեմ զքեզ և զմիածին Որդիդ քո և զկենդանարար Սուրբ զՀոգիդ, հայեաց ի ծառայս քո և ի բանաւոր ողջակէզս յայս և լուսաւորեա[յ] զմիտս սորա[յ] ամենազաւր շնորհիւդ քո. առաքեա ի վերա(յ) դորա զշնորհս կենդանարար Հոգւոյ Սրբոյ, զի պտղա[յ]բերեսցէ պտուղ արդարութեան ի կեանս յաւիտենից. և քեզ փառք յաւիտեանս ամէն:

Եւ զայս ասացեալ, ողջունեաց զորդին ի համբոյր սրբութեան տուեալ նմա զՔրիստոսի խաղաղութիւնն և ելեալ գնաց ուրախութեամբ. փառս մատուցանէր անմահին Աստուծոյ:

Իսկ Յովասափ յետ ելանելոյ ծերոյն ջերմեռանդն արտասուաւք ասէ: Աստուած յուգնել ինձ հայեաց և Տէր յընկերել ինձ փութա[յ]. և այլ բազում բանք աղաւթից զոր ուսաւ ի ծերոյն:

Եւ այնուհետեւ սկսաւ կրթել զանձն իւր յամենայն ճգնութիւնս պահոց և աղաւթից զցայգ և զցերեկ: Իսկ Զարդանայ տեսեալ զայս ամենայն, և լցեալ տրտմութեամբ. և զի ոչ իշխէր պատմել թագաւորին, այլ ի տրտմութենէն հիւանդացաւ ի դժուարին ցաւս: Եւ թագաւորն լուեալ զհիւանդութիւն նորա, և որպէս էր նմա[յ]

սիրեցեալ և հաւատար(իմ) պաշտաւնեայ, առաքեաց առ նա[յ] զոմն բժիշկ ճարտար. զի երթեալ գիտասցէ վասն ցաւոց նորա: Եւ բժիշկն երթեալ ետես զնա. և նոյն ժամայն դարձաւ առ Թագաւորն և ասէ ցնա[յ]. ես և ոչ մի ինչ հիւանդութիւն գտի ի նմա[յ], բայց տրտմութիւն ունի ի սրտի իւրում բազում: Իբրև լուաւ զայս Թագաւորն, կարծեաց թէ որդի նորա տրտմեցուցեալ է զնա[յ]. և յղեաց առ նա Թագաւորն և ասէ. եթէ վաղւն գալոց եմ տեսանել եթէ զինչ է հիւանդութիւն քո: Իսկ Զարդան իբրև լուաւ զպատուէր Թագաւորին, ի վաղւն զգեցաւ զհանդերձս իւր և ելեալ գնաց առ Թագաւորն և մտեալ առաջի երկիրեպագ նմա[յ]:

Եւ ասէ Թագաւորն. ընդէ՞ր բռնադատեցեր քեզ գալ այսր, քանզի ես ինքնին կամէի գալ տեսանել զքեզ. թէ զի՞նչ է հիւանդութիւն քո: Զարդան ասէ. ով տէր իմ և Թագաւոր, հիւանդութիւնս իմ ոչ էր ի ցաւոց մարմնոյ, այլ ի տրտմութենէ սրտի իմոյ. քանզի արժանի եմ չարաչար մահու ի Թագաւորութենէդ քումմէ: Թագաւորն ասէ. պատմեա ինձ եթէ զի՞նչ է տրտմութիւն մեղ[ան]ացդ: Զարդան ասէ. մեծ որոգայթ եկն ի վերայ իմ, և բազում տանջանաց արժանի գործեցի. զի արհամարհեցի զպատուէր ինքնակալութեանդ և պղերգացայ առ տէրն և որդին քո: Զի

եմուտ առ նա[յ] այր ոմն չար և խաբիչ· և ուսոյց նմա զքրիստոնէից հաւատն:ա Եւ ապա պատմեաց Թագաւորին զամենայն բանք ծերոյն, զոր ուսուցեալն էր Յովասափու· և թէ որպէս ընկալաւ զամենայն և ունի պահեալ ի սրտի իւրում: Եւ գնաց բոլորովին զհետ աւանդոյն քրիստոնէից· ասաց Թագաւորին և զանուն ծերուն եթէ Բարղամ կոչի:

Եւ Թագաւորն յառաջագոյն լուեալ էր զանուն Բարղամու· և իբրև լուաւ զայս ի Զարդանայ, դողումն կալաւ զնա[յ] ի տրտմութենէն: Եւ առժամայն կոչեաց զոմն ի մեծամեծաց իւրոց Առարչախս բ անուն կոչեցեալ, որ էր այր իմաստուն և յոյժ հմուտ աստեղաբաշխական արհեստից· քանզի երկբորդ էր Թագաւորութեան նորա[յ]: Եւ պատմեաց նմա[յ] Թագաւորն զամենայն մի ըստ միոջէ զոր ինչ լուաւ վասն որդւոյն իւրոյ:

Եւ նորա տեսեալ զտրտմութիւն Թագաւորին և ասէ· վասն այդմ իրաց մի տրտմիր, ով Թագաւոր, ես արարից զի ուրախասցի սիրտ քո· և որդին քո զպատրիչ գ վարդապետութիւնն առնն այնորիկ ի բաց թողցէ: Նւ որպէս էր յառաջագոյն ըստ կամաց քոց, և այժմ առաւել ես լի-

ա· Համ. աղանդն·

բ· Համ. Առաչխս Յուն. Ἀραχής

գ· Համ. զպատրողական. Ձեռ. ապաւաղած է· գրած էր· « զպատրիչ վարդապետութեան քո: »

նեցի: Եւ արդ հրամայեա ինձ վարել զհետ Բարղամու. և եթէ հասից նմա, ածից զնա[յ] առաջի քո, և ի տանջանս արկեալ հաւանացուցանեմք զնա[յ] ասել ցորդին քո. թէ սուտ էր վարդապետութիւնն իմ զոր ուսուցի քեզ: Ապա[յ] թէ նմա[յ] ոչ հասից, գտանեմ զոմն ծեր Նաքովր[ա] անուն նմանեալ ամենայնիւ Բարղամու, որ և յառաջ վարդապետ[ն] մեր աստեղաբաշխական արհեստից. զնա[յ] բերից փոխանակ Բարղամու: Եւ լեալ ի կերպարանս նորա[յ], հաւանացուսցէ զորդին քո ասել. թէ սուտ է վարդապետութիւն իմ զոր ուսուցի քեզ. և դարձեալ խաւսեսցի ընդ փիլիսոփայից մերոց և յաղթեսցի ի նոցանէ. և որդւոյն քո տեսեալ զյաղթելն նորա, այլ ոչ ևս հաւատայ նմա[յ]: Եւ հաճոյ թուեցաւ բանս այս առաջին արքային, և առժամայն հրամայեաց վակել և ունել ճանապարհ երկրին խնդրելով զԲարղամ:

Իսկ Առաքշնիս հեծեալ առ յարադա[յ]գնաց երիւարս, հանդերձ բազում զաւրաւք վարել զհետ ընդ որս ակն ունէր գնալոյն Բարղամու. և գտեալ յաղարակի միոյ զաւթեվանս նորա, սկսաւ բռնա[յ]դատել զբնակիչսն զի ցուցցեն զնա[յ]: Եւ նոքա ասեն. յեռանդէ առ մեզ անթեցաւ ծերն Բարղամ, այլ թէ ուր գնաց ոչ գիտեմք:

---

ա. Յուն. Ναχώρ.

Եւ նոքա[յ] ելեալ անտի ընթացան^ա յանապատն Անկերիտացւոց, և բազում աւուրս շրջեալ անդ Առարշախի զաւրաւք իւրովք:

Եւ ի միում աւուր մինչդեռ շրջէր, ետես զոմանս յանապատական կրաւնաւորաց և հրամայեաց ունել զնոսա.^բ և զաւրացն զհետ երթեալ իբրև զգազանս, և կալեալ զնոսա[յ] ածին առ իշխանն կապեալ և քարշեալ ընդ երկիր: Իսկ նոցա[յ] ոչ երկուցեալ և ոչ զարհուրեալ ամենևին, այլ համարձակութեամբ կային առաջի իշխանին. և որ աւագա[յ]գոյն էր ի նոցանէ՝ ունէր ընդ ինքեան մասն ինչ ի նշխարաց սրբոց: Առարշախս իբրև ոչ ետես անդ զԲարդամ ասէ ցնոսա. ո՞ւր է խաբեիչն և մոլորեցուցիչն որ պատրեաց զորդի Թագաւորին: Իսկ սուրբքն պատասխանի տուեալ ասեն. ոչ է նա[յ] ընդ մեզ. քա՛ւ լիցի, քանզի վախչի նա[յ] ի մէնջ շնորհիւն Աստուծոյ: Առարշախս ասէ. ճանաչէք զինքդ, թէ ո՞վ է: Կրաւնաւորքն ասեն. ճանաչեմք ճշմարիտ. քանզի սատանայ է խաբեիչ և պատրիչ: Ասէ իշխանն. ես վասն Բարդամու հարցանեմ. զնա[յ] կամիմ իմանալ: Սուրբքն ասեն. և ընդէր այլա[յ]փոխեցեր զբանդ ասելով թէ ուր է պատրիչն. զի եթէ զԲարդամ խնդրէիր, պարտ էր քեզ ասել. թէ ո՞ւր է ճըշմարիտ վարդապետն, որ ի խաբէութենէ

ա. Ձեռ. ընթացաւ:

բ. Ձեռ. զնայ:

չարին որոշեաց զորդի Թագաւորին: Նա[յ] եղբայր մեր է և ճգնակից. բայց բազում աւուրք են զի ոչ է մեր տեսեալ զնա[յ]: Ասէ իշխանն. և ցուցէք ինձ զտեղին նորա[յ]: Կրաւնաւորքն ասեն. եթէ կամ էր նորա տեսանել զմեզ, ինքնին եկեալ էր առ մեզ. և արդ մեզ չէ արժան ցուցանել զտեղի նորա:

Յայնժամ բարկութեամբ լցեալ իշխանն ասէ. չարաչար տանջանաւք սատակեմ զձեզ, եթէ ոչ ցուցանէք ինձ զԲարղամ: Սուրբքն ասեն. տանջանաւք քո ի պարգևս համարիմք. զի մեզ վասն Քրիստոսի մեռանել կեանք է. արդ զոր ինչ կամիս արա[յ], զի մեզ ոչ է արժան մատնել ի ձեռս քո զնա կամ զայլ ոք: Բարկութեամբ լցեալ իշխանն հրամայեաց տանջել զնոսա. և ինքն եկն առ Թագաւորն և պատմեաց նմա[յ] զոր եսեսն և լուաւ: Եւ առեալ զինուորացն և բերին զսուրբ բռնաւորսն առ Թագաւորն. և Թագաւորն հրամայեաց այլ սաստիկ հարկանել զնոսա և արարին զհրամայեալսն. և տեսեալ զվէրս մարմնոց նոցա, դադարեցոյց զտանջանսն:

Եւ եհարց ցնոսա վասն նշխարացն զոր ունէին և ասէ. զի՞նչ են այդ մեռելոտի ոսկերքդ զոր բարձեալդ էք. եթէ դոցա ցանկայք զձեզ նոյնդ արարից: Իսկ աստուածահաճոյ կրաւնաւորն՝ առաջնորդն ամենեցուն, առ ոչինչ համարեալ զահ Թագաւորին ասէ. ոսկերքս այս ճգնաւորաց և սրբոց արանց են, որք բար[ե]ւոք խոստո-

վանութեամբ անցուցին զաւուրս իւրեանց. և մեր բարձեալ զսոսա[յ] տանելով ի հանդիսան զի նախանձաւոր լիցուք վարուց նոցա: Թագաւորն ասէ. եթէ մահ գոցա[յ] պատուական է, և ձեզ արարից զայդ, զի և դուք մահու հասանիցէք: Կրաւնաւորն ասէ. մեռանելն մեր ի ձեռաց քոց փոխումն է ի մահուանէ ի կեանս: Թագաւորն ասէ. բազում տանջանս կայ և մնայ ձեզ, ով խաբեւչք, որ խաբէք զամենեսեան և որոշէք ի գեղեցիկ կենաց աշխարհիս. այլ և զՅիսուս ոմն Աստուած քարոզէք և դարձուցեալ զմեր ազգս (ի պատրանս ձեր, արարէք ընաւ անապատ զեր)կիրս մեր: Կրաւնաւորն ասէ. ո՞հ որ ոչ իմանաս զառաջիկայ փրկութիւն նոցա[յ] (կամ) քո պատրաստեալ տանջանսն. զի որպէս անզգայ և անմիտք են աստուածք ձեր այնպէս և դուք: Արդ (սթա)փեա յամառութենէդ, ով թագաւոր, գիտեա եթէ (Յիսուս է ճշմարիտ) Աստուած և արարիչ ամենայնի. և դու թողեալ զարարիչն երկիրպագանես արարածոց. զի ոչ է երկիւղ առաջի աչաց քոց:

Թագաւորն ասէ. դադարեա ի ստայաւդ խաւսից քոց և փութա ցոյց ինձ ըզԲարզամ. ապա[յ] թէ ոչ դժնդակ տանջանաւք սատակեցից զձեզ, և ձեաւք խրատեցից զամենայն խաբիչս որ իբրև զձեզդ իցեն:

Կրաւնաւորն ասէ. մեզ ոչինչ փոյթ է վասն սպառնալեաց քոց և ի տանջանաց

քոց մեք ոչ երկիցուք, այլ զպատուիրանս Աստուծոյ մերոյ պահեմք. և մեզ (քաւ լիցի) եթէ վասն տանջանաց քոց մատնեսցուք զեղբայրն մեր. զոր ինչ կամիս արա[յ] վաղվաղակի:

Ցայնժամ բարկացեալ Թագաւորն, հրամայեաց նախ հատանե(ա)լ զատտուածախաւս լեզուս նոցա, և ապա[յ] հանել զաչսն և զոտսն և զձեռսն նոցա[յ] կտրել հրամայեաց և արտաքին այնպէս: Եւ այսպիսի զաւսն տանջանաց համբերելով, կատարեցան ի Քրիստոս ճգնաւորքն սուրբք որք էին թուով ԺԷ. ա և ընկալան զանապական պսակն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ: Եւ իբրև նոքա կատարեցան, դարձեալ Թագաւորն յառաջին խորհուրդն ընդ Առարշխս զի ածցեն զՆաքովր:

Եւ յարուցեալ իշխանն գնաց ի գիշերի առ Նաքովր, և պատմեաց նմա զամենայն խորհուրդսն և զհրամանս Թագաւորին: Եւ զգեցուցեալ նմա խորդ մաղեղէն (և եհան) զնա[յ] լինել յանապատին. որպէս զի (եկեալ զաւրական)նացն ի վաղիւն (գտցեն) զնա[յ] յանապատին և (կարծեսցեն) եթէ Բարղամ է, և տարցեն զնա[յ] առ Թագաւորն: Եւ զայս խորհուրդ ոչ ոք գիտէր, բայց միայն Առարշխս և Թագաւորն: Եւ իբրև այգ եղև, առէ Առարշխս ցզաւրս իւր. լուեալ է մեր եթէ հանապազ յայսմ անապատիս շրջէր Բարղամ. արդ եկայք

ա. Հմմ. ԺԸ.

խնդրեսցուք զգուշութեամբ, թերևս գտ-
ցուք զնա[յ]: Եւ ելեալ զաւրականացն
ցրուեցան յանապատին խնդրել զԲարղամ:
Եւ երբև տեսին զՆաքովր զգեցեալ զմա-
զեղէնն, զհետ մտեալ կալան զնա[յ] և ածին
առ իշխանն: Ասէ ցնա իշխանն. զի՞նչ ա-
նուն քո և զի՞նչ աւանդութեամբ ես դու:
Նաքովր ասէ. այր մի եմ ի բնակչաց ա-
նապատիս, աւանդութեամբ քրիստոնեայ,
և անուն իմ Բարղամ կոչի: Երբև լուաւ
զայս իշխանն, սկսաւ ուրախանալ յաչս
զաւրականացն և կալեալ զնա[յ] ած առ
թագաւորն: Կոչեաց թագաւորն զՆաքովր
մեկուսի և խրատեաց զնա վասն խորհրդոյն.
և ի վաղիւն նստեալ թագաւորն յատեան
հրամայեաց ածե[ա]լ զգայլն փոխանակ գա-
ռինն: Եւ երբև եմուտ Նաքովր ասէ ցնա
թագաւորն ի լուր ժողովրդեանն. դու ես
Բարղամ մշակն չարութեան, որ պատրեցեր
զորդին իմ սիրելի: Նաքովր ասէ. ես եմ
ճշմարիտ ծառայն Աստուծոյ Բարղամ, որ
զորդին քո յաստուածպաշտութիւն ածի:
Եւ թագաւորն առ աչս մարդկան բարկա-
ցեալ ասէ. բազում տանջանաւք կամիմ
սպանանել զքեզ, բայց այժմ ներեցից քեզ
և ապա հարցա[յ]քննեցից զքեզ առաջի
ամենայն իմաստնասիրաց իմոց. զի եթէ
յաղթիս ի նոցանէ. առցես յինէն պատիւ
ըստ արժանեաց քոց:

Եւ զայս ասացեալ ետ զնա յԱռարշ-

սէս և պատուիրեաց մի ինչ պակասեցուցանել նմա յամենայն պիտոյից: Եւ եղ համբաւ ընդ ամենեսեան, եթէ Բարդամ մատնեցաւ ի ձեռս Թագաւորին: Իբրև լուաւ Ցովասափ, եթէ կալան զվարդապետն իւր, սկըսաւ հոգալ և տրտմել և աղաչէր հանապազ զԱստուած, զի հասցէ յաւգնականութիւն ծերոյն: Իսկ մարդասէրն Աստուած ոչ կամեցաւ զտրտմութիւն մանկանն, այլ ի տեսլեան ի գիշերույ յայտնեաց նմա[յ] ի ձեռն հրեշտակի՝ եթէ Նաքովր աստեղա[յ]գէտն է զոր բերեալ է հայրն քո ի կերպ Բարդամու, զի եկեալ հաւանեցուսցէ զքեզ. թէ թիւր էր վարդապետութիւնն իմ զոր ուսուցի քեզ: Եւ յարուցեալ Ցովասափ ի քնոյ անտի և գոհութեամբ փառս մատուցանէր Աստուծոյ:

Իսկ Թագաւորն կարծեաց եթէ բարիոք խորհուրդ խորհեցաւ: Եւ իբրև անցին աւուրք երկու, յարուցեալ Թագաւորն գայ ի պաղատն Ցովասափու որդւոյ իւրոյ. և նորա ընդ առաջ ընթացեալ Թագաւոր(ի)ն. և ոչ համբուրեաց զնա[յ] հայր իւր որպէս և սովորն էր, այլ որպէս խռովեալ և տրտում մտեալ նստաւ: Եւ ապա կոչեաց առաջի իւր զորդին իւր և ասէ ցնա. զի՞նչ է չարահամբաւս զոր լուեալ եմ վասն քո, որդեակ, քանզի որչափ ուրախացայ ի ծննդեան քում, այնչափ ևս առաւել տրտմութիւն առի այժմս. զի անարգեցեր զալիս իմ. և պակա-

սեցուցեր զլոյս աչաց, իմոց հատեր յոյս իմ և եղեր ցնծութիւն թշնամեաց իմոց. և ծաղր արարեր զիս ամենայն մերձակայից իմոց. և երկիրպագեր ատար Աստուծոյ: Ընդէր արարեր զայդ, որդեակ իմ, և կործանեցեր զծերացեալ հայր քո: Արդ՝ լուր, որդեակ, խրատու հաւր քո, և եկ երթիցուք առաջի անմահից աստուածոցն մերոց, և անկեալ խնդրեսցուք զթողութիւն ի նոցանէ. և ես գիտեմ զի ողորմած են և ոչ յիշեն զմեղս մանկութեան քո զոր առ նոսա գործեցեր՝ խրատով և խաբէութեամբ չար ծերոյն. ես և զնա հաւանեցուցեալ եմ, զի զամենայն զոր ինչ ասաց քեզ, թիւրին էին խաբողական բանք և խաւսք:

Յովասափ ասէ. լուր հայր իմ արքայ, և մի ինչ բարկանար ի վերայ ծառայի քո. զի ոչինչ չար արարի առաջի քո, այլ փախուցեալ ի խաւարէ անգիտութեան՝ գնացի զհետ երկնաւոր լուսոյն. և հրաժարեալ ի դիւաց պղծոց՝ հաւատացի ի կենդանին Աստուած, որ բանիւ միայն ասաց լինել երեւելեաց և աներևոյթից և է ճշմարիտ Աստուած որ յերկինս է. զոր քարոզեաց Բարղամ բարիոք վարդապետն իմ: Իբրև լուաւ զայս թագաւորն, լցեալ բարկութեամբ վասն այսոյն առնելոյն զաստուածսն, և տրտմեալ յանձն իւր, ոչ գիտէր զինչ գործէր. քանզի տանջեալ զորդին իւր ոչ բաւէր վասն հայրական գթոյն. և թողեալ զնա[յ] անփորձ ոչ կարէր:

Եւ յարուցեալ առ ժամայն տրտում և ամաւթալից երեսաւք առէ ցորդին իւր. լաւ էր ինձ եթէ ամենևին չէիր ծնեալ [ա] դու յաշխարհ, ով թշուառական. արդ եթէ ոչ լուիցես ինձ և լինիցիս հաճոյ և բարերար աստուածոցն, չարաչար մահուամբ կորուսից զքեզ. ոչ որպէս զորդի, այլ իբրև զապստամբ թշնամի թագաւորի: Զայս սպառնացեալ թագաւորն և բարկութեամբ լցեալ ելեալ գնաց ի յարկս իւր:

Եւ յետ ելանելոյ թագաւորին, յարուցեալ Յովսափ եկաց յաղաւթս ի բաղում ժամս: Յայնժամ թագաւորն հրամայեաց ժողովե[ա]լ զամենայն ժողովս երկրին. և ժողովեցան միա[յ]համուռ ամենայն աշխարհն առ թագաւորն: Եւ ի̊ վաղիւն նստեալ թագաւորն յատեան հանդերձ որդւովն իւրով: Եւ եկեալ ամենայն իմաստնա[յ]սիրացն, և սկսան յանդիմանել զՅովսափ. ածին և զՆաքովր յատեանն ի կերպս Բարղամու: Յայնժամ

ա. Համ. Իբրև եւ թագաւորն կոչեաց զԱռաշիս և ասաց նմա զբանս որդւոյն. և խրատովն Առաշիսայ դարձաւ թագաւորն առ որդին և ասաց. ես զխաբող վարդապետն քո՛ զԲարղամ կալեալ ունիմ: Եւ այդ ժողովեմ բաղում ժողովուրդս յամենայն ազգաց. զի Բարաղամ և իմաստունքն մեր խօսեսցին առաջի մեր. և թէ յաղթի Բարաղամ, գիտասցես թէ խաբեբա է և պատրող. և սուտ բանիւ որոշեաց զքեզ ի մեծամեծացն մերոց: Իսկ աստուածասէր և բարեմիտ մանուկն Յովսափ ասաց հօր իւրում. կամք թագաւորիդ եղիցին. և Աստուած արասցէ որպէս հաճոյ է կամաց նորա: Եւ ի վաղիւն ժողովեցան...

Թագաւորն ասէ ցիմաստնասէր(ս)ն իւր. ահաւասիկ մեծ տագնապ կայ առաջի ձեր. եթէ յաղթէք Բարզամու, մեծ պատուոյ արժանի լինիք յինէն. ապա[յ] թէ յաղթիք ի նմանէ և յամաւթ առնէք զիս, ոչ ոք ի ձէնջ ապրի ի ձեռաց իմոց: Յովասափ ասէ. ուղիղ դատեցար, ով արքայ. արդ խաւսեցայց և ես ընդ վարդապետին իմոյ: Յայնժամ ասէ ցՆաքովր. [ա] գիտես, ով Բարզամ, թէ յորպիսի փառս և ի մեծութիւն գտեր զիս, և բազմահանճար բանիւք քովք ուսանալ ետուր ինձ զհայրենի աստուածսն մեր և պաշտել զանծանաւթն Աստուած:[բ] Խոստացար ժառանգել ինձ զյաւիտենական բարութիւնսն. և այսպիս[ի] բանիւք պատրեցեր զմիտս իմ. և ես գիտեմ զի ճշմարիտ է վարդապետութիւնն զոր ուսուցեր ինձ: Եւ այժմ եթէ յաղթեսցես զոցա[յ], մեծաւ պատուով պատուիս յինէն, որպէս զճշմարիտ քարոզ և վարդապետ աստուածային աւրէնաց. ապա[յ] թէ յաղթիս ի դոցանէ, կամ նենգով կամ խորա[յ]մանկութեամբ, և յամաւթ տաս առնել զիս. հաւատայ ինձ զի ձեռաւք իմովք հատուցից զվրէժ անարգանաց իմոց. և զամենայն անդամս քո մի մի

---

ա. Համ. աւել ունի . . Եւ դարձեալ ի Նաքովր՝ ի կերպարանեալն Բարզամ. և ասէ ցնա:

բ. Համ. Արդ կշիռ գիր զկեանս քո. եթէ յաղթես իմաստասիրացն. գիտեմ եթէ ճշմարիտ են բանք քոյին վարդապետութեանդ զոր ուսուցեր ինձ:

հատանեմ [ա] և արկանեմ դէշ գազանաց երկրի․ զի քե խրատեսցին ամենայն պատրիչք և մի՛ իշխեսցեն խաբել զորդի Թագաւորաց։

Զայս իբրև լուաւ Նաքովր, ահ պատեաց զնա[յ] և արտմութիւն յոյժ․ քանզի տեսանէր զինքն անկեալ ի գուբ զոր փորեաց և պեղեաց․ և ի միտս իւր եկեալ եթէ զինչ արասցէ։ Ապա լաւ համարեցաւ երթալ զհետ կամաց որդւոյ Թագաւորին, և զերծանել ի սպառնալեացն․ զի և ոչ Թագաւորն կարէր փրկել զնա[յ] ի ձեռաց մանկանն։

Արդ պարտ էր հակառակորդին վրէժխնդիր լինել ճշմարտութեանն․ և չանն բղդայլն հերքել ի քրիստոսական հաւատէն․ [բ] Իբրև սկսան վիճա[յ]րանել ընդ միմեանս իմաստնասէրքն, Նաքովր որպէս երբեմն Բարղամ առ Բաղակաւ, որ փոխանակ անիծից աւրհնեաց զԻսրայելական ժողովուրդն։ Առէ մի ոմն ի փիլիսոփայից անտի ցՆաքովր․ դու ես անմիտն և անիմայն [գ] Բարղամ՝ խաբէչն և պատրիչն․ որ զաստուածածն մեր արհամարհես, և զսիրեցեալ որդի Թագաւորին պատրեցեր երթալ զհետ խաչելոյ որդւոյ Թագաւորի՝ որդւոյն Մարիամու։ Նաքովր

ա․ Համ․ և տաց յուտել քեզ ի մսոյդ քո և հանից զաչս քո և հատից զլեզու քո և ապա արկից զքեզ․․

բ․ Համ․ ի հոտէն։

գ․ Համ․ անիմաստն։

ասէ, ես եմ ճշմարիտ Բարդամն, որ ուսուցի որդւոյ Թագաւորին զարդարութեան ճանապարհն երկիրպագանել Աստուծոյ կենդանւոյ և ոչ դիւաց: Իմաստա[յ]սէրն ասէ. մեծ և սքանչելի արանց ուսուցեալ են մեզ յաղագս անմահից աստուածոցն, զի նոքա[յ] միայն են աստուածք որ առնեն սքանչելիս մեծամեծս:

Իսկ Նաքովր սկսաւ ձեռամբն խաղաղացուցանել զամբոխն. յայնժամ բացեալ զբերան իւր և լցեալ ամբարիշտն արդարութեամբ և խաղացեալ ի վերա(յ) չարին հոգի շնորհաց:

Եւ ասէ ցԹագաւորն.[ա] դուք Ինքնակալ և ամենայն ժողովուրդք որք կայք ի տեսարանդ: Աստուած ճշմարիտ է արարիչ ամենայն արարածոց՝ երևելեաց և աներևոյթից, որ յոչէից ստեղծ զամենայն արարածս զոր տեսանեմք աչաւք. և զաներեւոյթս զոր իմանամք մտաւք. որ ասաց և եղեն. հրամայեաց և հաստատեցան. նա՛ է Աստուած ճշմարիտ և Թագաւոր ամենայն թագաւորաց: Իսկ ազգք մարդկան պատրեալք ի չարէն, թողին զարարիչն և երկիրպագին արարածոցս. և արարին աստուածս ձեռա[յ]գործս ամենայն ազգ ըստ կամաց իւրեանց: Ցորս են Քաղդէացիք, Եգիպտացիք և Հելլէնացիք:

---

ա. Համ. Լուր հզօր և Ինքնակալ արքայ և ամենայն ժողովուրդք

Ասացից վասն Քաղդէացւոց. որք մոլորեալ գնացին զհետ երևելի արարածոց, և արարին աստուածս յանուն արեգականն և լուսնի և աստեղաց և ծովու և գետոց. և երկրպագեն որոց արարին ձեռք իւրեանց և ոչ իմանան ոգէտք եթէ արարիչ մեծ է քան զարարածն. և պահեն զնոսա զգուշութեամբ. և զայս ոչ իմանան՝ եթէ պահաւղն զաւրաւոր է քան զպահեալն: Ասացից քեզ, ով Թագաւոր, և վասն երևելեացս որք մոլորեալ ասեն զնոսա(յ) աստուածս: Եթէ զերկինս ասեն Աստուած. չէ ճշմարիտ, քանզի երկինք ի Ջրո(յ) հաստատեալ են վերարկու երկրիս և ծածկոյթ երևելեաց և աներևոյթիցն ընդ մէջ: Արդ թէ զարեգակըն կամ զլուսին կամ զաստեղս համարին աստուածս, և ոչ այն է ճշմարիտ. զի և նոքա կարգեալ են ի ծառայութիւն աշխարհի. ի լուսաւորութիւն տուընջեան և գիշերոյ. և սոքա եղականք են և անցաւոր:

Արդ թէ զՋուր համարին Աստուած, չեն ճշմարիտ. քանզի Ջուր եղև ի պէտս մարդկան. տեսական է և անցաւոր, ունի յաւելումն և նուազումն: Արդ թէ զհուր ասեն աստուածս, և այն ի պէտս մարդկան է. ունի լոյս և ջերմութիւն, այլ ի Ջրոյ շիջանի և խաւարի: Եւ այլ բազում աստուածըս անուանեն յերկրի. զորս ոչ է պարտ յիշել ի տեղւոջս, ով Թագաւոր. այս են աստուածք Բաբելացւոց, Հելլենացւոց և

Եգիպտացւոց. և մեր ունել ի նոցանէ ա-
բարար մեզ աստուածս ըստ նմանութեան
աստուածոց նոցա:

Ասացից Թագաւոր և վասն Հրէից, որք
են ազգէն Աբրահամու՝ ազգ սուրբ ժողո-
վուրդ սեպհական. զոր եհան Աստուած ի ծա-
ռայութենէ Փարաւոնի արքային Եգիպտա-
ցւոց հզաւր ձեռամբ ի ձեռն Մովսէսի աւ-
րէնսադրին նոցա: Եւ երևեցոյց նոցա մե-
ծամեծ սքանչելիս. զծովն ցամաքեցոյց և
որպէս ընդ ցամաք անցոյց զնոսա ընդ մէջ
ծովուն. և զհակառակորդն նոցա ընկղմեաց
և պահեաց զնոսա յանապատին ամս քա-
ռասուն. և զհաց երկնից ետ նոցա ուտել.
և ջուր ի վիմէ ետ նոցա[յ] ըմպել. և բա-
զում ազգս և Թագաւորս հնազանդեցոյց
նոցա[յ]. և այլ բազում բարութիւնս եցոյց
նոցա[յ]: Եւ նոցա զամենայն մոռացեալ,
յորժամ (եկն) ի վաղճան աւուրց մարմնացեալ
միածին Որդին Աստուծոյ վասն փրկութեան
մարդկան, եղեն նմա[յ] հակառակ. մինչև
մատնեցին զնա[յ] իշխանին Հռոմոց. և ի
խաչի դատապարտեցին. և ոչ յիշեցին զպար-
գևս նորա զոր արար նոցա[յ]: Եւ նոքա ու-
րացան զՔրիստոս զՈրդին Աստուծոյ, [զ]որ
նոցա ետ զամենայն ա բարութիւնս և ան-
միտք եղեն քան զհեթանոսս:

---

ա. Համ. խիստ կրճատել է և մի քանի բաներ աւելացրել. որ առիթ է տալիս Կոնիբերին կարծելու թէ

Իսկ քրիստոնեայք խոստովանին զամենասուրբ Երրորդութիւնն. և եթէ ճշմարիտ Որդի Աստուծոյ է Յիսուս Քրիստոս. իջեալ յերկնից վասն փրկութեան մարդկան, ծնեալ ի սուրբ կուսէ Մարիամայ առանց սերման. Եւ յետ ծննդեանն անարատ պահեաց զկուսութիւն ծնաւղին և երևեցաւ յերկրի, ընդ մարդկան շրջելով և կատարեաց զամենայն. վասն որոյ առաքեցաւն ի Հաւրէ, և համբերեաց խաչի և մահու կամաւորապէս, և յարեաւ յաւուր երրորդի, աւերեաց զդժոխս և խորտակեաց զբռնութիւն սատանայի և համբարձաւ յերկինս և նստաւ ընդ աջմէ Հաւր. և զՍուրբ Հոգին առաքեաց առ ընտրեալ աշակերտսն իւր: Եւ լցեալ Հոգւովն Սրբով ելեալ քարոզեցին ընդ ամենայն տիեզերս զմկրտութիւն յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. և ուսուցին պահել զամենայն պատուիրանս նորա: Եւ այս են պատուիրանք նորա. ի սրբութի՛ւն, ի պա՛հս, յաղա՛ւթս, յողորմութի՛ւնս, յաղքատսիրութիւնս. չչնալ,

---

հայերէնը յունարէնից անկախ է: «Եւ այն զի՞ է պաշտելի ապականեալն և անցաւորն: Թողում զՀելլենացւոցն և զԵգիպտացւոցն և զՔաղդէացւոցն. որ փոխանակ անմահին Աստուծոյ զմարդիկ պաշտէին. զարս և զկանայս, զպոռնիկսն և զարուագէտսն և այլ ազգի ազգի չարագործսն. նաև զմուկն և զաքիս և զամենայն գարշելիս: Եւ մեզ առաւել աւանդութիւնս արարեալ զաստուածս յանաստուածիցն այնոցիկ: Իսկ քրիստոնեայքն . . .

չդողանալ, պատուել զհայր և զմայր, սիրել զսիրողն և զթշնամիս. յամենայն չարեաց հեռանալ. հանապազ խնդրել զարքայութիւնն և միշտ գաւհանալ զԱստուծոյ: Գիտասջիր, Թագաւոր, զի ճշմարիտ Աստուած է Յիսուս Քրիստոս խաչեալն. զոր քրիստոնեայք պաշտեն և ճշմարիտ են պատուիրանք նորա, և ոչ գոյ այլ Աստուած բա[յ]ց ի նմանէ:

Եւ երբև կատարեաց Նաքօմն զբանս զայսոսիկ, բարկացեալ Թագաւորն սկսան այլայլուննել երեսք նորա: Պապանձեցին իմաստնա[յ]ոէրքն և ոչ կարացին նմա[յ] տալ պատասխանի. իսկ որդի Թագաւորին գոհութեամբ փառս մատուցանէր Աստուծոյ, զի պաշտաւնեա չարին բարու(յ) եղև վրէժխնդիր:* Իսկ Թագաւորն Թէպէտ և բարկացաւ յոյժ, սակայն ոչինչ կարէր առնել Նաքօմի. զի ճշմարտութեամբ կարկեաց զիմաստնա[յ]ոէր(ս)ն նորա: Ապա[յ] հրամայեաց Թագաւորն զնալ բազմութեանն իւրաքանչիւր յարկս իւրեանց. զի խորհեսցի թէ զինչ արասցէ: Իբրև յարեան յատենէն, առէ Յովասափ զԹագաւորն. ուղիղ դատեցար զամենայն դատաստան քո, արդ մի ինչ անիրաւութեամբ առներ: Հրամայեա[յ]

* Հաւ. և արքանեակն սատանայի վրէժխնդիր եղև Քրիստոսի. զի Նաքօմն կախարդ հաւատաց Քրիստոս և եղև քարոզ Աւետարանի նորա:

վարդապետին իմոյ լինել առ իս և դու առ
զիմաստնասէրքդ․ ապա թէ ոչ, եկեսցեն
իմաստնասէրքդ քո ընդ իս և դու առ դվար-
դապետն իմ ընդ քեզ․ զի գուցէ եթէ իմի-
մին եկեսցեն ընդ քեզ, չար ինչ գործեսցեն
վարդապետին իմոյ վասն յաղթելոյ նոցա։

Եւ թագաւորն առեալ զիմաստնա-
սէրքն գնաց ամաւթով։ Իսկ Յովասափ դար-
ձաւ ուրախութեամբ ունելով ընդ իւր զ-
Նաքովր։ Իբրև եկին առ ցնա Յովասափ․
գիտեմ ես ճշմարիտ որ ոչ ես դու Բարղամ
վարդապետն իմ, այլ Նաքովր աստեղա-
գէտն ես դու․ և զարմանամ ես թէ զիա՞րդ
այնպէս պատասխանի կարացեր առնել․ արդ
զոր ինչ արարեր այսաւր բար[ի]ւոք էր։ Վասն
որոյ ուրախ լեր Նաքովր․ զի բազում բար-
ւոյ պարտական եմ քեզ յաղագս վրէժխնդ-
դիր լինելոյ քեզ ճշմարտութեան․ և պայ-
ծառացուցանելոյ զքրիստոնէական հաւատս։
Եւ արդ լուր ինձ, Նաքովր, և ի գիտել քո
զայդ ամենայն մի վարձակորոյս լինիր, այլ
հաւատա ի Քրիստոս և խոստորեա ի չար ճա-
նապարհաց քոց․ զի ճշմարիտ է Աստուածն
քրիստոնէից, զոր դու քաջ գիտես քան զիս․
արդ մի՛ զրկի՛ր ի յաւիտենական բարու-
թեանցն Քրիստոսի և անվախճան տանջա-
նացն ժառանկորդ լինիր։ Նաքովր ասէ․
բար[ի]ւոք ասացեր ընդ ծառայս քո, ո՛վ տէր
իմ, և ես գիտեմ զի Յիսուս Քրիստոս միայն
է Աստուած զոր քրիստոնեայք պաշտեն,

իսկ մեր աստուածքս դևք են. այլ անոտն կեանք աշխարհիս այսորիկ արգել զիս ի ճըշմարիտ հաւատոյն մինչև ցայժմ: Եւ արդ՝ եթէ գիտես որ ընդունի Քրիստոս զդառնալն իմ առ նա և չյիշէ զառաջին գործսն իմ. և ես արարից զհրամանս քո և հաւատացից յամենակալն Աստուած:

Ցովասափ ասէ. մի՛ ինչ յերկուանար, ով իմաստուն, զի ոչ է յերկրի մեղս որ արգելուլ կարէ զմարդասիրութիւնն Աստուծոյ. զի ոչ կամի զմահ մեղաւորին, այլ ըզդառնալն նորա ի չար ճանապարհէն և ըզկեալն. և դու մի՛ վհատիր ի Քրիստոսէ զի ծերացեալ ես և ի մեծ ի հունձս հասեալ: Նաքովր ասէ. հաւատամ ի ճշմարիտն Աստուած ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, յԵրրորդութիւնն անբաժանելի. և արդ յայսմհետէ այլ ոչ ես տեսից զերեսս թագաւորին և ոչ զիշխանացն, այլ երթայց զհետ Քրիստոսի կեցուցանել զիս զմեղաւորս: Եւ իբրև լուաւ զայս Ցովասափ ի ծերոյն, յարուցեալ յաթոռոյ իւրմէ և գիրկս արկեալ համբուրեաց զնա[յ] և արարեալ աղօթս արձակեաց զնա[յ]:

Եւ Նաքովր եկեալ ի պաղատէն ուղիղ մտաւք, և որպէս գաղտնի ընթացեալ յանապատն. և երթեալ եգիտ անդ զայն ի կրաւնաւորացն սուրբ, որ կայր ի թագստի վասն ահի թագաւորին: Եւ տեսեալ զնա[յ] Նաքովր անկաւ առաջի նորա խոստովանե-

լով զմեղս իւր, և պատմեաց նմա զամենայն վասն որդւոյ Թագաւորին: Եւ անապատականն ծերոյն տարածեալ զձեռս իւր, գոհութեամբ փառս մատուցանէր Աստուծոյ: Յայնժամ մկրտեցաւ ի Նմանէ Նաքովր և առժամայն զգեցեալ զգեստ կրաւնաւորական, և մեծաւ ճգնութեամբ վարէր ըզկեանս իւր: ա

Իսկ Թագաւորն դարձեալ կոչեաց զԱռարշախս և խորհուրդ առնէ վասն մանկանն, թէ զինչ արասցէ: Յայնժամ ասէ Առարշախս ցԹագաւորն. և այլ ինչ հնարս ունիմ ասել վասն որդւոյ քո. գիտեմ զոմն կախարդ և հմուտ մոգական արուեստից և աստեղագիտութեան առաւել քան զՆաքովր, կոչեցից զնա[յ] առաջի քո. և եթէ նա[յ] ոչ գտանէ հնարս և դարձուցէ զմանուկն յառաջին միտս իւր, այլ մի՛ ևս աշխատ լինեք վասն նորա:

Եւ այր մի կախարդ յոյժ անուանեալ Թեւդաս, բ և բնակեալ էր ինքն յայրըս և ի փապարս անապատին. և ոչ այլ ինչ ուտէնոյր, բայց մաշկեղէնս ի ձմեռնային և յամառնային ժամանակս. և շրջէր հանապազ բոկ և գլխիբաց. և կերակրէր վայրի բանջարով և լոկ ջրով: Եւ այնչափ հմուտ էր կախարդութեան՝ զի յայտնապէս ի ծառայութիւն իւր կարգեալ ունէր դևս բա-

ա, Համ. և եղև. ագռաւն որպէս աղաւնի:

բ. Յուն. Θευδᾶς Համ. Թևդաս:

զումս: Եւ առաքեաց առ նա[յ] Թագաւորն զոմն ի մեծամեծաց իւրոց զի իջեալ տեսցէ զնա[յ]: Գրեաց առ նա[յ] և զամենայն եղեալսն յորդւոյն իւրմէ: Եւ իբրև ընթերցաւ Թէոդաս զթուղթ Թագաւորին, մեծաւ յաւժարութեամբ իջեալ յանապատէն եկն ի քաղաքն:

Իբրև գիտաց Թագաւորն զգալուստ կախարդին, յարուցեալ ել ընդ առաջ նորա[յ]. և մտեալ Թէոդաս առաջի Թագաւորին և զգեցեալ մաշկեկ մի միայն, և զաւազան արմաւենի ի ձեռին իւրում, և հեր գլխոյ իւրոյ աճեալ իջանէր մինչև ցպըճզունս ոտիցն: Իբրև ողջոյնեցին զմիմեանըս և նստան Թէոդաս ասէ. Թագաւոր, յաւիտեան կաց. քանզի լուայ եթէ իմաստնասէրքն քո յաղթեց(ին) քրիստոնէիցն և ուրախացա(յ) յոյժ: Թագաւորն ասէ. ոչ է այդպէս որպէս լուեալ ես, ով պատուական ծեր, այլ մանաւանդ մեք յաղթեցաք ի քրիստոնէից: Քանզի Նաքովր զոր դուն ճանաչես՝ զոր ունէաք մեզ զաւրական նահատակ մեզ եղեւ. քանզի լռեցոյց զամենայն իմաստնա[յ]սէրքն և զորդին իմ ուրախ արար ի վերա(յ) իմ. և ինքն փախուցեալ յանապատ գնաց զհետ աւանդոյն քրիստոնէից. և եղև նոցա[յ] կարգակից: Արդ դու, ով վարդապետ, եթէ կարող ինչ ես աւգնեայ աւանդութեանս մերում. զի մի ծիծաղեսցին քրիստոնեայք ի վերայ մեր:

Թեւդաս ասէ. զամենայն լուեալ եմ, ով թագաւոր, և գիտեմ ճշմարտութեամբ, բայց փորձելով կամեցայ հարցանել: Նաքովր վատա[յ]ախօտ է և արծաթա[յ]սէր. և երկուցեալ յորդւոյն քումմէ և կաշառացն ա(ի)ն կալեալ և զմեզ յանդիմանեաց: Բայց դու մի հաւատար եթէ Նաքովր կրաւնաւորեցաւ. փախուցեալ է յերեսաց քոց և շրջի յանապատին. արդ մի երկնչիր ի քրիստոն(է)ական հաւատոյն, քանզի ոչ ոք կարէ ընդդիմանալ ինձ (ի) քրիստոնէից: Զայս ասացեալ թագաւորին, պարծէր յանձն իւր ըստ բանի մարգարէին. զի՞ պարծի ի չարութեան հզաւր յանաւրէնութեան զաւրհանապազ: Թագաւորն ասէ. ես աստ ոչ ունիմ քրիստոնեայ, զի վիճաբանի ընդ քեզ. այլ եթէ կարող ես բազում հնարիւք Ջանայ վասն որդւոյն իմոյ: Թեւդաս ասէ. զինչ և խնդրես կարող եմ առնել զամենայն. արդ հրամայեա[յ] արտաքս հանել զամենայն ծառայս իւր ի նմանէ. և փոխանակ նոցա[յ] կացոյ աղճկունս գեղեցիկս[ա] ի սպասաւորութիւն նմա[յ]: Եւ ես արկից յորդին քո դև պոռնկութեան և Ջեռուցից զնա[յ] մինչև պոռնկեսցի ընդ նոսա: Եւ Աստուածն զոր նա[յ] պաշտէ, ոչ կարէ տեսանել ըզպոռնկութիւնն. և վերացուցանէ ի նմանէ զաւգնականութիւնն իւր և նա դառնայ

---

ա. Համ. գեղեցկատես կանանս:

ի հայրենի աւանդութիւնն իւր: Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի թագաւորին: Եւ հրամայեաց հանել զծառայսն նորա ի պալատէն. և կացոյց փոխանակ նոցա[յ] աղճկունս ի սպասաւորութիւն որդւոյ իւրոյ:

Եւ գնացեալ Թեկղա ի գլեանոցն իւր. ընթեռնոյր զմաղեկան գիրսն, և յանուանէ կոչէ զդեան առաջէր պատերազմել ընդ Յովասափու: Իսկ աստուածահաճոյ պատանին առ ոչինչ համարելով զպաղատանաց նորա չարին, այլ աղաւթէր առ Աստուած այսպէս:

Տէր Աստուած, ամենակալ, յոյս քրիստոնէից և ապրեալ հաւատացելոց քոց. որ անաւգնականից աւգնական ես և տկարաց զաւրութիւն. նայեաց յիս անարժան ծառայս քո և զաւրացոյ զիս քոյին ամենազաւր զաւրութեամբդ ընդդիմանալ աներևոյթ թշնամւոյն. զի հայր իմ և մայր իմ թողին զիս և Տէր իմ ընկալաւ զիս: Եւ զայս ասացեալ, կնքէր նշանաւ սուրբ խաչին զամենայն անդամս իւր. և առժամայն հեռանայր ի նմանէ ամենայն խորհուրդ սատանայական: Իսկ այլն չարութեան դանայր ամաւթալից զիմաւք առ առաքելն իբեանց Թեկղա և պատմէին նմա զհաւատարմութիւն մասց մանկանն, թէ ոչ կարեմք ազդել ի նա զի նշանաւ խաչին պարսպէ զամենայն անդամս իւր: Եւ մեր աւեսեալ զնշան խաչին, հալածիմք և փախչիմք

ի նոցանէ. այլ և ոչ իշխանն մեր սատանայ կարէ աղդել ինչ ի նմա[յ] իբրև տեսանէ զնշան խաչելոյն:

Իսկ Թադաւորն տեսեալ եթէ ոչինչ աւգտեցաւ ի խրատէն Թեդասու, կոչեաց զնա[յ] և ասէ. ահա[յ] զոր ինչ հրամայեցեր ինձ արարի, ով իմաստունդ, և ոչինչ աւգտեցաւ. արդ եթէ այլ ի՞նչ հնարս գիտես զի արասցուք նմա: Եւ Թեդասս խնդրեաց ի Թադաւորէն երթալ տեսանել զՅովասափ և խաւսել ընդ նմա[յ]: Եւ յարուցեալ գնաց առ էրն Յովասափ և մտեալ նստաւ և ասէ ցնա. ընդէ՞ր խոտորեցեր ըզմիտս քո, Յովասափ, և ուրացար զանմահ աստուածսն մեր գնալով զհետ քարոզութեան աւտար Աստուծոյ. և բարկացուցեր զհայրն քո և եղեր ատեցեալ յաչս ամենեցուն. Թողեր զբարեյաղթ աստուածսն մեր և գնացեր զհետ որդւոյն Մարիամայ: Ով էր այր Հրէայ և ընդ նոցին աւրինաւք. և դարձեալ հակառակեաց հայրենական աւրինացն զոր ունէին Հրէայքն. և Հրէիցն ոչ ընդունելով զվարդապետութիւն նորա[յ], մատնեցին զնա[յ] իշխանին մերոյ որ էր ի Հռոմոց. և խաչիւ դատապարտեալ ի նմանէ իբրև զմահապարտ մեռաւ: Յովասափ ասէ. կարկեա զբերան քո, խաբիչ և պատրիչ հնացեալ աւուրբք չար ծեր, և ժառանկորդ գեհենին. ո՞րպէս համարձակիս այսպն առնել զՓրկիչն աշխարհի, որ լուսաւորեաց զխա-

ւարեալս սրտիւք և զգերեալս ի մահուանէ ազատեաց։ Ո՞վ է Աստուած բաց յԱստուծոյ կենդանւոյ. որում կան առաջի նորա հազարք հազարաց և բիւրք բիւրուց վերին զաւրութիւնք հոգեղէն դասուց. որ բանիւ իւրով ասաց լինել ամենայն արարածոց երևելեաց և աներևոյթից. և դուք թողէք զարարիչն պաշտեցէք զարարածս զանբանս, և զանշունչ պատկերս դիւաց աստուածս անուանէք. որք ոչինչ աւգնել կարեն ամենևին անձանց և ոչ յուսացելոց ի նոսա։ Եւ եթէ ոչ հաւատաս, մուտ ընկեա մի ի նոցանէ ի գետին, և թոյլ տուր աւուրս բազումս և տես թէ յառնէ առանց կանգնելոյ թէ ոչ։ Արդ՝ որ ինքեանց չէ կարող աւգնել[ոյ], այլոց զիա՞րդ կարասցեն աւգնել։ Այլ ես շնորհիւ Տեառն իմոյ Յիսուսի Քրիստոսի ոչ պարտող բանից լսեմ, այլ երկիրպագանեմ ճշմարտին Աստուծոյ իմոյ կենդանւոյ՝ ամենա[յ]սուրբ Երրորդութեանն. վասն որոյ Որդին Աստուծոյ իջեալ յերկնից և մարմնացաւ ի սուրբ Կուսէն Մարիամայ և խաչեցաւ և թաղեցաւ և յարեաւ ի մեռելոց և համբարձաւ յերկինս և նստաւ ընդ աջմէ Հաւր. որ և գալոց է միւս անգամ դատել զկենդանիս և զմեռեալս. և պատրաստեալ է քեզ և կամարարաց քոց զհուրն յաւիտենից զպատրաստեալն սատանայի։ Թեկղաս ասէ. զաւանդութիւնս մեր բազում իմաստնասէրք ասացին և հաւանեցուցին

զթագաւորս և զմեծա[յ]մեծս աշխարհի:

Յովհաննու ասէ․ բարւոք մարգարէացաւ մարգարէն Դաւիթ ի վերա(յ) քո նմանեացն․ թէ որպէս իժի քարբի լցեալ դաւանջ իւրեանց: Արդ՝ աստուածային քարոզքն և ճշմարիտ առաքեալքն Քրիստոսի, ոչ եթէ բռնութեամբ դարձուցին զոխեղերս յաստուածպաշտութիւն, այլ բազում նշանաւքն զօր առնէին․ զի կուրաց տեսութիւն շնորհէին և կաղաց գնացս, զհիւանդս բժշկէին անուամբն Յիսուսի Քրիստոսի խաչելոյն և նշանաւ խաչին հալածեալ զդևս և հաւաստալի առնէին զքարոզութիւն իւրեանց: Եւ դուք մոլորեալք ի ճանապարհէն արքայութեան, արարէք ձեզ աստուածս իւրաքանչիւր ըստ կամաց իւրեանց: Եւ արդ գիտացիր․ զի ոչ գոյ այլ Աստուած յերկինս և յերկրի բաց մի Աստուած ամենասուրբ Երրորդութիւնն, որ է արարող ամենայնի և ամենայն ինչ նովաւ եղև:

Թէոդաս իբրև լուաւ զբանս զայսոսիկ և զվարդապետութիւն նորա զի աստուածուստ էր, զղջացեալ դառնալին ամբարշտութիւնն և զխոյս ճշմարտութեամբ զարդարութեան ճանապարհն․ հեռացեալ ի սատանայական գնացիցն և ուղղեալ զանձն իւր զհետ կոչմանն Քրիստոսի: Յայնժամ առաջնորդեալ Թէոդաս առաջի ամենայն ժողովրդեանն մեծաւ ձայնիւ և ասէ․ գիտացիր ճշմարտութեամբ ով թագաւոր, զի հոգի

Աստուծոյ բնակեալ ունի յինքն որդին քո· և մեք յաղթեմք ի նմանէ, զի ոչ ոք կարէ ընդդիմանալ աստուածուսոյց վարդապետութեան նորա· և ասէ՝ մեծ է Աստուածն քրիստոնէից և ոչ գոյ այլ Աստուած բաց ի նմանէ:

Եւ դարձեալ ասէ ցՅովասափ· ասա[յ] ինձ, ծառայ Աստուծոյ կենդանւոյ· եթէ զինչ ընդունի՞ Աստուած զդառնալս իմում առ նա: Յովասափ ասէ· այս ընդունի զքեզ, և զամենայն որք դառնան առ նա[յ] ի չար ճանապարհաց իւրեանց· և հայրական գթով ընդ առաջ լինի մեղաւորին: Քանզի ուրախութիւն մեծ լինի յերկինս առաջի հրեշտակաց Աստուծոյ վասն դարձի միոյ մեղաւորի· զի ի ձեռն մարգարէին ասէ· եթէ իցեն մեղքն ձեր իբրև զյորդան կարմիր՝ իբրև զձիւն սպիտակ արարից· և ինքն Փրկիչն ասաց· ոչ եկի կոչել զարդարս այլ զմեղաւորս յապաշխարութիւն· այս են խոստմունքն Աստուծոյ առ ապաշխարողսն: Արդ մի վհատիր, այլ ընթացիր զհետ մարդասիրին Քրիստոսի· և լուսով նորա[յ] երեսք քո մի ամաչեսցեն· և ի մտանելդ քո յաւազան ջրոյ մկրտութեան, առ ժամայն մերկանաս ի քէն զհնութիւն մեղաց քոց և զգենուս բոլորովիմբ զՔրիստոս և ազատիս ի ծառայութենէ սատանայի՝ գնեալ արեամբըն Քրիստոսի· և լինիս որդի Հօրն երկնաւորի և տաճար Հոգւոյն Սրբոյ(յ):

Թէպէտ երբեմն լուաւ զբանս զայս յորդ-

ւոյ Թագաւորէն և նոյն ժամայն ելեալ գնաց յարկս իւր: Եւ ժողովեալ զամենայն զիւր կախարդութեանն այրեաց. և ինքն գնացեալ յանապատն, ուր էր Նաքովր, և մըկրտեցաւ ի նմանէ խոստովանեալ զմեղս իւր և զգեցեալ զգեստ կրաւնաւորական: Եւ Թեկղաս և Նաքովր կացին յանապատին ի միասին և ապաշխարեցին մեծաւ ճգնութեամբ և ջերմեռանդն արտասուաւք, պահովք և աղաւթիւք և անդադար սաղմոսերգութեամբ զամենայն աւուրս կենաց իւրեանց ի տուէ և ի գիշերի:

Իսկ Թագաւորն անյուսեալ յամենայն խորհրդոց իւրոց, և այլ ոչինչ հնարս կարէր գտանել իրացն: Դարձեալ խորհէր ընդ Առաքշախս իշխանն. թէ զինչ արասցէ նմա[յ] և նորա պատասխանի տուեալ ասէ. ահաւասիկ զամենայն հնարս հնարեցաք և ոչ կարացաք շրջել զմիտս նորա ի քրիստոնէական հաւատոյն: Արդ՝ եթէ տանջես զնա[յ], դու լինիս հակառակ բնութեանդ. և եթէ սպանանես անդէպ է՝ զի հայր ես: Այլ հրամայեա բաժանել զԹագաւորութիւնդ քո ընդ երկուս. և տուր նմա[յ] զմին բաժինն և նա[յ] զղջացեալ դառնայ յաստուածն մեր. և հաճոյ թուեցաւ այս Թագաւորին: Եւ նա[յ] կոչեաց զորդին իւր, և բաժանեալ զաշխարհն իւր և զգաւառն յերկուս. և կացուցեալ զորդին իւր Թագաւոր: Եւ բազում զաւրաւք և փառաւք

արձակեալ զնա ի թագաւորութիւնն իւր. տուեալ նմա[յ] և տուրս արքունականս: Եւ հասեալ նմա[յ] ի գաւառսն, սկսաւ կանգնել զնշան խաչին ընդ ամենայն աշխարհն իւր. և շինեալ եկեղեցիս մեծամեծս և զամենայն տաճար կռոցն քակէր ի հ(ի)մանց: Եւ գտեալ զոմն եպիսկոպոս փախըստական ի հաւրէն իւրմէ, զնա բերեալ կացոյց քահանայապետ և առաջնորդ քաղաքին. որ էր այր պարկեշտ և սուրբ և հմուտ ամենայն Հին և Նոր Կտակարանաց. և շինեաց եկեղեցիս մեծ և հռչակաւոր մերձ ի պաղատն իւր յանուն սուրբ Աստուածածնին. և կանգնեաց աւազան ի մէջ եկեղեցւոյն. և ամենեքեան գային և մկրտէին ի նմանէ, և բժշկէին յիւրաքանչիւր ցաւոց հոգւոյ և մարմնո(յ):

Եւ սկսաւ բազմանալ և աճել աւր ըստ աւրէ ուղղափառ հաւատք քրիստոնէութեան յերկրին Ցովլասսափու, մինչև ոչ բաւէին քահանայքն ի մկրտել. և թագաւորն բաշխէր հանապազ զինչս ում և պիտոյ լինէր: Եւ սկսան գալ առ նա[յ] բազումք ի թագաւորութենէ հաւրն իւրոյ. և նա[յ] որքան բաշխէր զինչս իւր, ևս քան զևս յաւելոյր Աստուած ի ստացուածս նորա եւթնպատիկ յոյժ: Եւ եբարձ զամենայն հարկս ի թագաւորական գաւառէն իւրմէ: և ոչ մնաց անիրաւ ոք կամ զրկաւղ յաշխարհն յայն. և ել համբաւ բարութեան

նորա[յ] ընդ ամենայն աշխարհն: Եւ սկսաւ տունն Յովասափու աճել և բազմանալ աւր ըստ աւրէ. և տուն հաւրն իւրոյ նուազել:

Եւ տեսեալ Թագաւորին Աբենների ըզ-պաւրանալ որդւոյն իւրոյ և զիւր նուազելն, յայնժամ ծագեաց լոյս աստուածային շը-նորհաց ի սիրտս նորա. և գիտաց եթէ զոր ինչ արար Յովասափ բար[ի]ւոք էր: Ապա գրեաց նամակ առ որդին իւր որ ունէր աւ-րինակ զայս:

Աբեններ Թագաւոր Թագաւորաց Յո-վասափու Թագաւորի որդւոյ իւրոյ ողջոյն:

Քանզի ի միտս իմ եկեալ տեսանեմ զմեծութիւն Թագաւորութեան իմոյ նուա-զեալ,ա և զքոյդ աճեալ և պաւրացեալ. և վասն այսորիկ անկայ զմտաւ և սթափե-ցա(յ) յարբեցութենէս. և տեսի զճշմարիտ լոյսն քրիստոնէական հաւատոցդ՝ առ ի ճա-նաչել զարարիչն արարածոց: Եւ դու, որ-դեակ իմ, բազում արտմութիւնս տեսեր յինէն. և այլ ևս բազում քրիստոնեայս սպանի վասն քո. արդ ողբալով զղջանամ զառաջին գործել զչարիսն իմ զի յամենայնի հակառակ եղէ Քրիստոսի:

Արդ եթէ գիտես, որդեակ, եթէ ըն-դունի Քրիստոս զդարձ իմ առ նա[յ]. և անյիշաչար՝ լինի ի վերա(յ) ամենայն մեղաց իմոց, զոր գործե(ալ) եմ առ նա[յ]. ծանոյ

ա. Համ. որպէս զծովս և զփոշի առաջի հողմոյ:

հաւր քո զամենայն· զի ի ձեռն քո լուսաւորեցայց երկնային լուսովն. և շնորհք Տեառըն Աստուծոյ մնասցէ առ քեզ ամէն:

Յովասափ իբրև լուաւ զհրովարտակ հաւըն իւրոյ, զարմացաւ յոյժ և ըերկրեցաւ ի միտս իւր և ասէ: Գոհանամ զքէն Տէր, զի երկայնամիտ եղեր առ ծառայս քո և լուար աղաւթից իմոց. և այժմ աղաչեմ զքեզ Տէր, զաւրացոյ զնա յայսմհետէ ի պատուիրանս քո և հալածեա[յ] ի նմանէ զամենայն սատանայական պատերազմունս. և տուր նմա ժամանակ ապաշխարութեան և քեզ փառք յաւիտեանս:

Եւ յարուցեալ առ ժամայն ամենայն բազմութեամբըն հանդերձ, գնաց առ հայր իւր: Եւ նորա լուեալ զգալուստ որդւոյն իւրո(յ), ել ընդ առաջ նորա[յ] ամենայն բազմութեամբըն և մեծամեծաւք իւրովք հանդերձ. և դիրկս արկեալ աստուածաւք հանդերձ համբուրեցին զմիմեանս և ուրախութեամբ մտին ի քաղաքն:

Եւ Աբեններ սկսաւ ասել յորդին զամենայն խորհուրդ սրտի իւրոյ թէ որպէս զղջացաւ: Եւ Յովասափու բացեալ զբերան իւր, վարդապետեաց հաւր իւրոյ զսկզբանէ լինելութեան աշխարհի մինչև զմնաւրէնութիւնն Քրիստոսի. և թէ Որդին Աստուծոյ վասն մերոյ փրկութեան իջեալ յերկնից՝ ծնեալ ի սրբոյ կուսէն, համբերեաց խաչի և մահու. և յարուցեալ ի մեռելոց

յաւուր երրորդի, աւերեաց զդժոխս և ըզ-
բռնութիւն մահու ելոյծ. և համբարձաւ
յերկինս և նստաւ ընդ աջմէ Հաւր. և գա-
լոց է միւս անգամ դատել զամենայն աշ-
խարհ: Զայս և այլ ևս բազումս խաւսե-
ցաւ Յովսափ ի լսելիս հաւր իւրոյ: Եւ
թագաւորն լուեալ զայս յորդւոյն իւ-
րոյ, ի ձայն բարձր աղաղակեաց ասէ. մեծ
է Աստուածն քրիստոնէից, և ոչ գոյ Աս-
տուած բաց ի նմանէ. և ես հաւատամ
ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ՝ յԵրրոր-
դութիւնն անբաժանելի և ի մի աստուա-
ծութիւնն:

Եւ ի վաղիւն նստեալ թագաւորն համ-
դերձ որդւովն իւրով յատեան, և կոչեաց
առաջի իւր զամենայն մեծամեծս և զզաւրս
իւր և խաւսեցաւ ընդ նոսա զամենայն
բանսն զոր լուաւ յորդւոյ իւրոյ. և դըպ-
րապետն արքունի ունէր զթուխտն ի ձե-
ռին իւրում և գրեաց զամենայն բանք թա-
գաւորին. ընթերցաւ ի լուր ժողովրդեանն.

Եւ էր գրեալ այսպէս. մեծ է Աստուածն
քրիստոնէից և ոչ գոյ այլ Աստուած բաց
ի նմանէ. հաւատամք ի Հայր և յՈրդի և
ի Սուրբ Հոգին՝ յԵրրորդութիւնն անբաժա-
նելի և ի մի աստուածութիւնն. և որ այժմ
ոչ հաւատայ, հակառակ է թագաւորու-
թեան մերոյ: Հաւատամք ի մի Աստուած
Հայրն ամենակալ և որ ի կարգին է:

Եւ այսու հաւանեցուցեալ զամենայն

ժողովուրդն ի քրիստոնէական հաւատն: Եւ յետ ութ ա աւուր կոչեաց Ցոլասափու զեպիսկոպոսն, և մկրտեաց զԹագաւորն յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ: Եւ Ցոլասափ ընկալաւ զնա[յ] ի սրբոյ աւազանէն, վերստին ծնաւղ եղեալ ծնաւղին իւրո(յ): Եւ փոխանակ մարմնաւոր ծննդեանն, հոգևոր ծնաւղ երևեցաւ նմա[յ]: Մկրտեցան ամենայն քաղաքն և իշխանքն և ամենայն գաւառն որ էր ընդ իշխանութեամբ իւրով. և բազում սքանչելիս առնէր Աստուած ի մկրտութիւն նոցա[յ]: Ապա սկսան շինել եկեղեցիս և ամենայն Թագուցեալ եպիսկոպոսունքն և քահանայքն առնուին իւրաքանչիւր զվիճակս իւրեանց: Եւ Թագաւորն յետ հաւատալոյն նմա յԱստուած կենդանի, Թողեալ զամենայն Թագաւորական մեծութիւնն յորդին իւր, և ինքն զատեալ յամենայն զբաղմանց աշխարհի, բ սկսաւ մեկու-

---

ա. Համ. երկու:

բ. Համ. յամենայն զբաղմանց աշխարհիս. և ապաշխարեաց զամենայն յանցանս իւր ամիս մի: Եւ յորժամ եհաս օր վախճանին, սկսաւ երկնչել ի մահուանէ յիշելով զմեղս իւր զոր գործեալ էր: Իսկ Ցոլասափի մերձ գոլով. մխիթարէր զնա և յոյժ առնէր նմա զմարդասիրութիւն Աստուծոյ ասելով. եթէ ոչ կայ մեղք ի վերայ երկրի որ արգելու զշնորհս Աստուծոյ ի ձեռն խոստովանութեան և ապաշխարութեան: Եւ դու մի երկնչիր. հայր իմ արքայ, քանզի յոյժ սիրէ Աստուած զամենայն մեղաւորս որ ապաշխարութեամբ և խոստովանութեամբ քաւին: Եւ այսպիսի մխիթարական բանիւք յորդորէր Ցո-

սի ծառայել Աստուծոյ և ապաշխարել զամենայն մեղս իւր. պահաւք և աղաւթիւք և ողորմութեամբ: Եւ զամենայն ինչս իւր բաշխեաց աղքատաց և ինքն բարեպաշտութեամբ և առաքինի վարուք և անբիծ հաւատով կեցեալ ամս Դ. զղջմամբ և ապաշխարութեամբ և բարի խոստովանութեամբ կատարեցաւ ի Քրիստոս: Եւ Ցոլասափ չափաւոր արտասուաւք պատուեաց զհայր իւր. որպէս աւրէնն էր թագաւորաց սրբոց, և եդ ի գերեզմանի սաղմոսիւք և աւրհնութեամբ:

Եւ յետ այնորիկ դարձաւ ի պաղատն թագաւորական և զամենայն ինչս հաւրն բաշխեաց աղքատաց: Ցետ այնորիկ Ցոլասափու տուեալ զթագաւորութիւնն ի Բա-

---

վասափ զսիրտ հօրն իւրոյ: Եւ նա համբարձեալ ի վեր գոհութիւն և փառս մատուցանէր Աստուծոյն. և աղաչեաւ օրհնել զորդին իւր զՑոլասափ և զօրն. յորում ծնաւ նա զաւակ նմա և ասէ. որդեակ իմ սիրելի, ոչ ինձ մեղաւորիս որդի. այլ հօրն երկնաւորի. որո՞վ օրհնութեամբ օրհնեցից զքեզ. և զի՞նչ հատուցից երախտեաց քոց փոխարէն. որ լուսաւորեցեր զհոգիս իմ: Քանզի մեռեալ էի հոգով և ի ձեռն քո կենդանացայ. կորուսեալ էի և գտայ, խաւարեալ էի և քև լուսաւորեցայ. գլորեալ էի և կանգնեցայ. կործանեալ էի և յարեայ. հատուսցէ քեզ Տէր Աստուած զհատուցումն բարեաց և օրհնեսցէ անանցական բարութիւնս. տացէ քեզ Տէր ըստ սրտի քում և զամենայն խնդրուածս քո ի բարին կատարեսցէ: Զայս ամենայն աղաչեալ Աբեններ արքայ և զնշան սուրբ խաչին արար յերեսն իւր և ասաց. Տէր Աստուած ի ձեռն քո յանձն առնեմ զհոգի իմ. և այնպէս աւանդեաց զհոգի իւր։

րաքիաս,ա և զնա[յ] կացոյց փոխանակ իւր. և ինքն եղեալ մեծաւ ուրախութեամբ ի ճանապարհ, զգեցեալ ի ներքս հանդերձին մազեղէն խորգ և զԹիկանոցն փոքր զոր տուեալ նորա[յ] Բարղամ. և երթեալ ի տուն աղքատի միոյ և հանեալ զհանդերձն Թագաւորական, ետ նմա և ինքն մնաց մազեղենաւն միայն: Եւ ի վաղիւն ելեալ գնաց յանապատն Սենաարացւոց բոկ և գլխիբաց՝ ոչինչ ունելով ընդ իւր բայց միայն զԹիկանոցն և զմազեղէնն. և հանապազ աղաւԹելով զցայգ և զցերեկ հանդերձ արտասուաւք. ոչ մտանելով նմա ամենևին ընդ յարկաւ, այլ ընդ անապատս գնայր և կերակրէր ի դալար խոտո(յ):

Եւ շրջեալ նմա յանապատն ամս երկուս, խնդիր լինէր վարդապետին իւրոյ Բարղամու: Եւ սատանայի տեսեալ զվարս ճգնութեան նորա, սկսաւ մարտնչել ընդ նմա[յ] բազմաջան մեքենայիւքն իւրովք. յիշեցուցանելով նմա[յ] զԹագաւորուԹիւնսըն. և ընկենոյր կարաւտուԹիւն ի միտս նորա[յ]. և բազում ժամանակս մաշեաց զնա[յ] այնմ իրաւք. բայց ոչինչ շահեցաւ ի նմանէ անուամբն Աստուծոյ, այլ ամաւԹալից եղեալ ի բաց եկաց ի նմանէ: Իսկ յետ երկուց ամաց ի միում աւուր, մինչդեռ շրջէր Յովասափ

ա. Յուն. Βαραχίας.

յանապատին, առաջնորդութեամբն Աս-
տուծոյ երթեալ գտանէր ծեր մի ի բնակչաց
անապատին. և երկրպագեալ նմա[յ] հարցա-
նէր վասն Բարղամու. և եցոյց ծերն նմա
զայրն յորում բնակեալն էր Բարղամ:

Եւ Յովասափ երբև լուաւ, սկսաւ ըն-
թանալ ուրախութեամբ որպէս մանուկն առ
մայր իւր. երբև գնաց յայրն եգիտ փակեալ
զդուրսն և ի ներքս զԲարղամ զի կատարէր
զաղաւթս: Եւ Յովասափու բախեալ զդուր-
սըն ասէ. աւրհնեա, հայր սուրբ, իսկ Բար-
ղամու լուեալ զձայն ճանաչեաց. և առժա-
մայն բացեալ զդուրսն գալ առ Յովասափ.
և տեսեալ զնա[յ] այլա[յ]գունեալ յառա-
ջին գեղեցկութենէն. քանզի մորթ մարմ-
նոյն սեւացեալ[ա] էր յարեւու և ի ցրտոյ, և
աչք նորա խորեալ ի պահոցն, և արտեւանքն
պակասեալ յահագին արտասուացն: Եւ
երբև տեսին զմիմեանս, դարձան յարեւելս և
կացին յաղաւթս. և յետ աղաւթիցն գիրկս
արկեալ համբուրեցին զմիմեանս: Եւ ասէ
Բարղամ ցՅովասափ. բարի՛ եկիր, որդեակ
իմ սիրեցեալ, բարի եկիր ժառանկորդ Հաւրն
երկնաւորի և տաճար Հոգւոյն Սրբոյ, բարի
եկիր ճշմարիտ աշակերտ Քրիստոսի: Արդ
պատմեա ինձ, որդեակ, թէ զինչ եղև ընդ
քեզ յետ ելանելոյն իմոյ, և որպէս եկիր աստ

---

ա. Ձեռ. սեվացեալ:

և կամ ո՞րպէս ծանեաւ հայրն քո զԱստուած: Եւ Յովասափ պատմեաց նմա[յ] զամենայն եղեալսն մի ըստ միոջէ. և Բարղամու լուեալ աւրհնեաց զամենաւրհնեալն Քրիստոս, և յոյժ ուրախացեալ ընդ գալուստ նորա[յ] և եղեալ առաջի նորա սեղան. և ի վերա(յ) բանջար հաւմ և ծայրս արմաւենի ստոց և սակաւ եղջիւր և ջուր. և կերան և արբին և ուրախացան հոգևոր ուրախութեամբ:

Եւ այնպիսի ճգնութեամբ և աստուածահաճո(յ) վարուք կեցեալ Յովասափ առ Բարղամ ժամանակս բազումս ամենայն հընազանդութեամբ ի հաճոյս ծերոյն: Իբրև եհաս ժամանակ փոխելոյ ծերոյն առ Քրիստոս, կոչեաց զՅովասափ և ասէ ցնա. որդեակ, ես այսուհետև գնամ զճանապարհ հարց իմոց և յառաջ քան զամենայն այգու գոհանամ զԱստուծոյ իմո(յ), զի արժանի եղէ տեսանել զքեզ ի կենդանութեան իմում: Արդ՝ շնորհիւն Աստուծոյ զարդարեալ ես դու ամենայն աստուածահաճոյ վարուք, և ոչ գոյ պակասութիւն ինչ ի քեզ յաստուածային պատուիրանացն: Եւ արդ՝ որդեակ իմ, թաղեա զնուաստացեալ մարմինս իմ. և տուր զհողս հողոյն, և դու մի որոշիր ի տեղւոջէս յայսմանէ մինչև ի սահմանեալ կէտ կոչման քո. և յաղաւթս քո հանապազ յիշեա զիս, որդեակ, զի ի ձեռն աղաւթից քոց ընկալայց ի Տեառնէ զթողու-

թիւն մեղաց իմոց: Եւ դու, որդեակ, ի
ծննելդ քո մի մնափառեր՝ քան զամենայն
ոք զքեզ մեղաւոր համարեաց. քանզի գրեալ
է. որ խոնարհեցուցանէ զանձն բարձրասցի.
ի խոնարհ ունկջիր զաչսդ և ի վեր զխոր-
հուրդդ. անդադար աղաւթեա և ի յաղաւ-
թելն քո հանապազ առաջի Աստուծոյ հա-
մարեա զքեզ: Կերակրով և ըմպելով մի յա-
գենար. և արդ որդեակ, դու ամենայն բա-
րի խրատու կատարեալ ես, և ոչինչ պի-
տոյ է աշխատ առնել քեզ:

Իբրև լուաւ զայսոսիկ Յովասափ ի
ծերոյն, իբրև զվտակս իջանէր արտասուքն
յաչացն. և անկեալ առ ոտս ծերոյն աղաչէր
զի մի մնասցէ ի նմանէ այլ զի ի միասին
երթիցեն ի հանդիստ: Եւ Բարղամու պա-
տասխանի տուեալ ասէ. անհնար է լինել
այդմ իրաց, որդեակ, և ես բազում ան-
գամ աղաչեցի զՏէր վասն քո զի ի միա-
սին երթիցուք ի պատրաստեալն մեզ հան-
գիստ, բայց կամք Տեառն լինիցին:

Եւ դու, որդեակ, աշխատեա սակա-
ւիկ մի և համարեա զի ցնծութեամբ մացես
յուրախութիւն Տեառն քո. և այժմ աւելի
եմ ես քան զամաց հարիւրոց: Եւ արա-
րեալ է իմ յանապատիս յայսմիկ ամս եաւ-
թանասուն Ե. բայց ի քէն ոչ պահանջէ ա

---

ա, Չեռ. պահանջէ:

Աստուած այնչափ ժամանակս ապաշխարութեան, այլ գիտեմ զի փութով տանի զքեզ ի յաւիտենական հանգիստն բարութեան և այլ ոչ ևս բաժանիմք ի միմեանց. քանզի ի միասին ցնծասցուք ի յաւիտենական ուրախութիւնսն:

Եւ դայս ծերոյն խրատեալ զՑովասափ և առժամայն յարուցեալ եկաց յաղաւթս առ Տէր և ասէ: Տէր Աստուած լոյս ճշմարիտ որ լուսաւորեալ ես զամենեսեան երկ(ն)ային լուսով քո. գոհանամ զմարդասիրութենէդ քումէ, զի արժանի արարեր զանարժան ծառայս քո ամբիծ հաւատով կատարել զընթացս իմ: Եւ այժմ աղաչեմ զքեզ մարդասէր Տէր, ընդալ զհոգի մեղուցեալ քո ծառայիս և հանգո[յ] ի հաճոյս քեզ, և անտես արա[յ] զբազմութիւն մեղաց իմոց: Եւ պահեա խաղաղութեամբ զծառայս քո որ ի ձեռն իմ արժանի եղև գալ զհետ կոչման քո. հեռացո[յ] ի սմանէ զամենայն սատանայական որոգայթս. և տուր սմա[յ] իշխանութիւն որպէս որդոց քոց առաքելոցն, կոխել ի վերայ իժի և քարբի և յաղթել ամենայն հակառակութեանց թշնամւոյն, զի ըստ կամաց քոց կատարեսցէ զընթացս իւր և ընկալցի ի քէն զանապական պսակն. զի դու ես պսակիչ ամենայն որդոց քոց. և քո են փառք յաւիտեանս ամէն:

Եւ կատարեալ զխորհուրդ պատարա-

գի, հաղորդեցաւ ինքն և Յովասափ ի պատուական մարմնոյ և յարենէ Որդւոյն Աստուծոյ. և գիրկս արկեալ համբուրեցին զմիմեանս ի համբոյրս սրբութեան: Եւ ասէ ցնա[յ]. խաղաղութիւն ընդ քեզ որդեակ իմ, և կնքեալ զինքն նշանաւ սուրբ խաչին, և անկեալ յերկիր տարածեաց զձեռս և զոտս իւր խաչանշան եղեալ ի վերա[յ] սրտին. և աւանդեաց զհոգին իւր Բարղամ ի փառս Աստուծոյ:

Եւ նա[յ] ի վաղճանելն իւրում (էր) ամաց հարիւր և ութից: Եւ Յովասափ պատեալ զմարմին սուրբ ծերոյն խմաղեղէն լոդն իւր և լուացեալ զնա[յ] արտասուաքն, թաղեաց մերձ ի յայրն, սաղմոսիւք և աւրհնութեամբ և երգովք հոգևորաւք: Եւ կացեալ յաղաւթս ի վերայ գերեզմանին բազում ժամս, և ննջեաց ի տրտմութենէն եղեալ զգլուխն մերձ ի գերեզման ծերուն:

Եւ տեսանէ ի տեսլեան արս ահաւորա[յ]տեսիլս զի առեալ տարան զնա յարկս վայելուչս և գեղեցիկս յոյժ, զոր ոչ էր բնաւ այնպէս տեսեալ: Եւ ցուցին նմա[յ] երկուս աթոռս լուսեղէնս. և ունելով արանցն երկուս պսակս ի ձեռս իւրեանց: Եւ Յովասափու հարցեալ վասն աթոռոցն և պսակացն. թէ ո՞ւմ իցեն այդոքիկ: Եւ նոցա[յ] պատասխանի տուեալ ասեն. մին աթոռդ և մին պսակդ զոր տեսանես, քեզ է պատ-

բաստեալ ի Քրիստոսէ, իսկ միւս աթոռդ և միւս պսակդ հաւրն քո Արենեբէս թագաւորին: Եւ Ցովասափ երբև լուաւ զայս, զարմացաւ ընդ միտս իւր և ասէ. թէ ես որ թողի մանկութենէ իմմէ զամենայն մեծութիւն աշխարհի և այսչափ ժամանակս ծառայեցի Աստուծոյ, զի՞րդ առնում պըսակս հաւասար հաւրն իմոյ, որ ի ձեռն իմ հաւատաց նա[յ] յԱստուած: Եւ մինչդեռ նա[յ] զայս խորհէր ընդ միտս իւր, տեսանէր զԲարղամ մերձ կացեալ առ իւր զի յանդիմանէր զնա[յ] ասելով: Այդպէս խրատեցի զքեզ, որդեակ իմ Ցովասափ, մինչ առ քեզն էի. ոչ յիշես զԱւետարանին զմետասաներորդ մշակն: Արդ զոր ինչ խոստացեալ է քեզ Քրիստոս, պատրաստեալ է. և մի՞թէ ոչ ունիցի իշխանութիւն զնոյն և հաւրն քո պարգևել. և քեզ պարտ էր գոհանալ զմարդասիրութենէն նորա, զի ի ձեռըն քո և և զծնաւղն քո արժանաւորեաց պսակի: Եւ զայս ասացեալ, աներևոյթ եղև ի նմանէ: Եւ զարթուցեալ Ցովասափ ի քնոյ անտի, գոհանալով զՏեառնէ զպսակաղէն որոց իւրոց:

Եւ յետ վախճանելոյն Բարղամու, եկաց յանապատին Ցովասափ ամս ԼԷ. ամենայն ուղղութեամբ ծառայելով Աստուծոյ հրեշտակակրաւն վարուք: Իսկ յորժամ հրաժարեաց ի թագաւորութենէն էր նա[յ] ամաց Ի ու հնկից: Եւ այսպիսի աստուածա-

կան և երկնային քաղաքավարութեամբ փո-
խեցաւ ի կարգս հրեշտակաց։

Եւ յետ փոխելոյ նորա յաշխարհէ, ոմանք ի
մերձակայ անապատին ազդեցութեամբ Հոգ-
ւոյն Սրբոյ գիտացեալ զվաղճան սրբոյն Յո-
վասափու, և եկեալ թաղեցին զպատուական
մարմին նորա[յ] մերձ առ Բարղամու. և
երթեալ ի Հնդիկս պատմեցին Բարաքիայ ար-
քային զի դեռ ևս կենդանի էր նա։ Եւ իբրև
լուաւ, առաքեաց զբազումս ի կրաւնաւո-
րաց և ի քահանայապետից և յիշխանաց. և
եկեալք յԱնևրետացոց անապատին յայրն
Բարղամու, և բացեալ զգերեզմանն գտին
զմարմինս նոցա[յ] անապական։ Եւ ուրա-
խութեամբ առեալ զնշխարս աստուածա[յ]-
հաճոյ արանցն, տարան ի թագաւորութիւնն
իւր։ Իբրև մերձեցան ի դաշտին, ընդառաջ
ել Բարաքիայ արքայ հանդերձ ամենայն զաւ-
րաւքն. և մեծաւ պայծառութեամբ ածին
զնոսա ի թագաւորութիւնն իւր և թաղեցին
մերձ առ Աբեններ արքայի։ Եւ մինչև ցայ-
սաւր բազում նշանս առնէ Աստուած ի
ձեռն նոցա[յ]. և ամենայն ախտից բժշկու-
թիւն կատարի բարեխաւսութեամբ սրբոցն
այնոցիկ։ [1]

---

1. Այսպիսով վերջանում է առանց իրան թարգման կոչող «Աստածի յիշատակարանի» որ կայ համառօտի վերջում։

Եւ զայս ամենայն ետես Նուաստս ի կրաւնաւորս Յովհաննէս, երթեալ ի Հնդիկս տեսի զգերեզմանս նոցա և երկրպագեցի նշխարաց նոցա. և աւրհնեցի զպարգևողն ինձ զաւրութիւն հասանել ի տեղի հանգստեան սրբոցն. որ և բարեխաւս իսկ են ամենայն հաւատացելոց ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր: Ընդ որում Հաւր և Հոգւոյն Սրբոյ վայել է փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն:



## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ ԵՒ ԲԱՐԱՂԱՄՈՒ։ [1]

Արդ՝ ի մարդ եղանելն Աստուծոյ բանին․ ընտրեաց զաշակերտսն երկոտասան․ զորս եւ առաքեալս անուանեաց․ եւ առաքեաց զնոսա աշխարհն ամենայն քարոզել զարքայութիւն Աստուծոյ։ Եւ եհաս վիճակաւ աշխարհն Հնդկաց Թովմայի առաքելոյն, որ գնաց քարոզել անդ զՔրիստոս․ եւ արար սքանչելիս բազումս զօրութեամբ ամենասուրբ Հոգւոյն․ շինեաց եկեղեցիս եւ կարգեաց քահանայս եւ պաշտօնեայս․ եւ ինքն բարւոք նահատակեալ կատարեցաւ ի Քրիստոս։

Եւ մնաց աշխարհն այն քարոզութեամբ առաքելոյն ժամանակս բազում։ Եւ դարձեալ զօրացաւ կռապաշտութիւն։

---

1՝ Համեմատութեան համար այստեղ դնում ենք համառօտ օրինակի սկզբից և վերջից մի մի հատուած, որպէս զի իւրաքանչիւր ընթերցող ինքը համոզուի թէ համառօտը ընդարձակից է, թէև մի քանի տեղ մասեր են աւելցրուած․ որոնք ծանօթութեանց մէջ ամբողջովին առաջ ենք բերել։

Համառօտողի ամենամեծ յաւելուածը այստեղ առանձին աստղանշաններով որոշած և արտատպած մասն է։

Նոյն նպատակաւ դնում ենք Բաղիշեցու տաղաչափական գրուածքի սկիզբը։

Եւ յարեաւ թագաւոր մի մեծ եւ յաղթող զօրութեամբ՝ Աբեներ անուն. եւ յարոյց հալածանս ի վերայ քրիստոնէից, որով բազումք նահատակեալ մարտիրոսացան բազմահնար տանջանօք. արք եւ կանայք, ծերք եւ տղայք ընկալան զանապական պսակն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ:

Եւ այն խրոխտ թագաւորին Աբեներայ ոչ գոյր զաւակ. եւ յամենայն ժամ հայցէր չաստուածոցն տալ նմա զաւակ եւ ոչ կարէին տալ:

Ապա յետ բազում ժամանակաց եղեւ նմա որդի մի, ընդ որ յոյժ ուրախացեալ թագաւորն, արար խնդութիւն եւ տօն մեծ ի մեհեանս կռոցն աւուրս բազումս. զի ի նոցանէ համարէր տալ զորդին իւր:

Եւ ժողովեաց արս Ծ աստղագէտս եւ իմաստունս եւ հարցանէր ի նոցանէ. թէ զինչ լինիցի մանուկն: Եւ նոքա ճշմարտութեամբ քննեալ զաւուրս բազում զժամանակս ծննդեան տղային, եւ զախտարս կենդանակերպիցն, եւ եկեալ առաջի արքային ասեն. որպէս ուսուցանեն մեզ ընթացք աստեղացն վասն որդւոյ քում, ասացուք, արքայ, բարեպաշտութիւն տղային ոչ է ի քումդ թագաւորութեանդ, այլ յայլ մեծագոյն թագաւորութեան է, որ ի վեր է քան զամենայն թագաւորութիւնս երկրի:

Իսկ մի ոմն յաստեղագիտացն ասաց. ինձ այսպէս թուի, արքայ, թէ զորդին քո զաւանդութիւն քրիստոնէիցն առնու, զոր եւ դու բազում հալածանօք անյայտ արարեր յաշխարհէս քումմէ. եւ բազմապատիկ բարձրանայ առաւել քան զքոյդ թագաւորութիւնդ:

Զայս իբրեւ լուաւ արքային յոյժ տրտմեցաւ. եւ ապա ի միտս իւր եկեալ, հնարս իմացաւ թէ որպէս պահեսցէ զորդին իւր ի քրիստոնէական հաւատոցն: Եւ հրամայեաց շինել պալատ գեղեցիկ եւ վայելուչ. եւ ի ներքս արարեալ զամենայն որ ինչ էր ի պէտս մարդկան, եւ զարդարեաց գեղեցիկ յօրինուածովք. եւ յետ հասանելոյ մանկանն ի ստենէ ետ զնա ի պալատն:[1] . . . . . . . .

** Իսկ Յովսափատ չափաւոր արտաքոյ պատուեաց զհայրն իւր, եւ եդ ի գերեզմանի սաղմոսիւք եւ օրհնութեամբ եւ երգովք հոգեւորօք: Եւ զաւուրս եւթն ոչ մեկնեցաւ Յովսափատ ի գերեզմանէ հօրն, այլ զցայգ եւ զցերեկ անդադար աղօթս մատուցանէր Աստուծոյ. եւ յետ եւթն աւուրն ապա դարձաւ ի պալատն. եւ զամենայն ինչսն զոր մնացեալ էր ի հօրէն իւրմէ բաշխեաց աղքատաց:

Իսկ յետ քառասունն աւուր կատարելոյ պատարագաւ զյիշատակ հօրն իւրոյ, Յովսափատ կոչեաց զամենայն մեծամեծսն իւրոյ տէրութեանն եւ ասաց նոցա. Աբեններ թագաւորն՝ հայրն իմ մեռաւ, որպէս եւ տեսաք զնա իբրեւ զմի յաղքատաց եւ ոչինչ տարաւ զհետ յամենայն մեծութենէ իւրմէ, բայց միայն զոր ապաշխարեաց եւ զպաղատանս իւր: Արդ՝ լուարուք ամենեքեան, զի ես այլ ոչ եմ ձեզ թագաւոր. այսուհետեւ զսիրեցեալս ի մէնջ զԲարաքիաս[ա] որ է երկիւղած յԱստուծոյ եւ կատարեալ յամենայն գործս

ա. Ձեռագրերի մեծ մասը ունին «Բարաքիաս:»
1. Տես ընդ. օրինակը էջ 1—6:

բարութեան, զսա կացուցանեմ թագաւոր ի վերայ ձեր՝ հովուել զձեզ ի կամս Աստուծոյ եւ ես երթամ զճանապարհ զոր եցոյց ինձ Աստուած:

Յայնժամ Բարագիաս սկսաւ լալ եւ ողբալ եւ ասէ· անիրաւիս առ իս, Տէր իմ արքայ· գրեալ է թէ սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո· եթէ թագաւորել բարի է, դու ընկեր փախիցիս, եւ ընկենուս ի վերայ իմ զբեռն ծանրութեան:

Եւ նա բռնադատեալ զնա· եդ զթագն ի գլուխ նորա եւ զգեցոյց նմա զթագաւորական քղամիդն· եւ դարձեալ յարեւելս արար աղօթս ի վերա(յ) նորա եւ օրհնեաց զնա: Սա այն ծառայն էր որ յառաջն ծանոյց Յովասափա(յ) զԲարաղամ· եւ յոր-ժամ խօսէր Նաքովր ընդ փիլիսոփայիցն, սա միայն գտաւ անդ քրիստոնեայ մերձ Յովասափու:

Եւ յետ աղօթիցն գիրկս արկեալ համբուրեաց զնա եւ զամենայն մեծամեծ իշխանսն եւ ծառայսն իւր՝ թողեալ զխաղաղութիւն Քրիստոսի առ նոսա: Յայնժամ եղեւ լալումն մեծ եւ ողբումն եւ հառաչումն կոծ եւ աղաղակ: Եւ ամենայն ժողովուրդն գիրկս արկեալ զոտիցն Յովասափու եւ ողբալով համբուրէին զնա եւ ասէին· աւաղ աւաղ կորուսեալ մերոյ· եւ թէ ուստի ողբս առցուք եւ որով ող-բասցուք զանձինս մեր: Լալով լացէք զմեզ ամենայն թռչունք երկնից, սողունք երկրի եւ գազանք անտառի· ողբա առ ի վերայ մեր արեգակն· զի այլ ոչ եւս տեսանեմք զլոյս արեւու: Սուգ առցեն ի վերայ մեր ամենայն բոյսք դաշտի· վասն որբ մնալոյ մեզ ի պայծառ հօրէ մերմէ եւ լուսատու մտաց՝ որ նա-

ճանապարհ կենաց էր մեզ· արքայն Յովասափ, եւ դուռն մտից առ Աստուած:

Զայս եւ առաւել քան զայս ողբս լային եւ կոծէին զանձինս առաջի նորա· եւ Յովասափ քաղցր բանիւ մխիթարէր զնոսա յաստուածային գրոց եւ օրհնէր:

Եւ ապա ելեալ ի պաղատէն գնայր զճանապարհս իւր: Եւ Բարաքիա երթայր ի հեռուստ զհետ նորա լալով· եւ ցանէր հող զգլխովն իւրով: Նոյնպէս եւ բազմութիւն արանց եւ կանանց երթային զհետ նորա յերկայն ճանապարհ· մինչեւ դարձոյց Յովասափ եւ երդմնեցոյց զնոսա դառնալ ի նմանէ: Եւ նոքա դարձեալ հայէին ստէպ ստէպ դառն արտասուօք եւ մեծահառաչ ողբովք: Եւ այլ եւ ի հեռաստանէ հայէին զհետ նորա մինչեւ ի գալ գիշերին:[1] **

Իսկ Յովասափ անցեալ երթայր մեծաւ ուրախութեամբ զճանապարհն իւր, որպէս դառնայ ոք ախորժեալ ի հեռաւոր տեղէ ի տուն իւր: Եւ էր զգեցեալ ի ներքոյ հանդերձին զմազեղէն խորգն եւ զբարեգօտն զոր ետ նմա վարդապետն իւր Բարաղամ: Եւ իբրեւ երեկոյ եղեւ, երթեալ ի տուն աղքատի միոյ եւ հանեալ զհանդերձն թագաւորական եւ կոշիկն ետ աղքատին· եւ ինքն ի վաղիւն ել մազեղինաւն, բոկ ոտիւք եւ գնաց յանապատն Երիտացւոց երկիրն: Եւ շրջեալ ամս երկու ի խնդիր Բարաղամու՝ վարդապետին իւրոյ· եւ ապա գտեալ ծեր մի, եհարց ի նա·

1. Տես էջ 114 միայն քանի տողով. մինչդեռ այստեղ շատ երկար է:

եւ նա եցոյց նմա զայրն Բարաղամու: Եւ նա խըն-դալով դիմեաց ի նա որպէս մանուկ տղայ առ մայրն իւր: Եւ գնացեալ եգիտ զայրն փակեալ եւ զԲարա-ղամ ի ներքս· զի կատարէր զաղօթսն հասարակ ա-ւուրն: Եւ բախեալ զդուռն Յովասափ եւ ասաց· օրհ-նեա հայր սուրբ: Իսկ իբրեւ լուաւ զձայնն, ծանեաւ եւ փութանակի ել արտաքս· եւ տեսեալ զՅովասափ այ-լագունեալ երեսօք եւ նուաղեալ մարմնոյն յա-րեւու եւ ի ցրտոյ· եւ աչք նորա խորացեալ ի պահոցն·: եւ թարթափք աչացն պակասեալ ի յարտասուացն:

Եւ զիրկս արկեալ միմեանց լացին ուրախու-թեամբ· եւ դարձեալ արեւելս, աղօթեցին եւ նստան Եւ ասաց Բարաղամ· բարի եկիր, որդեակ իմ սի-րեցեալ, պատմեա ինձ թէ զինչ եղեւ քեզ յետ ելա-նելոյն իմոյ, եւ թէ որպէս եկիր աստ. Եւ Յովա-սափ պատմեաց նմա զամենայն կարգաւ· եւ ծերոյն լուեալ եւ արտասուեալ ասաց· փառաւորեալ ես Որդի Աստուծոյ երկնաւորդ Աստուած:

Եւ եհաս երեկոյի ժամն եւ ի կատարման աղօթիցն ասաց Բարաղամ ցՅովասափ· եթէ թագա-ւոր ես դու, եւ բարեաց սովոր· արդ եւ ես ուրախ եղէց այսօր ընդ գալուստ քո, եկ եւ ի միասին կերի-ցուք զոր պատրաստեաց մեզ Աստուած: Եւ զայս ա-սացեալ, եդ առաջի նորա սեղան լի ամենայն բարու-թեամբ աստուածային շնորհիւն· որ էր բանջար հում ի պարտիզէն ծերոյն, արմաւ եւ եղջիւր, աղ եւ հաց եւ ջուր: Կերան եւ արբին եւ ուրախացան ի Տէր· եւ յարուցեալ կատարեցին զխաղաղականի աղօթսն եւ նստան:

Եւ Բարաղամ սկսաւ մխիթարական բանիւք

քաջալերել զթագաւոր ծառայն Աստուծոյ. եւ ապա հանգեաւ սակաւիկ մի քնով. եւ յարուցեալ ի մէջ գիշերի աղօթեցին: Եւ ի վաղիւն կատարեաց Բարաղամ զսուրբ պատարագն. եւ հաղորդեաց զՅովասափ մարմնոյ եւ արեան Որդւոյն Աստուծոյ: Եւ զիրկս արկեալ՝ համբուրեաց զնա ի համբոյր սրբութեան. եւ արարեալ զնշան սուրբ խաչին յերեսն իւր եւ անկեալ յերկիրն տարածեաց զոտս իւր. եւ զձեռսն կարկեաց խաչանման ի վերայ սրտին. եւ աւանդեաց զհոգին իւր առ Աստուած սուրբ հայրն Բարաղամ: Եւ էր հարիւր ութն ամաց. կացեալ յանապատն եւթանասուն հինգ ամ:» ա

. . . . . .

Իբրեւ մերձ եղեւ աւուր միոյ ճանապարհ՝ ընդ առաջ ել արքայն Բարաքիաս անձամբ մեծամեծօքն եւ բազմութեամբ ռամկին. եւ ըստ արժանեացն բերին զնա ի թագաւորութիւն հայրենին, եւ եդին առ Աբեներ թագաւորին:

Եւ մինչեւ այսօր բազում հրաշս առնէ Աստուած աղօթիւք նոցա աշխարհին Հնդկաց: բ

Զոր եւ ես Ա ս ա տ մեղաւոր ծառայ Աստուծոյ բազում աշխատութեամբ եւ ջանիւ փոքր ի շատէ ծայրաքաղ արարեալ թ ա ր գ մ ա ն ե ց ի. ձեռամբ իշխանի միոյ պատուաւորի (Բ ա գ ր ա տ ո ւ ն ւ ո յ):

---

ա. Շարունակութեան մէջ պատմուած է Յովասափի տեսիլը և մանր նման ընդարձակին: Տես եջ 115—120.

բ. Տես եջ 122:

## ՎԱՍՆ ՅԵՏԱԳԱՅ ՏԱՂԱՉԱՓ ԲԱՆԻՑ ՆԱԽԵՐԳԱՆ։

Ես Առաքել Բաղիշեցի,
Մեղօք լցեալ նուաստ հոգի
Տաղաչափել ըստ իմ կարի,
Զճառ Հնդկաց թագաւորի:
Աբեններայ կռապաշտի
Եւ իւր որդւոյն Յովասափի.
Դիւրաբարբառ վերծանողի
Եւ հեշտընկալ գոյ լսողի:
Զի իմացեալ զմիտս բանի,
Փառս տացեն Տեառն արարչի.
Որով յանցեր խաւանց երկրի
Արժանաւոր յանեկ ոգի:

---

## Ա. ՏԱՂ Ի ՎԵՐԱՅ ՅՈՎԱՍԱՓՈՒ ԹԱԳԱՒՈՐԻ՝ ՈՐԴՒՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՆԴԿԱՑ ԱԲԵՆԵՐԱՅ:

Յորժամ Հայրն երկնաւոր յերկիր հաճեցաւ
Եւ բանն Աստուած իջեալ յերկնից մարմնա-
ցաւ,
Ի խաչափայտն ելեալ սիրով բարձրացաւ,
Եդաւ ի գերեզման և փառօք յարեաւ:
Ելեալ մարմնով յերկինս յաջմէ Հօրն նստաւ,
Եւ Աստուած Սուրբ Հոգին ի յերկիր իջաւ,
Ի վերնատանն ի կերպ հրոյ յայտնեցաւ,

Ի դասս առաքելոց սիրով բնակեցաւ:
Աշխարհս առաքելոցն վիճակեցաւ,
Երկիրն Հնդկաստան Թովմայի անկաւ.
Գնացեալ անդ քարոզեաց Տեառն հրամանաւ
Եւ անդէն սքանչելեօք նահատակեցաւ,
Հաւատ քրիստոնէից անդ հաստատեցաւ,
Կռապաշտութիւն դիւացըն խափանեցաւ.
Մեհեանք չաստուածոց խորտակեալ բարձրացաւ
Անունն Քրիստոսի փառաւորեցաւ:
Յետոյ անդ Թագաւոր մի երևեցաւ,
Որ Աբենէր անուն նմա կոչեցաւ.
Սատանայի կամաց նա հետևեցաւ,
Կռապաշտութիւն դիւաց կամաւն իւր անկաւ:
Հալածէր զքրիստոնեայս յաշխարհէն Հընդկաց
Եւ անթիւ բազմութիւնս անդ նահատակեաց.
Զանունն Քրիստոսի ի յերկրէն ջնջեաց,
Զամենևեան դիւաց պաշտօնեայս կարգեաց:
Չունէր մեծ Թագաւորն Աբենէր որդի,
Որ ժառանգէր զաթոռն իւր հայրենի.
Շատ աղաչեաց զկուռս վասն զաւակի
Եւ դևքն ոչ կարացին տալ նմա զորդի:

### Բ. ՎԱՍՆ ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ՍՆՆԴԵԱՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ:

Աստուածն ամենայնի, որ բարէգութն է,
Դարձի մեղաւորաց նա կամեցող է.

Արենէր արքային պսակ պարգևէ,
Այն որ ի փուշ անկոյն վարդ բուսուցանէ:
Իսկ նա ի չաստուածոցն ընա գիտենայ.
Զենէ զուհս բաղում և ուրախանայ,
Եւ կռոցն առաջի անկեալ դոհանայ.
Յովասափ կոչեցին զանուն նորա:
Ժողովեալ զաստղաբաշխսն որք էին գի-
տուն,
Եկեալ ի միասին համարով յիսուն,
Հարցեալ Թագաւորին վասն իւրեանն որդ-
ւոյն,
Ասեն թէ լինիցի քան զքեզ մեծագոյն:
Մի ոմն ի նոցանէ, այն որ ճարտարն է,
Արենէր արքային զայս դարձեալ ասէ.
«Հզօր մեծ Թագաւորդ մեր գիտասցէ,
Որդին քո քրիստոնեայ իսկ լինելոց է:»
Յորժամ լուաւ արքայն զբանս աստղագի-
տին,
Տրտմեցաւ դառնագին վասն զաւակին.
Խնդրէր հնարս առնել վասն Յովասափին,
Զի մի լուիցէ նա զձայն քրիստոնեայ ազգին:
Յորժամ որ կտրեցաւ մանուկն ի ստենէ,
Թագաւորն տեղի նմա պատրաստէ.
Տղահասակ մանկունս առ նա ժողովէ
Եւ զՅովասափ մանուկն իւր ուրախ առնէ:
Եւ պատուէր ետ նոցա ի դուրս ոչ հանել
Եւ ալևոր և ծեր անդ ոչ մուծանել,
Ցաւոց ձայն և մահու անդէն ոչ յիշել
Եւ ոչ զքրիստոնէից օրէնս անուանել:
Եւ թէ ի յայն մանկանցն մեռանէին,

Որք որդւոյ արքայի ընկերակիցք էին,
Մի այլ փոխան նորա կացուցանէին,
Զմեռեալն յօտար երկիր գնացեալ ասէին:
Մանուկն Յովասափ յորժամ զարգացաւ,
Իմաստութեան բանից նա հետևեցաւ.
Բերին առ նա վարդապետ ի նմանէ ուսաւ
Եւ յաստղաբաշխութեան արուեստ վարժե-
ցաւ:
Յուտել և ի խմել յուրախութեան կայր,
Զայնիւ երգեցողաց խնդութեամբ ցընծայր
Եւ հայր նորա յամէն աւուր առ նա գայր,
Որդւոյն Յովասափու սիրով բարով տայր:

Գ. ՎԱՍՆ ԵԼԱՆԵԼՈՅՆ ԱՐՏԱՔՍ ՅՈՎԱՍԱՓՈՒ

Յաւուր միում մտօք խորհուրդ արարեալ,
Մանուկն Յովասափ ի տրտմութեան լեալ,
Կոչեալ զմի յընկերաց իւրոց և հարցեալ.
«Վասն է՞ր ի տաճարիս եմ՝ աստ արգելեալ:»
Յայնժամ պատասխանեալ նմա ծառա-
յին,
Յովասափու ասաց զբանս արքային.
«Զքրիստոնեայս հալածեաց, ասէ, հայրն
քոյին,
Կամեցաւ խափանել զանուն Քրիստոսին:»
«Եւ զքեզ վասն այսորիկ աստ արգելեալ է,
Զի մի զօրէնս նոցա ականջ քո լսէ.»
Զբանս աստղագիտին նմա ծանուցանէ,
Որ վասն Յովասափու նախ ասացեալ է:

Շնորհն աստուածային ի սիրտն ծագեալ,
Որդւոյ Թագաւորին յորժամ զայս լուեալ.
Յայնժամ եկեալ առ նա հայրն ի յողջոյն տալ՝
Ելանելոյ ի դուրս յարքունէն խնդրեալ:
Ասաց. «զարդարեցէք զփողոցն քաղաքին,
Հիւանդ և ցաւագարք մի երևեսցին,
Եւ դասք երգեցողաց պատրաստ եղիցին
Քանզի ուրախասցի որդի արքային:»
Հանապազ Յովասափ ի դուրս ելանէր,
Հաւասար ընկերօքն իւր ուրախ լինէր.
Յանկարծ ուրուկ և կոյր մի տեսանէր,
Տրտմութեամբ զարհուրեալ և սիրտն ճմլէր:
Եհարց, «Թ՛ ի՞նչ պատճառաւ նա ցաւագնեալ է:»
Ասեն թէ պատահմամբ ի տարերացս է:
Եհարց, «Թէ ամենի՞ց այն լինելոց է».
Ասեն. «այլ ոչ ոմանց, որոց պատահէ:»
Յաւուր միում ելեալ ծեր մի տեսանէ,
Որ ի գաւազանին վերայ դողդոջէ:
Եհարց վասն այն ծերոյն. «Թ՛ այս ի՞նչ պատճառ է».
Ասեն. «Թէ օր մահուն եկեալ հասեալ է»:
Եհարց. «Թէ ամենո՞ց մահն հանդիպի,
Եթէ նորա միայն զոր աչօք տեսի»:
Ասեն. «ամենայն մարդ որ ծնանի,
Մահուամբ ի յաշխարհէս ելանել պարտի»:
Լուեալ Յովասափու զայս սիրտն դողաց,
Եւ դառնացեալ հոգւով նա յոյժ հառաչեաց.
Զկեանք մարդուս յերկրի ոչինչ համարեաց,
Երազ է գիշերոյ զոր Դաւիթ ասաց:

Օրըստօրէ տրտում կայր և վշտագնիւր
Եւ համապազ ծածուկ մըտօք տագնապիւր.
Զփառս և զպատիւ ոչինչ համարէր,
Խնդրէր մարդ իմաստուն որ զինքն խրատէր:

## Դ. ՎԱՍՆ ԳԱԼՈՅ ԲԱՐԱՂԱՄՈՒ ՃԳՆԱՒՈՐԻՆ ԱՌ ՅՈՎԱՍԱՓ ԵՒ ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՆՈՐԱ:

Արարչագործն Աստուած համայնից,
Որ համապազ խնդրող է մոլար հօտից.
Նա որ յերկնից իջեալ վասն իւր ծառայից,
Ի փայտ խաչին ելեալ փրկեաց յանիծից.
Եհան յանապատէն զհովիւն բարի,
Որոյ և իսկ անուն Բարաղամ կոչի.
Իջեալ ի քաղաքին վասն Յովասափի,
Որ էր անդ պատրաստեալ փառացն Յիսուսի:
Եկեալ ի քաղաքն ճգնաւորն ընտրեալ,
Որ էր Աստուածաշունչ գրքովն վարժեալ,
Ի քաղց և ի ծարաւ զմարմինն ճնշեալ,
Ի յայրս և ի փապարս լերանց բնակեալ:
Զքաղաքական զգեստ առեալ ագանի,
Ի կերպարանս եկեալ վաճառականի.
Գնացեալ եհաս ի դուռն որդւոյն արքայի,
Որ էր լցեալ շնորհօք որդւոյն միածնի:
Ծառայն Յովասափու զնա տեսանէ,
Հանդարտաբար մերձ առ նա խօսակցէ.
Ասաց. «յի՞նչ պէտս եկեալ» զնա հարցանէ.
Ասաց. «վաճառական եմ յօտար երկրէ»:
«Եւ մարգարիտ ունիմ առ իս մեծագին,
Որ չկայ ի գանձանակ քո Թագաւորին.

Ոչ ես տեսեալ նման իմոյ մարգարտին,
Ոչ դու, ոչ քո արքայն, ոչ նախնիք նորին»:
«Քանզի մարգարիտն այն հանց շնորհ ունի,
Որ կոյրն տեսանէ և աչքն բանի,
Խլից լսել շնորհէ և համրն խօսի.
Հոգւով հիւանդացեալն նովաւ բժշկի:»
Մտեալ ծառայն առաջ որդւոյ արքային,
Զբան Բարաղամու սուրբ ճգնաւորին,
Որ էր վաճառական անգին մարգարտին.
Զոր և Քրիստոս ասաց յԱւետարանին:
Հրաման առեալ ծառայն ի Յովասափէ,
Զվաճառող մարգարտին ի ներս մուծանէ.
Որդւոյ թագաւորին նա գլուխն դնէ.
Մանուկն Յովասափ զնա մեծարէ:
Յայնժամ ասէ նմա մանուկն խոհեմ.
«Թէ ցոյց ինձ զմարգարիտն զայն որ տեսանեմ:»
Ասաց. «վասն այն եկի որ քեզ ցուցանեմ,
Զմեծագինն մարգարիտն իմ քեզ վաճառեմ:
Բայց նախ դու ունկն դիր մտօք իմ բանիս:
Որ ես զպատճառն ասեմ այս մեծ մարգար-
տիս.
Եթէ խօսից իմոց դու հաւանեսցիս,
Ապա տեսոյ նորա արժանաւորիս:
Քանզի արքայն և Տէրն որ իմ Աստուածն է,
Յաւետարանն իւր սուրբ զայս ասացեալ է,
Առակաւոր բանիւ նա խօսացեալ է,
Ամէն մարդոյ խրատ զայս ասացեալ է:
Սերմանացանն ելեալ սերմանել յերկրի.
Ի սերմանելն անկաւ ի ճանապարհի,
Թռչունք երկնից կերին ւ՚ոտից կոխելի.

Է օրինակ մեղաց և սատանայի։
Իսկ միւսն անկաւ ի փուշ և հեղձուցին զնա.
Օրինակ մեծութեան, որ հոգս ունենայ։
Եւ այլն յապառաժն, որ ոչ թուսաւ նա,
Եւ տայն փորձութեան չերացոյց զնա։
Այլ որ անկեալ բուսաւ ի յերկիր բարի,
Բերեալ պտուղ հարիւր վաթսուն և՝ երեսնի.
Նմանն է արդարոց գործոց ի յերկրի,
Այնց որք կամարար Աստուծոյ լինին։
Եթէ տեղի ունիս դու սերմանելոյ,
Այլ և լսող լինիս Բանին Աստուծոյ,
Ցայնժամ ես կամք ունիմ սիրով պատմելոյ,
Զխորհուրդ պաշտօնէից Տեառն Աստուծոյ։
Ապա թէ զմարգարիտն իմ դու իմանաս
Եւ հոգւով և մարմնով նմա ցանկանաս,
Զամէն իշխանութեան նորա գին տաս
Եւ անանց մեծութիւն յայնժամ ստանաս։
Իսկ եթէ ոչ ունիս դու տեղի սերման,
Այլ ես փուշ և՝ ապառաժ ճանապարհ կոխան,
Ցայնժամ ի յԱստուծոյ չունիմ ես հրաման,
Ցուցանել զմարգարիտն իմ քեզ պատուական։
Քանզի յԱւետարանն ինձ պատուիրեալ է,
Թէ զբան պատուիրանին որ մարգարիտն է,
Խոզից մեղսասիրաց, որք շունք գործովք են,
Մի տայք կոխան առնել՝ զի շատ մեղանք են»։
Մանուկն Յովասափ՝ որդի արքային
Յորժամ լուաւ զբանսն սուրբ ճգնաւորին,
Ծագեաց լոյսն շնորհացն ի սիրտ նորին.
Բորբոքեցաւ սիրով անխօս մարգարտին։
Ուրախութեամբ սկսաւ խօսել ընդ նմա.

Ասէ արքայորդին մեծին Բարղամայ.
«Թէ զինչ քան զոր ունէի՝ զամէնն ինձ տաս,
Քանզի քաջի խրատու հոգիս իմ ցանկայ:
Զսերմն հոգևոր դու յիս սերմանէ,
Թռչունն երկնից զնա տանել ոչ կարէ,
Ոչ տապն փորձութեան չորացուցանէ,
Եւ ոչ փուշն մեղաց զնա հեղձուցանէ:
Այլ հաւատով զբանն քո յիս ընդունիմ
Եւ յուսով կատարման բարեաց ակն ունիմ.
Սիրով բուսուցանեմ՝ արդիւնաւորեմ,
Միայն թ՚ անանց կենաց ժառանգ լինիցիմ:»

Ե. ԱՌԱԿ ԶՈՐ ԱՍԱՑ ԲԱՐԱՂԱՄ ՅՈՎԱՍԱՓՈՒ:

Բարղամ ասաց. «առակ մ՚ ասեմ դու լսէ,
Որ թէ ի միտ պահես քեզ բազում շահ է.
Անցաւոր աշխարհիս այս օրինակ է,
Եւ զկեանս յաւիտենից քեզ ծանուցանէ:»
Թագաւոր մի փառօք ի կառս էր նստէր,
Յանկարծ երկու աղքատ մարդ նա տեսանէր,
Մարմինքն սևագոյն արևակէզ էր,
Ոչ ունէին զհանդերձս՝ որ զնոսա ծածկէր:
Իջեալ դէմ արքային ասեն յայտնապէս.
«Մեք եմք քարոզ կենացն ճշմարտապէս:»
Սոսկացեալ թագաւորն այն ահեղապէս,
Երկիր եպագ նոցա անդ խոնարհապէս:
Զօրքն թագաւորին զնա բամբասեցին,
Եղբօր նորա ասեն զբանս արքային.
Եւ նա գնացեալ պատմեաց զայն թագաւո-
րին,

«Վասն է՞ր խոնարհեցար առանցն այն չնչին:»
Սահման կայր քաղաքին այն Թագաւորին,
Զմահապարտ մարդիկն զորս ըմբռնէին,
Փողով ազդեցութեան ծանուցանէին,
Որք զդառնագոյն տանջանսն տեսանէին:
Թագաւորն զեղբայրն իւր ետ ըմբռնել,
Զանգակ մահապարտից հնչեցուցանել,
Ի մէջ հրապարակին ձեռս ի յետս կապել,
Զխորհուրդ դատաստանին աստ ծանուցա-
նել:
Յայնժամ արքայն եղբօրն իւր եկեալ ասէ.
«Թէ դու զարհուրեցար ի յայդ մահուանէ,
Զիա՞րդ ես ոչ վախեմ յառանցն յայնցանէ,
Որք ապառնան ինձ տանջանս՝ որ ոչ անցանէ:»
Յովասափու ասաց Բարղամ զայս առակ,
Թէ բան Թագաւորին է քեզ օրինակ,
Որ կամիցիս լսել զբարեացն յիշատակ,
Ատել զկռապաշտութիւն Տեառն հակառակ:

Զ. ԱՌԱԿ ԵՐԿՐՈՐԴ:

«Դարձեալ առակ մի այլ ասեմ այսմ նըման.
Է օրինակ մեղաց և արդարութեան,
Ունէին զեր և լսէ կամօք հաճութեան
Եւ տեսողիտառ աշխարհիս դադարի և ունայն:
Երկու սնդուկ շինեաց արքայ մի բարի,
Զմինն ելից ոսկով ու ակամբք ցանկալի
Եւ զմիւսն կարշահոտ աղբով աղտեղի.
Զերկուսն ամուր փակեաց անտեսանելի:
Եւ զայս որ զմէջն ոսկով ու ակամբք լը-
ցեալ էր,

Զդուրան սևագոյն կպրով ծեփեալ էր.
Եւ այն որ ի ներսան աղբով ի լի էր,
Մեծագին հանդերձիւ դուրան ծածկեալ էր:
Ասաց. «գին առաքէք երկու ամանին:»
Նոքա զգործն ծածուկ գիտել չկարացին.
Զայն որ աղբով լցեալ՝ մեծ գին առաքին,
Եւ զայն որ մէջն ոսկւով՝ անարգ խոտեցին:
Մեկնեմ զբան առակիս, դու սիրով լուր.
Այն մարդն որ յաշխարհիս թաղուն բարի է,
Թէպէտ ի մէջ մարդկան նա անարգեալ է,
Առաջի Աստուծոյ յոյժ մեծարեալ է:
Իսկ որ յերևելիս պայծառ և ճոխ է,
Եւ ի բարեաց գործոց դադարկացեալ է,
Թէպէտ զփառս աշխարհիս աստէն վայելէ,
Ի յահեղ ատենին զամօթ կրրեսցէ:»
Ցոփասափ զայս լուեալ յոյժ ուրախացաւ.
Որ ևս հանց խրատու յանկարծ յայտնեցաւ.
Ի կռապաշտութեանց նա ազատեցաւ
Եւ որդւոյն Աստուծոյ ծառայ կարգեցաւ:
Ապա դարձեալ ասէ մեծին Բարղամու.
Եթէ յայտնեա՛ զխորհուրդ բանիցն առաջնոյ,
Զանուն թագաւորին քո ուսուցողին,
Զառակ սերմանողին՝ զմեկնութիւն նորին:
Ցայնժամ սուրբն Բարղամ բակեղն արա-
րեալ,
Զստեղծանիլ էիցս նմա ծանուցեալ.
Զբանաւորկուլին անկումն որ ապստամբեալ,
Զմարդոյն լինելութիւն՝ զպտղոյն զոր կե-
րեալ:
Զփրկելն յանճառ լուսոյն՝ զանէծս դառնա-
գոյն,

Այլ և զցաւօք ծնունդ զքերոն վաստակոյն,
Զսուգ նախաստեղծին վասն յանցանելոյն.
Զխոստումն Աստուածորդւոյն և մարդա-
նալոյն:
Զծնունդ հօրն Ադամայ և զմօրն Եւայի,
Զաճումն զաւակաց ի վերայ երկրի.
Որ ոք բարի գործովք եկաց յաշխարհի
Եւ որք հեռացան կամաց բանսարկուին:
Զմարգարէիցն զդասն որք գուշակեցին
Զմարդեղութիւն Բանին Աստուծոյ ցուցին.
Զանօրինաբար շրջիլն ի մէջ մարդկային
Եւ զքանչելեաց նշան Որդւոյ միածնին:
Զչարչարանս խաչի, զԹաղումն նորին,
Զյարութիւն Քրիստոսի յաւուր երրորդին,
Զհամբառնալ Փրկչին յաթոռ հայրենին,
Զգալուստ Հոգւոյն Սրբոյ ի Պենտէկոստին:
Զքարոզս առաքելոցն յաշխարհս ամենայն,
Որք լսեցին նոցա և յԱստուած դարձան.
Զհաւատ քրիստոնէից որք հաստատեցան,
Զմոլորութիւնս կռոց որք խափանեցան:
Զգալուստն ի դատաստան որդւոյն միածնի
Զհատուցումն գործոց մարդկայնոյ ազգի,
Զարդագործացն զհուր անշիջանելի,
Բարեգործաց՝ զփառս որ յանճառելի:
Եւ յորժամ զայս լուաւ որդի արքային,
Անկեալ երկիր եպագ սուրբ ճգնաւորին.
Իմացաւ զզօրութիւն անգին մարգարտին,
Զոր խոստացաւ յայտնել զայն Յովասափին.
Պատասխանի տուեալ մեծին Բարղամայ
Ասէ. «զմարգարիտն քո իմացայ,

Արդ այժմ զհայրենի կուռսն մոռացայ
Եւ Յիսուսի Փրկչին լինիցիմ ծառայ:
 Արդ զինչ բան զոր գիտես զամենն ինձ
 ասա.
Քանզի բարի խրատու հոգիս իմ ցանկայ:
Այս մոլորեալ հոգւոյս ճարակ դու արա,
Եւ լուսով գիտութեան ինձ առաջնորդեա:»
 Ասաց. «Թէ մկրտիր յանուն Քրիստոսի.
Եւ Հօրն երկնաւորի՝ Հոգւոյն ճշմարտի,
Անեղ, անհաս, անճառ Աստուծոյ մեծի,
Ստեղծողին համայնից երկնի և երկրի:
 Ասաց. «Մկրտութեան խորհուրդն ի՞նչ է:»
Ասաց սուրբն Բարղամ. Թէ մեծ պարգեւք է.
Ի սկզբնական մեղաց զմարդն ազատէ.
Եւ Հօրն երկնաւորի որդի անուանէ:
 Մկրտութիւն սուրբ, անբիծ հաւատով,
Ի բազմազոյն մեղաց զմարդն փրկելով,
Լուսափայլ պատմուճան ագուցանելով,
Ժառանգակից կենաց Բանին առնելով:
 Մկրտութիւն սուրբ կենաց պատճառ է,
Բժշկութիւն հոգւոյ և դեղ ցաւոց է,
Ի խոցմանէ չարին զմարդիկ բժշկէ,
Ի մահուանէ մեղաց կենագործող է:
 Մկրտութիւն սուրբ դեղումն է շնորհաց.
Եւ ճանապարհ գնացման յուսով առ Աս-
 տուած,
Դուռն է արքայութեան և հանգիստ փառաց,
Ժառանգ յաւիտենից անպատում բարեաց:
 Մկրտութիւն շնորհ գերազոյն է,
Որ ամեն բարութեան պատճառ և սկիզբն է,

Զախտի ծնունդս որդի Աստուծոյ առնէ,
Զապականեալ բնութիւնս կենագործէ:
Մկրտութիւն զգեստ է արքունական,
Ի Քրիստոսէ մեզ շնորհեալ՝ մեզ որդւոց մարդ-
կան,
Պարիսպ է ամրութեան և զէն յաղթութեան,
Քաղաք ապաստանից և գանձ պատուական:
Մկրտութեամբ ով ոք սրբեալ մաքրեսցի,
Բազմապատիկ շնորհաց արժանաւորի,
Աստէն ի յօրհնութեան իւղոյն օծանի,
Եւ անդ ի յԱստուծոյ լուսոյն վառեսցի:
Զմկրտութիւն ով ոք սրբութեամբ պահէ,
Նա յառագաստն յերկնից, առ Տէր մտանէ,
Իսկ որ աղտեղացեալ զայն գործով է,
Նա յահեղ ատենին զամօթ կրեսցէ:
Արդ թէ դու մկրտիս յանուն Յիսուսի,
Յորդեգրութիւն կոչիս Հօրն երկնաւորի,
Տաճար կազմիս անճառ Հոգւոյն ճշմարտի
«Եւ ժառանգես զկեանսն որ անպատմելի:»
Յայնժամ ուրախացաւ որդի արքային.
Պատասխանեալ ասէ սուրբ ճգնաւորին.
«Զի՞արդ կատարեցից զկամս արարչին,
Որ ազատի յանշէջ հրոյ գեհեննին:»
Ասաց. «Թէ ուրացիր զկուռսն դիւական,
Որք են ձեռաց գործք արարեալք մարդկան,
Մերկացիր զխաւարն որ անգիտութեան,
Ծանիր զլոյս հաւատոյ աստուածգիտու-
թեան:
Մաքրիր մկրտութեամբ յախտից մարմնա-
կան,

Զգեցիր զհոգւոյն շնորհաց անապառական,
Զերծիր ի տանջանաց յաւիտենական
Եւ լեր բաժին շնորհաց և արքայութեան։
Զի որք զկուռս պաշտեն մտօք մոլարք են
Եւ զարարիչն Աստուած իսկ մոռացեալք են․
Ցուցից քեզ օրինակ թէ ում նմանք են,
Առակաւոր բանիւք որ նշանակեն։

### է․ ԱՌԱԿ ԵՐՐՈՐԴ։

Մարդ մի ճնճղուկ մ՚ ետես և ըմբռնեաց զնա,
Այլ նա սկսաւ խօսիլ և ասէ նմա․
Թէ զիս արձակեսցես՝ քեզ բազում շահ կայ,
Երեք բան խրատ տամ՝ քեզ օգուտ լի՚ նա։
Լուաւ այրն ճնճղկին և արձակեաց զնա,
Եկաւ նստաւ ի ծառն և ասաց նմա․
Ականջս եդ նմա, բարբառեցաւ նա․
Երեք խրատն այս էր, զոր ասաց նմա։
Ասէ՝ թէ անաւատ բանից մի աւտալ,
Եւ յայն տեղն որ չհասնի՝ ձեռօք մի ձգտալ․
Զանցեալ բանն որ գնաց՝ զայն մի ափսոսալ․
Ի միտ առ զխրատս և մի մոռանար։
Յայնժամ փորձեալ զնա և դարձեալ ասէ․
Յիս կայ հանց մարգարիտ՝ որ մեծագին է,
Պայծառ և պատուական և գեղեցիկ է,
Որ քան զջայլամու հաւկիթ մի մեծ է։
Իսկ նա որ արձակեաց եղև փոշիման․
Գնաց գոյնն նորա վասն տրտմութեան,
Ձգեաց զձեռն ըմբռնել զճնճղուկն զայն,

Իսկ նա դարձեալ ասէ յիմար մարդոյն այն:
Զի՞արդ, ասէ, զխրատն իմ դու մոռացար
Եւ զսուտն զոր ասացի ուղղորդ իմացար.
Ի ձեռդ էի անկեալ պահել չկարացար,
Զանցեալն հոգայեր, որ այլ չկայ ճար:
Նոյնպէս են որք կռոց երկրպագու՞ք են,
Եւ զձեռագործս իւրեանց աստուածս ա-նուանեն,
Եւ զԱստուածն ամենայնի ի բաց թողեալ են,
Եւ զբարեաց պարգեւողն մոռացեալ են:
Այլ զմեզ մի է Աստուած՝ Հայրն ամենա-կալ,
Եւ մի է Միածինն՝ Հօրն հաւասար,
Հոգին ճշմարտութեան ի Հօրէ բղխեալ,
Փառակից միածնին և ոչ բաժանեալ:
Անձամբ է երրակի, բնութեամբ միակի,
Անուամբ երեք կոչի, կամքն է եզակի.
Բաժանեալ է յերիս և՝ անբաժանելի,
Երրեակն ի միակէն անեղանելի:
Մէն ծնող կոչի՝ անմարմին բանին,
Մէնն ծնունդ ասի՝ հաւասար ծնողին.
Մէնն ելումն ի Հօրէ՝ անճառ անքննին,
Էիցս համօրէն միայն գիտողին:
Անեղ է Հայրն Աստուած յաւիտենական,
Անեղակից Որդին ծնունդ հայրական.
Անեղաբար Հոգին՝ Հօր համանման,
Էակից միածնին ի գործ կատարման:
Արարիչ Հայր ասի երկնի և երկրի,
Արարչակից Որդին էիցս ամենի,
Կատարիչ Սուրբ Հոգին ստեղծական սեռի.

Իմանալեաց, զգալեաց, ծովու և ցամաքի:
Կամաւ Հօրն լուսոյ արարածքս եղեն,
Մարդեղութեամբ Բանին գերեալք փրկեցան.
Աստուծոյ Սուրբ Հոգւոյն նման նորոգման,
Անեղ և անզրաւ կենօք անվախճան:
Արդ՝ թէ դու հաւատաս ի նա ապրեսցես,
Մկրտութեան շնորհաց արժանաւորիս,
Ի փորձութեանց մեղաց կամաւ զերծանիս,
Անտրտմելի կենօք միշտ մխիթարիս:
Քանզի փառք աշխարհիս այս անպիտան է
Եւ թագաւորութիւն քոյ քեզ մնալոյ չէ.
Այսօր դու վայելես, վաղիւն այլոյ է,
Անշէջ հուր գեհենին ձեզ պատրաստեալ է:
Եթէ լսող լինիս այլ առակ ասեմ,
Զայնչ կեանքս աշխարհիս քեզ օրինակեմ,
Եթէ ունկն դնես զոր ծանուցանեմ,
Կամիմ զի ի մեղաց զքեզ ազատեմ:

Ը. ԱՌԱԿ ԶՈՐՈՒԴ:

Մարդ մի փախուցեալ էր ի միեղջերէ.
Գնացեալ ի խոր վիրապ մի նա հասանէ,
Ի մէջ գբին վիշապ մի մեծ տեսանէ
Եւ հուր ի բերանոյ նորա բորբոքէ:
Իսկ ի բերանն հորոյն զծառ մի տեսանէր.
Զձեռն ձգեալ ոտիւք ի նա հաստատէր,
Երկու մկունք՝ մին սեւ, մինն սպիտակ էր,
Հատանէին զձիւղն, որ ըմբռնեալ էր:
Չորս օձք ներքոյ ոտից նորա փորէին,
Կամէին ընկենուլ զմարդն այն ի գբին.

Իսկ ի ճղէն այնմիկ՝ յոր մկունքն էին,
Սակաւ ինչ քաղցրութեան մեղր ծորէին:
Իսկ նա մտօք մոլար և յիմարեալ էր.
Որ զահ միեղջերուին այն մոռացեալ էր,
Զգրոյն և զվիշապին, որ զհուր բորբոքէր,
Անկման հայէր մարդոյն որ զնա կլանէր:
Զօձիցն որք ի ներքոյ ոտից նորին կային,
Զմկանցն որք կտրէին զճիւղն յոր յեցեալ կայր,
Զորոգայթս ամենայն մարդն այն մոռանայր
Եւ ի դէմս ճղին զբերանն բանայր.
Մի եղջերուն մահու օրինակեալ է,
Վիշապն ահագնակոչ՝ ձայն դժոխոցն է,
Վիրապն խորագոյն՝ գերեզմանին է,
Չորս իժք ոտից ներքոյ՝ այն տարերացս է:
Մկունք սեաւ և սպիտակ՝ տիւ և գիշերն է,
Զայս ամենայն մարդկան ազգ մոռացեալ է.
Ինչ քաղցրութիւն մեղերն՝ ոչինչ կենցաղս է,
Որ պատրանօք չարին կորուսանող է:
Լուաւ զայն Յովասափ և հոգւոց եհան
Եւ ի կռապաշտութեանցն եղև փոշիման.
Ասաց ճգնաւորին. «սուրբ հայր պատուական
Ուսո ինձ զայլ խրատ ոգւոյս փրկութեան:
Քանզի լուսաւորիչ դու ինձ յայտնեցար,
Հանելով ի բանտէ զհոգիս իմ խաւար.
Արդ մարգարիտ ունիս դու և՛ անգին գոհար,
Եւ ես կամիմ ստանալ հոգւոյս իմ յօժար:»

## Թ. ԱՌԱԿ ՀԻՆԳԵՐՈՐԴ։

Առակ մի այլ ասաց նա Յովասափին։
Թէ երեք սիրելիք մարդոյ մի կային.
Զերկուքն մեծարէր խիստ յօժարագին
Եւ զմինն ոչ մեծարէր հաւասար նոցին։
Յաղքատութիւն անկաւ այրն այն մեծա-
տուն,
Կոչեաց զբարեկամս զերկոսին սիրուն,
Խնդրեաց ի նոցանէ ինչս ի յօգնութիւն,
Ասաց թէ պարտք ունիմ բազում և անհուն.
Ասաց թէ զիս կոչէ արքայն ի յատեան,
Եւ ես բիւր քանքարոյ եղէ պարտական.
Յիշեցէք զառաջին գութն սիրական,
Լերուք ինձ բարեկիցք յօրս այս նեղութեան։
Իսկ մինն ասէ. «յինէն քեզ ճարակ չկայ,
Բայց թէ երկու կտաւ տամ, առ և գնա.»
Երկրորդն ասէ, «թէ գամ ընդ քեզ առ արքայ,
Բայց խօսիլ ոչ կարեմ առաջի նորա։»
Այլ նա յուսահատեալ յերկուց սիրելւոյն,
Առ երրորդն գնաց սրտիւ դառնագոյն.
Բայց ոչ կարէր հայել յերեսս յամօթոյն,
Զի սէր չունէր ընդ նա կատարելագոյն։
Այլ նա կոչեալ սիրով առ ինքն և խօսի,
Ասէ. «մի երկնչիր իմ քաջ սիրելի.
Ես քո փոխան խօսիմ ի դուռն արքայի,
Ազատեմ ի պարտուց քոց ամենայնի։»
Յորժամ լուաւ զառակս որդի արքային,
Աղաչեաց զԲարղամ մեկնել զայն նորին,
Եւ նա սկսաւ ասել զայն Յովասափին.

Եւ ունկնդիր լինէր Ցովասափ բանին:
Ասաց, թէ սիրելի մարդոյն մին ինչքն են,
Եւ երկրորդ ազգականքն և բարեկամքն են.
Ցորժամ ի յօր մահու մարդ հասանէ,
Ոչ ազգն է օգնական, ոչ ինչքն փրկէ:
Իսկ թէ գործս բարիս յաշխարհի ունիցի,
Երրորդն այն սիրելին է զոր ասացի.
Լինի իւրն ապաւէն յատեանն Յիսուսի
Եւ ազատէ յանշէջ հրոյն գեհենի:
Լուեալ զայս Ցովասափ յոյժ ուրախացաւ
Եւ բոլոր սրտիւ յԱստուած յուսացաւ.
Ի խօսսն Բարղամու փառաւորեցաւ,
Զունայնութիւն կենցաղս ւ՛ երազ իմացաւ:

Ժ. ԱՌԱԿ ՎԵՑԵՐՈՐԴ:

Առակ մի այլ Բարղամ ճգնաւորն ասէ:
Այր մի ունէր որդի սիրուն ի սրտէ,
Կամեցաւ կին առնուլ ի մեծատանէ,
Այր նա գնացեալ յօտար երկիր հասանէ:
Ետես անդ կոյս աղջիկ մի ալևորի,
Ճարտար, սուրբ ու՛ անարատ և իմաստուք լի,
Եկեալ իւր հօրն ասէ՝ թէ այն ինձ պիտի.
Եւ նա գնացեալ էառ զնա իւր զաւակի:
Ցորժամ հարսանեաց աւուրքն լցան,
Կոչեաց ալևորն այն զփեսայն ի տան
Ասաց. «աչացս իմ լոյս, որդի պատուական,
Խոհեմ և իմաստուն և յոյս սիրական:
Արդ որ յաղքատութիւնս իմ հաւանեցար,
Եւ ի կուսան դստերին իմ դու հաճեցար,

Զփարթամութիւն հօր քոյ փութով մոռացար,
Կամիմ զքեզ խելայել իմ արտօսր յօժար»:
Եւ ետ նմա զմրուխտ ակն մի պատուական,
Որ էր քան լտեր չափով ծանրութեան.
Վաճառեաց և հասաւ նա փարթամութեան,
Եօթնապատիկ քան զհայրն ի հարստութեան:
Եւ Ցոլասափ ասաց՝ թէ զայդ ինձ մեկնէ,
Քանզի ուրախացայ ի քոյին բանէ,
Զի այն որ ոռաքեաց զքեզ յանապատէ,
Նոյն ինքն անճառ կենօք զքեզ փառաւորէ:
Ասաց. երիտասարդ մանուկն դու ես,
Աղքատ ծեր ալեւորն՝ ես որ պատմեմ քեզ,
Եւ դուստրն գեղեցիկ՝ զոր ասացի քեզ,
Այն վարքն է սրբութեան՝ յոր հրաւիրեմ քեզ:
Իսկ ակն մեծագին արքայութիւնն է,
Որ անպատում բարիք անդ ամբարեալ է.
Եւ այն որ ծանրութեամբ քան լեռ է,
Զյաւիտենից զկեանսն նշանակէ:
Թէ դու քարոզութեանս իմս լուիցես,
Եւ ճշմարիտ Աստուած հոգւով ճանաչես,
Ի չար գործոց մաքուր զքեզ պահեսցես,
Եւ զկեանսն որ մահուն քոյ միշտ յիշեսցես:
Յայնժամ ստանաս աստէն բազում մեծութիւն,
Քան զհայր քո առաւել թագաւորութիւն,
Ցեառյ ժառանգեսցես զանանց մեծութիւն
Եւ հասանես յերկնից թագաւորութիւն:
Լուաւ զայն Ցոլասափ և ուրախացաւ,
Հոգւով այլ և մարմնով բերկրեալ ցնծացաւ.

Ի Տեառնէ Աստուծոյ նա յոյժ գոհացաւ,
Զի այնպիսի բժիշկ նմա յայտնեցաւ:
Ասաց նա Բարզամու սուրբ ճգնաւորին.
«Եթէ ո՞րքան տարւոյ են աւուրք քոյին»:
«Քառասուն և հինգ ամաց եմ» ասէ նմին:
Զարմացաւ ընդ բանին որդի արքային:
Ասաց՝ թէ ծերացեալ ալեօք սպիտակ ես,
Որ ութսուն տարեկան՝ այլ աւելի ես.
Արդ քառասուն և հինգ տարւոյ ասես զքեզ,
Զի՞արդ այսու բանիւ զիս հաւան առնես:
Ասաց. «եօթանասուն ի ծննդենէ եմ,
Այլ զոր յաշխարհ կացի զայն ոչ համարեմ,
Բայց քառասուն և հինգ՝ որ յանապատ եմ.
Իսկ որ յառաջ քան զայն ոչինչ համարեմ:
Քանզի որ յաշխարհիս մեղօք ցնորի,
Մեռեալ է նա հոգւով և չէ կենդանի.
Նորա կեանքն ի մարդոյ համար չանկանի,
Այլ անբան անասուն և մեղաց գերի:
Քառասուն և հինգ ամ յանապատի եմ,
Ցընթերցմանէ գրոց ես դադարեալ չեմ.
Ի քաղց և ի ծարաւ զմարմինս ճնշեալ եմ,
Եւ թողութիւն մեղաց յԱստուծոյ հայցեմ»:
Եհարց. «յանապատին դու՞քինչ կերակրեք:»
Ասաց. «զայն որ ուտեն անբան վայրենիք.
Դալար խոտ բանջարոյ է մեզ ուտելի
Եւ ի ցօղոյ երկնից լինի ըմպելի:»
Ասաց. «ազանելի մարմնոյ ձեր զի՞նչ է.»
Ասաց՝ թէ մաշկեղէն և մազեղէն է,
Ցամառ ու՝ ձմեռն մեր հանդերձն է,
Միայն որ զմերկութիւն մարմնոյ ծածկեսցէ:

Քանզի որք կամիցին Տեառն ծառայել,
Պարտին զանդամս մարմնոյ՝ յերկրի սպանա-
նել.
Բազում ազգի ազգի վշտաց համբերել,
Ապա վերինն երկրի ժառանգորդ լինել:
Ասաց՝ թէ քո հանդերձն մաշեղէն է,
Արդ զայդ որ զգեցեալ ես այդ ուստի՞ է.
Ասաց՝ թէ զայս առեալ եմ յայլ քաղաքէ,
Զի զգալս իմ որ առ քեզ ոչ ոք իմասցէ:
Քանզի յանապատէն յորժամ ես ելայ,
Զայս մեծատան հանդերձս առի և ագայ.
Ապա ի դուռն եկեալ հրաման ընկալայ
Եւ այս կերպարանաւս յապարանդ մտայ:
Ապա ասէ առ նա որդի արքային:
«Թէ հան զիս ի բանտէս այս խաւարային,
Եւ տար ի յանապատ աղօթից քոյին,
Միթէ ազատիցիմ ի հրոյ գեհենին:»
Պատասխանեալ Բարղամ որդւոյ արքային.
«Զքեզ ոչ կարեմ տանել ի յանապատին.
Արդ դիր ականջ բանիս իմոյ առակին,
Կամիմ տալ օրինակ գալստեան քոյին:»

ԺԱ. ԱՌԱԿ ՍԻԹՆԵՐՈՐԴ.

Որսորդ մի ըմբռնեալ էր ձագ մի եղին,
Բերեալ սովորեցոյց ի մէջ մարդկային,
Յետոյ գնացեալ էհաս յերէոց միջին.
Զհետ նորա մտին զայլան ըմբռնեցին:
Նոյնպէս թէ զքեզ տանեմ քո հայրն իմանայ
Եւ թէ ընդ որ երթամ՝ զտեղին գիտենայ.

Զեղբարսն իմ զամենայն սրոյ իւր կեր տայ,
Եւ զքեզ անդ ոչ թողուն՝ բերեն առ արքայ:
Այլ զինչ խրատ տամ քեզ, պահեա ի սրտի,
Եւ մկրտիր յանուն Որդւոյն միածնի.
Ես յանձն առնեմ զքեզ Փրկչին Յիսուսի,
Նոյն ինքն առաջնորդէ քեզ զինչ և կամի:
Ես ակն ունիմ յԱստուած՝ Հայրն ամե-
նակալ,
Եւ ի յԱստուածորդին ի Հօրէ ծնեալ,
Որ զքեզ ուղևորէ փութով առ իս գալ,
Եւ յայնժամ ի միմեանց այլ ոչ հեռանալ:
Ցովասափ Բարղամու զայս բան հարցանէ.
«Թէ սուրբ հայր հոգևոր, զայս ինձ հրամայեա.
Թէ մարդ որ մկրտի, կրկին մեղանչէ
Նա զթողութիւն մեղաց ո՞րպէս գտանէ:»
Ասաց. թէ բարերար Տէրն ողորմած է,
Որ ի մեղաւորաց զդարձն խնդրէ.
Քանզի որ առ Աստուած սրտով խնդրէ
Նա զառաջին յանցանս նորա ոչ յիշէ:
Որչափ որ գլորի մարդն թող կանգնի,
Որքան որ մեղանչէ՝ նա խոստովանի,
Գթած և մարդասէրն Աստուած ընդունի
Արքայութեան առնէ զնա արժանի:
ՅԱւետարանն սուրբ նա մեզ խոստանայ.
Թէ ով որ գայ առ իս՝ անտես չառնեմ զնա,
Քանզի առանց մեղաց յերկրի մարդ ոչ կայ.
Այլ անդարձն դիւաց նման լինի նա:
Քանզի Եսայիաս մարգարէն ասէ.
Թէ զանօրէնութիւն քո լեզուաւ յայտնէ,
Յայնժամ արդարանաս շնորհօք ի Տեառնէ

Եւ յԱստուծոյ քեզ մեծ պարգեւ իջանէ:
Դաւիթ ասէ. պատմեմ ինձնէն զմեղս իմ,
Դու զամբարշտութիւնս մեղաց թողուս զիմ.
Մարգարէին ասէ. զդարձն կամիմ,
Այն որ յերկնից իջաւ բժիշկ և հաքիմ:
Զի մեղաւորն յորժամ դառնայ ի մեղաց,
Խոստովանի զբաղում չարիս յանցանաց,
Գթած Հայր երկնաւոր մաքրէ ի մեղաց,
Այն որ անառակի որդւոյն դէմ գնաց.
Քանզի ողորմութիւն Տեառն անսպառ է,
Որ ամենայն մարդոյ զդարձն խնդրէ.
Իսկ որ անզեղջ մնայ ու ոչ ապաշխարէ,
Անշէջ հուր գեհենոյն նմա պատրաստ է:
Յովասափ Բարղամու դարձեալ զայս ասէ.
«Յորժամ կամիս գնալ, դու զիս մկրտէ.
Եւ առ ոսկի ու արծաթ՝ որչափ քեզ պէտք է
Եւ տար ի յանապատն ուր կրօնաւորքն է:»
Յայնժամ Յովասափու ասաց Բարաղամ.
Թէ ոսկւոյ ու արծաթոյ քոյ ոչ ցանկանամ,
Եւ զի՝ ես քան զքեզ խիստ եմ փարթամ,
Անցաւոր փառաց քոց ոչ կարօտանամ:
Քանզի զայդ մեծութիւնդ որ դու վայելես,
Վաղիւն այլոց թողուս ի հող մտանես.
Դու ոսկւոյ ու արծաթոյ ծառայ եղեալ ես,
Որպէս զաղբ անպիտան զայն համարիմ ես:
Վասն այն ես քան զքեզ մեծատուն եմ,
Փառաց և մեծութեան ես ցանկացող չեմ.
Յանանց կեանքն անվախճան զանձ ժողո-
վեալ եմ,
Ընչից մարմնականաց զիս ազատեալ եմ:

Եւ թէպէտ յաշխարհի շրջեցիմք աղքատ,
Այլ աւն ունիմք անանց բարեացն յորդառատ.
Ցուսով և հաւատով սիրով անարատ,
Ծառայեմք Աստուծոյ ի մեղաց ազատ:
Այլ թէ յընչեցդ առեալ յանապատ տանիմ,
Խռովութիւն արկանեմ մէջ ընկերացն իմ.
Ցայնժամ մեղաց պատճառ ես նոցա լինիմ,
Եւ ազօթից նոցա խափանիչ լինիմ:
Քանզի երկու տէրանց մարդ ոչ ծառայէ,
Զի թէ զմինն սիրէ՝ միւսն ատելի է.
Զի որ մամոնայի ծառայ եղեալ է,
Նա յԱստուծոյ սիրոյն զինքն զրկեալ է:
Այլ դու թէ կամենաս զքեզ մկրտեմ,
Ի յառաջին մեղաց կուռցն ազատեմ.
Որդի Հօր Աստուծոյ շնորհօք զարդարեմ,
Ժառանգակից Բանին Աստուծոյ առնեմ:

ԺԲ. ՎԱՍՆ ՄԿՐՏՈՒԹԵԱՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ:

Ցայնժամ հրաժարեցոյց ի սատանայէ,
Զերբորդութիւն սուրբ դաւանել տայ,
Ի մահն Քրիստոսի զնա մկրտէ.
Շնորհք Հոգւոյն Սրբոյ ի նա իջանէ:
Հաղորդեցոյց զնա մարմնոյ կենսատուին,
Ուսոյց պահել նմա զբան պատուիրանին.
Ասաց զգուշանալ կամաց արարչին:
Եւ ինքն ելեալ գնաց ի տեղ առանձին:
Իսկ մի ի ծառայից որդւոյ արքային,
Որ Զարդ անուն նորա վերակոչէին,
Իմացաւ զգալուստ առ նա Բարղամին,

Եւ քրիստոնեայ լինելն Յովասափին:
Եկեալ առ Յովասափ Զարդն այն և ասէ.
«Թէ վասն քո գործոյդ ահ զիս պատեալ է.
Ընդէ՞ր այն ծերունին առ քեզ մտանէ,
Գիտեմ, որ քրիստոնեայ զքեզ արարեալ է:
Քո հայրն ի յայսմ յերկրէ զնոսա հալածեաց,
Զքրիստոնէից անունն յաշխարհէ ջնջեաց
Եւ զքեզ վասն այնորիկ ի տուն արգերեալեաց,
Զի մի լուիցես զբանն նոցին օրինաց:
Եթէ զխորհուրդս զայս հայր քո իմանայ,
Որ եմուտ և ել ունի առ քեզ քրիստոնեայ,
Փութով զամենեսեան զմեզ սպանել տայ,
Որք ոչ զգործս քո յայտնեցաք նմա:»
Պատասխանեալ նմա որդի արքային.
«Եթէ յորժամ գայցէ առ իս ծերունին,
Դու ծածկատես կացցես դէմ վարագուրին,
Ունկն դիր և լուր զխրատ նորին:»
Վաղիւն եկեալ առ նա սուրբ ճգնաւորին,
Յայնժամ խօսի ընդ նա որդի արքային,
Ասէ. «սուրբ հայր, կարօտ եմ բանից քոյին.
Դարձեալ զիս խրատեա կամօք արարչին:»
Յովասափու Բարղամ զայս դարձեալ ասէ.
Թէ զոր քեզ ուսուցի՝ դու ի միտ պահէ,
Յաղտեղութեանց մեղաց զհոգիդ որոշէ,
Ի մէջն Քրիստոսի զքեզ բեւեռէ:
Ադամ որ ոչ պահեաց զպատուէր Արարչին,
Մերկացաւ ի լուսոյն ճաշակմամբ պտղին,
Մինչ բանն Աստուած մարմնով ազատեաց զնախին,

ԶԱդամ ընդ Եւայի և զծնունդս նոցին:
Եւ այլ բազում բանիւ խրատեաց զնա.
Եւ Զարդն ունկն դնէր բանիցն նորա.
Իմացաւ զճշմարիտ հաւատալ նորա,
Բայց ոչ ետ հաւատալ նմա սատանայ:
Ապա եկեալ առէ որդւոյ արքային,
Զարդն այն որ ծառայէր նա Յովասափին.
«Զայս ոչ կարեմ ծածկել ի հօրէ քոյին
Զոր դու հաւանեցար խաբեբայ ծերին:»
Յովասափ ծառային պատասխանի տայ.
«Թէ ճշմարիտ եղեալ եմ ես քրիստոնեայ,
Եթէ հայրն իմ արքայ գլխս սպանանել տայ,
Իմ սիրտս ի Քրիստոսէ այլ ոչ հեռանայ:
Վասն այն բերի զքեզ որ դու լսէիր,
Մինթէ բարի խրատուն այն հաւատայիր.
Եւ դու ոչ ընկալար զլոյսն առատաձիր,
Ոգիդ մնաց խաւար, ունայն և նանիր:»

## ԺԴ. ՎԱՍՆ ԳՆԱԼՈՅՆ ԲԱՐՂԱՄՈՒ ՅԱՆԱՊԱՏ:

Նկեալ առ Յովասափ ճգնաւորն ընտրեալ.
Ասէ՝ թէ Քրիստոսի ես դու զինուորեալ.
Զհաւատս յաւազանէն որ քեզ աւանդեալ,
Որդեակ իմ, ըստ հոգւոյ պինդ հաստատուն կալ:
Ես յանձն առնեմ զքեզ որդւոյն միածնի,
Այնմ որ նախախնամիչ է ամենայնի.
Խաղաղութեամբ կացիր ի քոյդ պալատի,
Գնամ ես առ ընկերսն իմ յանապատի:
Յովասափ Բարղամու զայս դարձեալ ասէ.

«Ի քէն խնդիրք ունիմ դու ինձ կատարէ,
Զկրկնոցդ և զմազեղէնդ, հայր, ինձ պարգևէ,
Որ առ իս յիշատակ ի քէն մնասցէ.»
Եհան զմազեղէնն և զկրկնոցն յանձնէն.
Առեալ զայն Յովասափ ի ճգնաւորէն,
Եւ զգեցաւ ի մարմնի՝ դէմ բանսարկու զէն,
Որպէս զմաշկեակն սուրբ ի յԵղիայէն:
Եւ լալով զմիմեանս համբուրեցին:
Ելեալ Բարղամ գնաց յիւր անապատն,
Համապազ աղօթէր վասն Յովասափին,
Միթէ ապաւեսցի յախտից մարմնային:

ԺԴ. ՎԱՍՆ ՅԱՅՏՆԵԼՈՅ ԶԱՐԴ ԾԱՌԱՅԻՆ, ԶՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԼԻՆԵԼՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ:

Իսկ Յովասափ ի տան լռում աղօթէր.
Եւ Զարդ ծառայն յահէն հիւանդ անկանէր:
Եհարց զնա թագաւորն և տեսել չկարէր,
Յետոյ ի յերկիւղէն զճշմարիտն ասէր:
Ասաց. «Թէ էմացիր, տէր իմ և արքայ,
Որ Յովասափ մանուկն եղև քրիստոնեայ.
Քանզի յանապատէն ծեր մ՚ եկեալ առ նա,
Քարոզելով նմա մոլորեցոյց զնա:»
Յայնժամ լուաւ արքայն և յոյժ տրտմեցաւ.
Որպէս զկատաղի չար գազան դարձաւ:
Կոչեաց զմեծամեծս ցնոսա հարցաւ.
Թէ զի՞նչ առցէ մանկանն որ զկուռսն ուրա-
ցաւ:
Իսկ այն որ Առաչիս անուն կոչէին,
Որ էր աստեղաբաշխ երկնից կամարին,

Եւեւս յոյժ զաւանացեալ զերեսս արքային,
Առաց. «Թէ մի տրտմիր վասն Յովսափին:
Արդ՝ զմոլորեցուցիչ ծերն ես ըմբռնեմ
Եւ ի յատեան մահու զնա կացուցանեմ,
Չարաչար տանջանօք զնա վիրաւորեմ,
ԶՅովսափ ի նմանէ փութով բաժանեմ:»
Զճանապարհ քաղաքին զայն ըմբռնեցին,
Բազում զօրօք ելեալ զԲարղամ խնդրեցին,
Գնացեալ ի յանապատ զնա որոնէին,
Յոլով աշխատեցան, զնա ոչ գտին:
Իսկ ի կրօնաւորացն որք ի յանապատին,
Բազումք ի յահէ նոցին փախուստ առին,
Զոմանս և ութ ըմբռնեալ և ի հետ բերին,
Որպէս զանմեղ գառինս նահատակեցին:

ԺԵ. ՎԱՍՆ ՆԱՔՈՎՐԱՑ ԿԱԽԱՐԴԻՆ:

Իսկ կայր ի քաղաքին Նաքովր անուն մի,
Էր չար և խաբեբայ, կախարդութեամբ լի.
Եկեալ առդ Առաշխս և ընդ նա խորհի
Խափել զՅովսափ մանուկն բարի:
Ելեալ գնաց ծածուկ ի յանապատին
Նաքովր անուն կախարդ՝ կամարար չարին,
Կերպարանեալ կամաւ յանուն Բարղամին,
Բանիւ Առաշխին և Թագաւորին:
Գնացեալ յետոյ զօրօք զնա ըմբռնեն,
Բերեալ ի քաղաքին ի բանտ արգելեն.
Կամաւ հրապարակին յայտնի համբաւեն,
Թէ զծերունին Բարղամ առեալ բերեալ են:
Գնաց առ Յովսափ արքայն Աբենէր,

Ասաց. «Թէ այս զի՞նչ է զոր դու գործեցեր.
Ի յաստուծոց մերոց զմեզ բաժանեցեր,
Զքրիստոնէից աղանդ կամաւ յանձնդ առեր:
Նախատինս արարեր զմեզ ազգի մարդկան.
Եւ կուռքն հաւասար՝ մեզ յոյժ բարկանան,
Խռովին, վիրաւորին, փախչին և գնան.
Այլ ո՞ր աստուած լինի երկրիս պահապան:
Լաւ էր չէիր ծնեալ յերկրի մեզ զաւակ,
Զի ծնար և արարեր զմեզ խայտառակ,
Ատելի չաստուածոցն եղեր և ներհակ,
Եւ օրինաց մերոց յայտնի հակառակ:
Արդ ես զվարդապետն քո կապեալ եմ,
Ի բանտ և ի զնդան զնա արգելեալ եմ.
Վաղիւն ի յատենիս զնա կացուցանեմ,
Զխաբէութիւն նորա քեզ ծանուցանեմ:»
Յովասափ պատասխան առնէ արքային,
Ասէ. «մի բարկանաք, հայր իմ, զայրագին.
Քանզի կամաւ թողի զխաւար ներքին
Եւ զգեցայ զլոյս փառացն վերին:
Քանզի զկուռս որ պաշտէք՝ շինուածք են ձեռին.
Եւ արարածք մարդկան Աստուած ո՞նց լինին:
Այլ նա որ ստեղծեաց զերկիր և զերկին
Աստուած է համայնից՝ երրեակ է և մին:
Արդ ես ի Հայր Աստուած հաւատացեալ եմ,
Որդւոյ և Սուրբ Հոգւոյն երկրպագեալ եմ.
Ի Բանն Աստուած Յիսուս ես յուսացեալ եմ,
Որև քեզ քրիստոնեայ յետոյ առնիցեմ:»
Իսկ Աբենէր արքայն բարկութեամբ լցեալ,
Ելեալ յոյժ դառնութեամբ և ի տուն գնացեալ:

Այլ Յովասափ մանուկն ի տղայութեան լեալ.
Գիտաց թէ վարդապետն իւր էր ըմբռնեալ:

ԺԶ. ՎԱՍՆ ՅԱՅՏՆԵԼՈՅ ՀՐԵՇՏԱԿԻՆ ՅԵՐԱԶ ԳԻՇԵՐՈՅ ՅՈՎԱՍԱՓՈՒ՝ ԶՆԵՆԳՈՒԹԻՒՆ ՆԱՔՈՎՐԱՅ ԿԱԽԱՐԴԻՆ:

Գիշերն ի յերազի հրեշտակն յայտնէ,
Որդւոյ թագաւորին զայս ծանուցանէ.
Թէ այն որ բանտին՝ Բարղամ ոչ է,
Այլ կախարդն է Նաքովր՝ որ խաբեբայն է:
Վաղիւն զքեզ կամին կոչել յատենի.
Նաքովր ի Բարղամու կերպարան լինի.
Բերեն զիմաստասէրն ի յայն հանդիսի,
Եւ զքեզ կամին խաբել ձեռամբ Նաքովրի:
Զարթեաւ ի յերազոյն մանուկն բարի
Եւ զոհացաւ զՏէառնէ Որդւոյն Միածնի,
Որ յայտնեաց զգաղտնիս ձեռամբ հրեշտակի,
Զի որդի արքային ոչ մոլորեսցի:
Թագաւորն Աբեններ ժողով արարեալ,
Զաստղագէտս ամէն ի մի հաւաքեալ,
Նաքովր ի Բարղամու կերպն փոխեալ.
Բերին զնա յատենի և հարցափորձեալ:
Մանուկն Յովասափ անդէն ժամանէ,
Տեսեալ անդ զկախարդն խոկոյն ճանաչէ:
Բայց ոչ ասաց նոցա՝ վարդապետն իմ չէ,
Մինչև բանիւ նորա զնա որսասցէ:
Փիլիսոփայիցն ասաց Աբեններ արքայն.
«Եթէ կարէք յաղթել զալեոր ծերն այն,
Առնուք յինէն պարգևս և զգանձ պատուական,

Ապա թէ ոչ՝ էհաս ձեր օրն մահուան:»
Իսկ Յովասափ ասաց սուտ Բարաղամին.
«Թէ դու ինձ ուսուցեր զօրէնս Քրիստոսին,
Ցուցեր զիս ատելի իմ հօրն արքային,
Որոշեցեր ի կուռց խրատով քո բանին:
Արդ եթէ ճշմարիտ է զոր ասացեր,
Այսօր փիլիսոփայիցս դու յաղթեցեր,
Նա ի հօրէս իմմէ կասկած մի կրեր,
Յայտնի օրինաց քոց՝ դու քարոզող լեր:
Եւ եթէ խաբէութեամբ դու զիս պատրեցեր,
Եւ սուտ և անիրաւ օրէնս ուսուցեր,
Նա քո կենդանութեանդ վճար դու եղեր,
Ի քո մէջդ կտրեմ և տամ քեզ ի կեր:
Անդամ անդամ զմարմինդ քո կտորեմ
Եւ շանց և գազանաց զքեզ արկանեմ.
Ամէն մարդոյ խրատ քեզ ցուցանեմ,
Այսօր զսուտն և զիրաւն քո ես յայտնեմ:»
Յայնժամ որ նախ դիւաց նա բնակարան էր,
Շնորհացն աստուածայնոյ ընդունակ լինէր,
Որդւոյ թագաւորի յերկիւղէն սարսէր
Եւ սուտն Բարաղամ՝ զճշմարիտն ասէր:

## ԺԷ. ՎԱՍՆ ՔԱՐՈԶԵԼՈՅ ՍՈՒՏ ԲԱՐԱՂԱՄԻՆ, ՈՐ ԷՐ ՆԱՔՈՎՐ, ԶՔԱՆՍ ՃՇՄԱՐՏԻՆ ՅԻՍՈՒՍԻ, ԶՈՐ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ ՅԱՅՏՆԵԱՑ ԱՅՆ ԿԱԽԱՐԴԻՆ:

Ասաց ոմն նմա. «Թէ դու Բարղամ ես.
Որ սուտ և խաբեբայ օրէնս քարոզես:»
Ասաց. «Ճշմարտութեան վարդապետ եմ ես,
Որ որդւոյ արքայի օրէնս ցուցի ես:»

Յայնժամ Հոգւոյ շնորհօք լցեալ կախար-
դին,
Զոր Տեառն օրինաց հակառակ բերին,
Որպէս յայնժամ Բաղաամ դէմ Իսրայելին,
Անէծքն ի յօրհնութիւն փոխարկեալ լինին:
Խօսեալ ընդ արքային բանիւ և ասէ.
Այն որ ծածուկ Նաքովր՝ յայտնի Բաղղամ է,
Թէ կուռքն զոր պաշտէք այն ձեզ վնաս է.
Զի բնակարան դիւաց պատկեր կանգնեալ է,
Ոմանք որ զլուսաւորս աստուածս ասացին,
Նոքա մոլորեցան և ոչ գիտացին:
Զի փոփոխելին տեղեաւ և ոչ դադարին,
Հրամանօք անփոփոխ կամօք արարչին:
Իսկ որք զչորս տարերս աստուածս ան-
ուանեն,
Նոքա յիմարացեալ մոլար մտօք են,
Զի որք միմեանց ներհակ և հակառակք են,
Նոքա աստուածութեան անուն ոչ կրեն:
Զեգիպտացւոց աստուածսն և զԲաբելո-
նին,
ԶՀելլենացւոցն և զորս ի կարգի նոցին,
Որք մարդոյ կերպարան շինեալ պաշտեցին
Եւ որք իգանի աստուած ասացին:
Թողումք ասել և զայլսն որք չեն յիշելոյ,
Զգազանս և զանասունս յօդոյ և ի ջրոյ,
Զաքիս զմուկն և զկատու և զայլսն ի գետ-
նոյ,
Զծառ զտունկ և զքոյս՝ զսոխ ընդ սխտորոյ:
Արդ՝ այս է զոր երկրի աստուած ասացին
Եւ զճշմարիտն Աստուած մոռացեալ թողին:

Ջարդարածս արարչին փոխան պաշտեցին,
Գարշելեաց ու ամօթոյ երկրպագեցին:
Այլ որ ամենայնի Աստուածն է՝ մի է,
Անձամբ է երրակի՝ անուամբ երեք է,
Բնութեամբ ու իշխանութեամբ զօրութեամբ
մի է,
Կեանք և կենդանարար և Նորոգող է:
Հայր է ծնող Բանին, Հոգին բղխումն է,
Անեղ անժամանակ և անսահման է,
Անտես անքննելի և անզննելին է,
Անչափ և անքակտակ՝ անժամանակ է:
Անգիտելի է Հայր՝ Որդին զնա գիտէ.
Գիտեն Որդին զՀայր, Հոգին քննիչ է,
Ստեղծող, կեցուցանող, պարգևատու է,
Գթած և մարդասէր նախախնամող է:
Կամեցող է բարեաց, կամակատար է,
Լոյս է միշտ համափայլ և լուսատու է,
Աղբիւր յորդախաղաց՝ արբուցանող է.
Եւ գետ լայնատարած ծով խորագոյն է:
Էր միշտ յաւիտենից՝ է և եղիցի,
Էիցս է անպարփակ ու անիմալի,
Էացուցիչ գոյիցս երկնի և երկրի.
Իմանալեաց, զգալեաց, ծովու ցամաքի:
Նախատիպ անորակ և կերպ անձև է,
Էութիւն անսկիզբն և գոյ անեղր է,
Իսկութիւն է յաւէտ և կեանք անվախճան է,
Անուր, աներբ, անբաւ, անհաս էակ է:
Ծնունդ է ի ծոց Հօր անբաժանելի,
Բղխումն Սուրբ Հոգւոյն անապատելի,
Են հարթ և հաւասար անձինք երրակի,

Ոչ մեծ ընդ կրտսերի, կամ նախ և վերջի։
Այլ էր Որդի ընդ Հօր նախ քան զյաւի-
տեան,
Որև բոլոր էակքս նովաւ արարան·
Հոգին արարչական Որդւոյ Հօր նման,
Յաւիտենից յաւէտ մշտնջենական։
Իսկ մինն յերից անձանց յերկիր խոնար-
հեալ,
Ի հայրական ծոցոյ նա ոչ բաժանեալ·
Ծնեալ ի կոյս մօրէ՝ Աստուած մարդացեալ·
Որ նախ քան զյաւիտեանս անմայր է ծնեալ։
Մարմնով յերկրի շրջեալ յերեսուն տարի,
Եկեալ ի Յորդանան կամաւ մկրտի,
Ի Հօրէ վկայեալ Հոգին իջանի·
Ապա հրաշիւք յայտնեալ ի մէջ աշխարհի։
Ընտրեաց իւր աշակերտս երկոտասան թիւ,
Նոքօք որսաց զմարդիկ կենացն բանիւ,
Զոր նախանձեալ ընդ նա չարին խորհրդիւ·
Ի խաչ բևեռեցին թիւրեալքն սրտիւ։
Եդաւ ի գերեզման կամաւորական,
Յարեաւ ի մեռելոց Աստուածն անվախճան,
Ելեալ մարմնով յերկինս յաթոռ հայրական,
Առաքեաց զՍուրբ Հոգին դասուն մետասան։
Իսկ առաքեալքն սուրբ յերկիր սփռեցան,
Եւ մոլորեալքն ի կուռս առ Աստուած դար-
ձան։
Չարագործաց պահեալ է հուրն անվախճան,
Բարեգործաց հանգիստն յաւիտենական։
Արդ ճշմարիտ Աստուած Յիսուս Քրիստոս է,
Այն որ Տէր կենդանեաց և մեռելոց է·

Իսկ որ արարածոց երկիրպագանէ,
Նմա անլոյս խաւարն պատրաստեալ է։

ԺԸ. ՅԱՄՕԹ ԼԻՆԵԼՆ ՓԻԼԻՍՈՓԱՅԻՑ. ԵՒ ՆԱՔՈՎԼ ԵՂԵԱԼ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԵՒ ԳՆԱՑԵԱԼ ՅԱՆԱՊԱՏՆ ԼԻՆԻ ԿՐՕՆԱՒՈՐ։

Յորժամ Նաքովլ տայր զայս հաւատոյ բան,
Փիլիսոփայքն ամէնք զամօթի հարան,
Այլ ոչ կարացին տալ նմա պատասխան։
Առեալ զՆաքովլ տարաւ Յովհաննան ի տան։
Զգեստ կախարդութեան իւր Նաքովլ այրեալ,
Գնացեալ ի յանապատ և անդ մկրտեալ,
Յուսով և հաւատով ի Տէր հաստատեալ
Եւ մինչ ի յօր մահուն անդ կրօնաւորեալ։
Դարձեալ ի տրտմութեան Աբենէր լինէր
Եւ միշտ և հանապազ ի դառնութեան էր.
Քանզի որ ի կախարդն ապաւինեալ էր,
Ետես զնա քրիստոնեայ՝ որդւոյն իւր ընկեր։
Յայնժամ ի միասին զիշխանն կոչէ,
Եւ դառնացեալ սրտիւ խրատ հարցանէ.
Թէ զի՞նչ ճարակ որդւոյն իւրոյ գտանէ,
Որ ի կռապաշտութիւն զնա արկանէ։
Կախարդ մի այլ ցուցին՝ անունն Թեւդաս,
Որ ի սատանայէ առեալ էր շատ դաս.
Եւ էր դիւաց գնդին մեծ ծառայ և խաս
Եւ զմարմինն արարեալ էր նոցա դարպաս։
Որ միշտ և հանապազ ի յանապատ կայր
Եւ զիւացն դասուց եղեալ էր դադար.

Նա մերկ և գլխիբաց և մերկ ոտամբ կայր
Եւ անդադար ի չար՝ զմարդիկ որսայր:
Յուղարկէ և կոչէ Թագաւորն զնա.
Զբոլոր քաղաքն առեալ դէմ Նորա երթայ,
Փառօք մեծարանօք առեալ և դառնայ,
Թերևս Յովասափու ճարակ գտցէ Նա:
Ասաց Թէոդաս. «Թէ ես հնար գտանեմ,
Եւ զՅովասափ ի կուռսն դարձուցանեմ,
Յաղանդոյն Բարղամու զնա որոշեմ
Եւ զկամս Թագաւորիդ փութով կատարեմ:
Արդ՝ հան Նախ զմանկունսն ի տանէ Նորա,
Եւ փոխանակ մանկանցն տար աղջկունս առ Նա:
Եւ ես զցանկութեան զեն յղեմ ի Նա,
Որ յախտ պոռնկութեան շարժեսցէ զնա:
Յայնժամ Աստուածն Յիսուս յոր հաւատաց Նա,
Բարկութեամբ զայրանայ ի գործս Նորա.
Քանզի է մեղաւորն ատելի Նորա,
Եւ Յովասափ անդրէն ի կուռսն դառնայ:»
Հրաման ետ Թագաւորն զմանկունսն հանել.
Եւ կոյս աղջկունս առ Նա բերեալ կացուցին:
Իսկ Յովասափ լցեալ շնորհօքն Յիսուսին,
Ոչինչ կարաց յաղթել զնա Թշնամին:
Քանզի աղօթելով զԱստուած աղաչէր.
Զգեն պոռնկութեան ի բաց հալածէր,
Քան զգեղեցիկ Յովսէփ Նա ողջախոհ էր.
Որպէս ի մայր և քոյր յաղջկունսն հայէր:
Յայնժամ Թէոդաս կախարդն առ Յովասափ գայ

Եւ չարաչար բանիւ խրատէ զնա:
Իսկ նա ասէ. «չար ծեր, զբերանդ քո կարկեա,
Սաստէ ի քեզ Յիսուս Աստուածն իմ արքայ:»
Սկսաւ սուրբն Յովասափ զնա խրատել,
Զօրէնս աստուածային Թէոդասայ պատմել.
Ի յԱդամայ հետէ նմա քարոզել,
Զտնօրէնութիւն Բանին Աստուծոյ ճառել:
Հոգւոյն Սրբոյ շնորքն ի նա ծագեցաւ,
Զմոլորութիւն դիւաց փութով ուրացաւ,
Քարոզութեան նորա յոյժ հաւանեցաւ
Եւ գայլն նոյն ժամայն գառն երևեցաւ:
Գնացեալ առ Թագաւորն ասաց. «Թէ արքայ
Յորդին քո՝ ճշմարիտ շնորհաց հոգի կայ:
Արդ ես բանիւ նորա եղէ քրիստոնեայ,
Զկուռսն և զդիւաց գունդն մոռացայ:»
Զխարդախութեան գրեանս զամէնն այրեաց նա.
Գնաց մկրտեցաւ նման Նաքովրայ,
Եղև սուրբ ճգնաւոր, ընտիր քրիստոնեայ,
Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ ծառայ:

ԺԹ. ՎԱՍՆ ԲԱԺԱՆԵԼՈՅ ԱԲԵՆԵՐԱՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԶԵՐԿԻՐՆ ԻՒՐ ԸՆԴ ՅՈՎԱՍԱՓՈՒ ՈՐԴՒՈՅ ԻՒՐՈՅ. ԵՒ ՆՈՐԱ ԱՐԱՐԵԱԼ ԶԱՄԵՆԵՍԵԱՆ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ:

Իսկ Աբենէր չգիտէր զի՞նչ առնիցէր.
Զի զորդին իւր ի կամաց իւր հանել չկարէր:
Վարել յօտար աշխարհ սիրան չհանդուրժէր,
Սպանանել զնա անհնարին էր:

Այս մեծամեծօք խորհուրդ արարեալ,
Զերկիրն իւր զամենայն յերկուս բաժանեալ,
Զմի մասն իւր որդւոյն կամաւն իւր տուեալ.
Եւ Ցովասափ գնացեալ անդ թագաւորեալ:
Գտեալ եպիսկոպոս մի նա փախուցեալ,
Որ յահէ հօրն իւրոյ էր նա թագուցեալ,
Բերեալ զնա Ցովասափ առաջնորդ կարգեալ.
Քաղաքին և երկրին հովիւ կացուցեալ:
Եկեղեցիս բազումս անդէն շինեցին,
Զկուռսն և զմեհեանսն կործանեցին:
Ժամատեղաց սահմանս և կանոնս եդին,
Զօրէնս քրիստոնէից անդ հաստատեցին.
Օրըստօրէ բազում անդ մկրտելով,
Եւ դառնային ի Տէր պայծառ հաւատով.
Զառաջին պղծութիւնսն մերկանալով,
Եւ նոր բարս վարուց յանձին բերելով:
Ամենայնի պարգևս Ցովասափ շնորհէր,
Հանդերձս պատուականս ագուցանէր.
Զամենեսեան ի նոյն հաւատս յորդորէր,
Ոսկի, արծաթ և այլ ինչս պարգևէր:
Քաղաքական օրէնս և սահմանս եդեալ,
Զգողս և զաւազակս յերկրէն փախուցեալ.
Շնացողս և զմարդասպանս յաշխարհէն զա-
տեալ,
Խրատով սուրբ օրինաց զնոսա պարսպեալ:
Ի յամենայն տեղիս խաչն կանգնեցաւ.
Անունն Քրիստոսի փառաւորեցաւ,
Կարողութիւն դիւացն կործանեցաւ,
Եւ յոյսն հաւատոյ անդ հաստատեցաւ:
Ով որ զՑովասափու ձայնն լսէին,

Ի յօտար աշխարհէ առ նա երթայլն։
Ի տեսութիւն նորա ուրախանայլն,
Ցիմաստութիւն շնորհացն զարմանայլն։
Իսկ արքայն Աբենէր աչօք տեսանէր,
Որ ժողովուրդ երկրին խիստ պակասէր.
Եւ փառք իշխանութեան որդւոյն յաւելէր
Եւ բազմութիւն զօրաց առ նա ժողովէր։
Յայնժամ ծագեաց ի նա շնորհքն երկնային,
Փարատեաց զխաւար մտաց և սրտին.
Իմացաւ զի կուռքն այնք ընդունայնք էին.
Եւ հաւատաց փառաց Որդւոյ միածնին։

Ի. ԳՐԷ ԹՈՒՂԹ ԱԲԵՆԷՐ ԱՌ ԱՐՔԱՅՆ ՅՈՎԱՍԱՓ ԵՒ
ՆԱ ԳՆԱՑ ԱՌ ՆԱ։

«ՅԱբենէր արքայէ ողջոյն իմ որդւոյն,
Սիրամունդ զաւակ իմ հոգւոյս հոգւոյն.
Կարօտ եմ և փափագ տեսոյդ բաղցրագոյն,
Յովասափ Թագաւոր ծառայ բարձրելոյն։
Իմացայ ճշմարիտ ի բոլոր սրտէ,
Յոր դու հաւատացեր՝ ճշմարիտ Աստուած է։
Եւ կուռքն մեր ոչինչ դատարկ և՛ ունայն են,
Եւ պաշտօնեայք նոցա մտօք խաւար են։
Արդ՝ զառաջին չարիսն որ ես գործեցի
Եւ զքրիստոնեայս բազումս որ չարչարեցի,
Հոգիս իմ զարհուրի յահէն Քրիստոսի.
Վախեմ թէ զանպիտանս այլ ոչ ընդունի։
Արդ՝ թէ գիտես որ նա ինձ կամեցող է
Եւ զառաջին խաւար գործսն իմ ոչ յիշէ,
Յայնժամ յօժար կամօք սիրտս իմ փափագի

Եւ զՅիսուս ճշմարիտ Աստուած դաւանի:
Կարօտ եմ և ցանկամ զքեզ տեսանել,
Զորդիդ իմ զանդրանիկ գրկով համբուրել·
Զօրէնս քրիստոնէից ի քէն ուսանել
Եւ ճշմարիտ Աստուածն քո ճանաչել:»
Զթուղթն առ Յովասափ տարան և տուին·
Կարդաց և փառս ետ անմահ արքային,
Որ հանապազ կամի զդարձ մեղաւորին
Եւ ժառանգորդ առնէ փառացն վերին:
Ելեալ ուրախութեամբ առ հայրն գնաց,
Գորովագութ սիրով զարքայն ողջունեաց:
Լցեալ ուրախութեամբ ի Հոգւոյն շնորհաց,
Եւ Յովասափ սկսաւ խօսիլ յօրինաց:
Իսկ Աբէնէր արքայն բարձրաձայն գոչէ·
«Թէ ճշմարիտ Աստուած քրիստոնէիցն է,
Յիսուս Քրիստոս Փրկիչ՝ ծնեալն ի կուսէ
Երկրպագանեմ նմա ի բոլոր սրտէ:»
Քաղաքն հաւասար զնոյն ասացին·
Քրիստոսի Աստուծոյ ծունր կրկնեցին,
Զերրորդութիւն սուրբ խոստովանեցին,
Զկուռս և զմեհեանսն կործանեցին:
Զեպիսկոպոս մի Յովասափ բերեալ,
Յորմէ Աբէնէր եղև մկրտեալ·
Հօրն կնքահայր ինքն որդին եղեալ·
Նոյնպէս զայս խորհուրդ և այլքն ընկալեալ:
Քաղաքն ամենայն անդ մկրտեցան·
Սպիտակազգեստ լեալ նորոգեցան,
Ի բարութեան Տեառն սիրով փութացան
Եւ զառաջին չարիսն իւրեանց մոռացան:
Այլ Աբէնէր արքայն զՅովասափ կոչեաց

Զերկիրն իւր զամենայն ի յորդին յանձնեաց:
Ամիս մի առանձին նա ապաշխարեաց.
Պահօք և աղօթիւք արտասուօք ելաց:

### ԻԱ. ՎԱՍՆ ՄԱՀՈՒԱՆ ԱԲԵՆԵՐԱՅ ԱՐՔԱՅԻ. ԵՒ ԹԱԳԱՒՈՐԵԼՈՅ ՈՐԴԻՈՅՆ ԻՒՐՈՅ ՅՈՎԱՍԱՓՈՒ:

Աբենէրայ մահու օրն հասանէր.
Կոչեալ զՅովասափ և անդարձ առնէր,
Զառաջին չարութիւն գործոցն իւր յիշէր
Եւ ի դատաստանի աւուրն սարսէր:
Իսկ Յովասափ որդին մխիթարէր զնա
Ասէ. «մի երկնչիր, հայր իմ արքայ,
Զի ով որ կամաւ առ Աստուած դառնայ,
Զանցեալ գործս մեղաց անտես առնէ նա:
Քանզի հայր բարեգութ և ողորմած է,
Ստեղծող նախախնամիչ և մարդասէր է.
Մեղաւորաց դարձի միշտ կամեցող է,
Անոխակալ է նա և՛ անյիշաչար է:
Յաւետարանն իւր սուրբ՝ Քրիստոս ասէ.
Թէ մի մարդ մեղաւոր որ ապաշխարէ,
Հրեշտակաց ի յերկինս ուրախութիւն է.
Զի պատկեր Աստուծոյ երկնաւորի է:
Քանզի զմաքսաւորին զմեղսն ջնջեաց,
Զպոռնիկն արդարացոյց և ոչ անարգեա .
Քանանուհւոյն լուաւ՝ զդուստրն բժշկեաց,
Աւազակին զդուռն դրախտին եբաց:
Արդ՝ մի յուսահատիր, հայր իմ թագաւոր.
Այլ երթ առ Փրկիչն քո երկնաւոր
Եւ նա անտես չառնէ յատեանն ահաւոր.

Այլ պսակաց առնէ զքեզ արժանաւոր:»
Յայնժամ հաղորդեցաւ մարմնոյ կենսատուին
Եւ աւանդեաց զհոգին ի ձեռն Արարչին:
Ժողովեալ ի վերայ և կոծ արարին,
Առեալ մեծաւ պարգևով տարեալ թաղեցին:
Իսկ Յովասափ արքայն անդէն դադարեալ.
Եւ եօթն օր ի վերայ տապանին կացեալ,
Ի տխուր և ի գիշեր աղօթս արարեալ.
Արտասուօք զպաղատանս առ Տէր մատուցեալ:
Պատարագս մատուցին զաւուրս քառասուն.
Բազում բաշխս արարին արքային հոգւոյն,
Աղքատաց կերակուր և հանդերձս ետուն,
Զծառայսն ազատեցին կամօքն Աստուծոյն:

ԻԲ. ՎԱՍՆ ԹՈՂԼՈՅՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ ԶԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ԾԱՌԱՅՆ ԻՒՐ ԲԱՐԱՔԻԱՍԱՅ. ԵՒ ԻՆՔՆ ԳՆԱՑԵԱԼ ՅԱՆԱՊԱՏՆ ԱՌ ԲԱՐՂԱՄ:

Իսկ Յովասափ արքայն խորհուրդ արարեալ,
Զիշխանս և զմեծամեծս ի մի ժողովեալ,
Բազում բանս օրինաց նոցա ասացեալ,
Եւ զփառս այսմ աշխարհիս կամաւ անարգեալ:
Ասաց. «Թէ Աբեններ հայրն իմ փոխեցաւ
Եւ փառք ւ՝ մեծութիւն իւր ոչնչացաւ,
Գեղեցկութիւն պատուոյն իւր ի հող դարձաւ,
Ահեղ իշխանութիւն ի միջոյ բարձաւ:
Վաղիւն այն օրինակ ինձ կամի լինել

*Եւ այս մառուքս և պատիւս յինէն խափանիլ:*
*Արդ՝ ես կամաւ իմով պարտեմ զայս ձգել,*
*Եւ ի Բարաքիաս ծառայն իմ յանձնել:»*
*Կոչեաց զԲարաքիաս առ ինքն և ասէ.*
*«Թէ զինչ որ յիս տեսեր զնոյն կատարէ:»*
*Սա այն Բարաքիաս բարեաց պատճառն է,*
*Որ նախ Յօվասափու զԲարղամ ցուցեալ է:*
*Առեալ զԹագն և եդ ի գլուխ նորա.*
*Զիշխանութիւն յանձնեաց իւր կամաւն ինա:*
*Բարաքիաս նմա պատասխանի տայ.*
*«Թէ է՞ր բռնադատես զիս այսօր, արքայ:*
*Քանզի դու որ որդի Թագաւորի ես,*
*Եւ այս իշխանութեան արժանաւոր ես.*
*Կամաւ դու ի զմանէ զփախուստն խնդրես,*
*Զի՞արդ զիս զծառայն քո յայս հրաւիրես:»*
*Յովասափ Թագաւորն զնա խրատէ,*
*ԶԲարաքիաս կամացն իւր հաւան առնէ:*
*Ի յարևելս դարձեալ աղօթս առնէ,*
*ԶԹագն ի գլուխն եդեալ արքայ հաստատէ:*
*Յայնժամ քաղաքն ամէն ի մի ժողովեալ.*
*Ի յողբ և ի հառաչ բարձրաձայն կոչեալ,*
*Ի ճիչ և յաղաղակ յարտասուս հարեալ.*
*Եւ վասն Յովասափու մեծ կոծ արարեալ:*
*Զբիլն ի յարքայէն իւրեանց ողբային,*
*Լալականաց բարբառ անդ արձակէին:*
*«Թող խաւարի, ասեն, արև և լուսին.*
*Ի բաժանել ի մէնջ մերոյ արքային:*
*Զի Յովասափ արքայն աչաց մեր լոյս էր,*
*Աղբիւր յորդախաղաց դրախտին կենաց էր,*
*Այգի քաղցրաճաշակ՝ ծառ անթառամ էր,*

Անուշահոտ վարուք՝ վարդ մանուշակ էր:
Պարիսպ ամուր էր սա յերկրիս Հնդկաս-
տան.
Պատճառ բարեաց եղև քրիստոնէութեան,
Կարգաց եկեղեցւոյ և դաւանութեան,
Արդար ի դատաստան, վանիչ չարութեան:
Այսօր արդարութիւն մեր խափանեցաւ
Եւ ջահս եկեղեցւոյ մեր մութով շիջաւ.
Մեր անթառամ ծաղիկն թարշամեցաւ,
Փլաւ այգւոյ պարիսպն և խոպան դարձաւ:
Այսօր մեր թագաւորն ի մէնջ բաժանի
Եւ զմեզ անտէր թողու ի վերայ երկրի:
Հովիւն հոգևոր բանաւոր հօտի,
Այսօր ի յոչխարաց իւրոց հեռասցի:»
Արդ՝ զայս և որ սոցին նման առէին.
Ի յողբ և յարտասուս զարքային շարժէին:
Յայնժամ նա համբուրեալ սիրով զնոսին,
Ելեալ գնայր. ինքեանք զհետ երթային:

ՎԱՍՆ ԳՆԱԼՈՅՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ ՅԱՆԱՊԱՏ:

Ելեալ Յովասափու յերկրէն հեռացաւ.
Եւ լալով ժողովուրդն յիւրմէն յետ դարձաւ:
Գնացեալ նա աղքատի մի հանդիպեցաւ,
Եմուտ ի տուն նորա և անդ օթեցաւ:
Առաւօտուն ելեալ զհանդերձն հանէր,
Զբեհեզն և զծիրանին աղքատին շնորհէր:
Եւ ինքն զմազեղէն քուրձն իւր ագանէր,
Զոր ի վարդապետէն իւրմէ առեալ էր.
Յերկիրն Էրխտացւոց գնացեալ հասանի.

Ամխոս երկուք ոտիւք քայլեալ աշխատի:
Յանկարծ յանապատին ծեր մի հանդիպի.
Եւ նա եհարց զտեղին սրբոյն Բարղամի:
Իսկ ծերն պատուական նմա ցուցանէ,
Եւ Յովասափ փութով անդ ժամանէ:
Տեսեալ ծերն Բարղամ զնա ողջունէ,
Զբարեաց պատճառն Աստուած նա փառա-
ւորէ:
Յայնժամ էհարց զնա զամէնն կարգաւ.
Թէ որպէ՞ս ի հօրէն իւրմէ նա զերծաւ.
Կամ զի՞րդ զմեծութիւն իւր նա ուրացաւ
Եւ ի փառաց իւրոց կամաւ հեռացաւ:
Ասաց. «Թէ քրիստոնեայ զհայրն իմ արարի
Եւ զաշխարհն ամենայն յԱստուած դար-
ձուցի:»
Լուեալ ծերն Բարղամ զբանն Յովասափի
Եւ օրհնեաց զԱրարիչն երկնի և երկրի:
Յայնժամ ելեալ երկոքեան աղօթեցին,
Ճաշու ժամու զխորհուրդն կատարեցին.
Գոհացան զԱստուծոյ՝ հոգւով ցնծացին
Եւ սեռութեամբ միմեանց ուրախանային:
Կերակուր պատրաստեաց Բարղամ և եբեր
Ասաց. «մրգայոցդ համայեա և կեր:»
Զի էր բանջար, արմաւ, եղջիւր զոր եբեր
Եւ աղ և հաց և այլ միրգ և ծառոց բեր:
Կերեալ ուրախութեամբ զԱստուած օրհ-
նեցին,
Յարեան զխաղաղական զաղօթսն ասացին.
Սակաւ մի ննջելով և հանգիստ առին,
Յետոյ զգիշերային զաղօթսն արարին:

Դարձեալ Յովասափու Բարղամ զայս ասէ.
«Թէ իմ օրս մահու եկեալ հասեալ է,
Արդ՝ դու ձեռամբ քոյին զմարմինն իմ թաղէ
Եւ օրհնութիւն Փրկչին ի քեզ մնասցէ:»
Կանգնեալ մատոյց զխորհուրդ սուրբ պատարագին,
Հաղորդեցաւ և նա զայն Յովասափին,
Անկեալ և աւանդեաց առ Աստուած զհոգին,
Եւ թաղեցաւ ձեռամբ իւր աշակերտին:
Հարիւր և ութ ամի Բարղամ ապրեցաւ
Եւթանասուն և հինգ յանապատ կեցաւ.
Շնորհօքն Քրիստոսի յերկրի ճգնեցաւ,
Անպատում պարգևաց նա արժանացաւ:

ՎԱՍՆ ՏԵՍԼԵԱՆՆ ՅՈՎԱՍԱՓՈՒ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ ՆՈՐԱ:

Յորժամ թաղեաց զնա որդի արքային,
Ննջեալ տեսիլս ետես ի մէջ գիշերին.
Զի արք լուսապայծառք զԲարղամ տանէին
Եւ ի խորանս երկնից հանգուցուցանէին:
Այլ և երկուս աթոռս ոսկիս տեսանէ,
Երկու պսակ լուսոյ զոր մարդ տեսեալ չէ:
Եհարց. «Թէ այս բարիս ո՞ւմ պատրաստեալ է.»
Ասեն. «Թէ մինն քեզ, մինն հօր քո է:»
Իսկ Յովասափ ասէր զայս տրտնջելով.
«Թէ ես բազում ամօք յերկրի ճգնելով,
Եւ հայր իմ ամիս մի ապաշխարելով,
Զի՞արդ եղէ նմա հաւասարելով:»
Բարղամ ի յերազին զնա խրատէ.

ԶՅովասափու խորհուրդն յանդիմանէ,
Զառակաց մշակին օրինակ բերէ,
Յետնոյն և առաջնոյն՝ մին դահեկան է:
Այլ Յովասափ կեցեալ ի յանապատին,
Երեսուն և ութըն տարի ճգնամբ մեծագին:
Եւ մինչ եթող զփառս խո՛ր հայրենին,
Ի և Ե ամաց էր աւուրք նորին:
Վաթսուն և երկու ամաց հասանէ վախ–ճան,
Յովասափու մեծի ճգնաւորին այն.
Այնմ որ եթող զփառս անցաւորական,
Եհաս անանց կենացն յաւիտենական:
Եկեալ կրօնաւորաց թաղեցին զնա:
Յետոյ Բարաքիաս արքայն իմանայ,
Գնացեալ յանապատէն հանեցին զնա.
Տարան և թաղեցին առ հօրն նորա:
Բազում բժշկութիւն նոքօք կատարի,
Ի փառս ամենազօր Հօրն երկնաւորի
Եւ Որդւոյն Միածնի, Փրկչին Յիսուսի,
Ամենահրաշ Հոգւոյն Սրբոյ ճշմարտի:

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ Է ԱՌԱՔԵԼ ՎԱՐԴԱՊԵՏԷ:

Ի թուականի Հայոց՝ որ 'ութ հարիւրն է,
Ութսուն՝ երեք ի նոյն յաւելեալ է.
Ոտիւք չափեցաւ այս ի յԱռաքելէ,
Վարդապետ կոչեցեալ Բաղիշեցի է:

